Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ

գլխավոր խմբագիր 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ 52—99—06
պատասխանատու քարտուղար 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ 56—59—93

Բաժինների

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի 52—05—58
կուսակցական կյանք 52—25—48
սոցիալ-տնտեսական պրոբլեմների 52—57—56
գիտության և կուլտուրայի 52—99—34
գրական աշխատողներ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ 58—86—11
52—99—36

© ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ, 1986

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ՈՐՈՇՈՒՄ Է ԸՆԴՈՒՆԵԼ «ԿՈՄՈՒՆԻՍՏ» ՀԱՆԴԵՍԻ ՄԱՍԻՆ»

Սոցիալիստական հասարակության՝ որակապես նոր վիճակի հասնելու մասշտաբային և բարդ խնդիրները, որ առաջադրել է ՍՄԿԿ XXVII համագումարը, պահանջում են հեղափոխական տեսության հետագա ստեղծագործական զարգացում՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ ժառանգության բազմակողմանի իմաստավորման, կյանքի նոր երևույթների, սոցիալիստական և հակագաղութատիրական հեղափոխությունների, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկայի, հանուն խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության պայքարի ուսումնասիրության, արդի գիտության նվաճումների ընդհանրացման հիման վրա։ Պատմական շրջադարձերը, հասարակական զարգացման, սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանների օբյեկտիվ միտումների որակական տեղաշարժերը իրենց անընդհատ արտացոլումը և տեսական հիմնավորումն են գտնում մարքսիզմ-լենինիզմի՝ որպես կենդանի ուսմունքի մեջ, հարստացնելով նրա համապատասխան դրույթները, հարուստ ու բազմակողմանի բովանդակությունը։

Արդի պայմաններում առանձնապես կարևոր է առավել ինտենսիվ և արդյունավետ դարձնել կուսակցության և հասարակության գաղափարական կյանքը, բարենպաստ պայմաններ ստեղծել գիտական համարձակ որոնումների համար, սխոլաստիկայի, դոգմատիզմի և տիրացուականության հաղթահարման համար, որոնք խոչընդոտում են ստեղծագործական մտքի զարգացումը, կոնկրետացնել և զարգացնել մարքսիզմ-լենինիզմի՝ որպես ամբողջական ուսմունքի, հիմնարար սկզբունքները և դրույթները, նրա բոլոր բաղկացուցիչ մասերի՝ մարքսիստական-լենինյան փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի միասնության մեջ։

Համագումարի գաղափարների զարգացման ու իրականացման, հասարակագիտության նոր պրոբլեմատիկայի հետագա ծավալման ու խորացման, դեպի պրակտիկայի պահանջմունքները գիտական հետազոտությունների վճռական շրջադարձի ապահովման, բոլոր կադրերի մեջ նորովի մտածելու և գործելու ունակության դաստիարակության հարցում ավելի ու ավելի ակտիվ դեր պետք է պատկանի «Կոմունիստ» հանդեսին։

Այն կոչված է լինելու զարգացող հասարակական մտքի, մասսաների սոցիալական փորձի ընդհանրացման ամբիոն, պաշտպանելու ամեն նորը, առաջավորը, որը ծնվում է վերակառուցման ընթացքում, բացահայտելու նրա անհետաձգելի, խորապես հեղափոխական բնույթը, անհաշտ կերպով հանդես գալու քարացածության և հնապաշտության, հնացած պատկերացումների ու նախապաշարմունքների դեմ՝ ինչպես տեսության մեջ, այնպես էլ պրակտիկայում։ Հանդեսի պարտքն է՝ վառ և համոզիչ կերպով ցույց տալ լենինյան գաղափարների ամբողջ հարստությունը և անանց նշանակությունը, դրանց սերտ կապն արդիականության հետ, ըստ ամենայնի նպաստել ժամանակի պահանջներին պատասխանող քաղաքական, կազմակերպչական, տնտեսական և գաղափարադաստիարակչական գործունեության մեջ նոր մտածելակերպի ու նոր մոտեցումների զարգացմանը։

Կարևոր է խորապես հետազոտել մանրբուրժուական հոգեբանության ակունքները և բնույթը՝ իր բոլոր դրսևորումներում, բացահայտել նրա անհաշտ թշնամությունը գիտական սոցիալիզմի նկատմամբ։ Հանդեսը պետք է լինի բուրժուական գաղափարախոսության, օպորտունիստական կոնցեպցիաների, մարքսիստական-լենինյան տեսության հեղափոխական, ստեղծարար բովանդակությունը ամլացնելու և մեռցնելու փորձերի դեմ պայքարի մարտական օրգան։ Անհրաժեշտ է հստակ դասակարգային դիրքերից հանդես գալ մարդկային հասարակության զարգացման հակագիտական, հետադիմական հայեցակետերի դեմ։

Տոհամագումարյան շրջանում «Կոմունիստը» ակտիվացրել է իր գործունեությունը։ Նրա ելույթներում ուրվագծվում են նպատակասլացություն, մի շարք տեսական պրոբլեմների ստեղծագործական հարցադրումներ, կյանքի երևույթների ռեալիստական գնահատումներ, առավել դինամիկ են դարձել նյութերի մատուցման ձևերը։ Անհրաժեշտ է, սակայն, հանդեսի աշխատանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի՝ կայուն և երկարաժամկետ հիմքի վրա։

«Կոմունիստ» հանդեսի աշխատանքում գլխավորը ՍՄԿԿ XXVII համագումարի դրույթների, հետևությունների և դիրքորոշումների խոր լուսաբանումն է, երկրի արագացված առաջընթացի աշխարհայացքային, սոցիալ-տընտեսական, բարոյահոգեբանական տեսանկյունների ամբողջ կոմպլեքսի մշակումը, այդ հիման վրա արագացման կոնցեպցիայի հաստատումը, որպես սովետական հասարակության զարգացման արդի փուլի օբյեկտիվ պահանջների առավել լրիվ տեսական արտահայտում։ «Կոմունիստը» կոչված է գըլխավորելու այն նոր պրոբլեմների սկսված տեսական իմաստավորումը, որոնք ծնվում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պրակտիկայում։

Հանդեսի հրապարակումները պետք է բացահայտեն լենինյան հիմնարար հայացքները սոցիալիզմի մասին՝ որպես ժողովրդական մասսաների կենդանի ստեղծագործության, հասարակական բոլոր վերափոխումներում մարդկային գործոնի դերը և նշանակությունը, սոցիալիստական հասարակարգի համաշխարհային-պատմական նվաճումները, նրա առավելությունները և հնարավորությունները տնտեսության, սոցիալական ոլորտի, դեմոկրատիայի զարգացման, հոգևոր կյանքի հարստացման ասպարեզներում։

Հասարակության, նրա կատարելագործման օրենքների մասին գիտելիքների մշտական աճի բանալին սոցիալական իրականության վերլուծության դիալեկտիկական մեթոդին մշտապես հետևելն է, որն իր մեջ զուգակցում է հեղափոխական քննադատականությունը, տեսական խորաթափանցությունը, հասարակության առաջընթաց զարգացման հիմնական միտումների գիտական կանխատեսումը, որի ինքնաշարժման ակունքը ռեալ հակասություններն են, հասարակական կյանքի բոլոր ոլորտներն ընդգրկող նորի պայքարը հնի դեմ։

Մարքսիզմ-լենինիզմի դասականները մեզ թողել են գիտության և պրակտիկայի տարբեր բնագավառներում դիալեկտիկական մեթոդի կիրառման մեծագույն նմուշներ։ Նրանք ցուցադրել են այդ մեթոդի անհաղթահարելի ուժը։ Այսօր դրան հետևելը նշանակում է սթափ վերլուծել փաստերը, ղեկավարվել կյանքի օբյեկտիվ տրամաբանությամբ, այլ ոչ թե մտացածին դոգմաներով ու ստերեոտիպերով։ Դեմքով շրջվել դեպի բուն կյանքի բազմազանությունը՝ ահա ՍՄԿԿ XXVII համագումարի հիմնական պահանջը և միայն այդ ուղիով կարելի է հասնել արդի մարքսիստական-լենինյան մտքի ստեղծագործական հարստացմանը։ Ուստի անհրաժեշտ են գիտական խիզախումներ, հիմնարար տեսական ընդհանրացումներ, որոնողական բնույթ ունեցող ուղղություններում գաղափարների բացահայտ համադրում և մրցակցություն, դիսկուսիաներ և քննարկումներ՝ փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի տեսության, պատմության և հասարակական մյուս գիտությունների բոլոր չուսումնասիրված կամ քիչ ուսումնասիրված հարցերի շուրջ։ Գլխավորը սոցիալական հետազոտությունների իրական արդյունքներն են,



այն, թե դրանք ինչպես են ծառայում պրակտիկային, հասարակության զարգացման արագացմանը, կուլտուրայի հարստացմանը, մարդկային պոտենցիալի ակտիվացմանը, հենց իր մարդու վերելքին՝ դեպի գիտելիքների և բարոյականության բարձունքները։

«Կոմունիստը» պարտավոր է խթանել կյանքից բխող նոր պրոբլեմների նախաձեռնողական առաջադրումը, դրանց հետազոտման խորության ու բազմակողմանիության, ինֆորմացիայի ստույգության, սոցիալական ու տնտեսական կանխատեսումների և հանձնարարականների ճշգրտության և արդյունավետության օրինակ ցույց տալ։ Հանդեսը պետք է ակտիվորեն նպաստի հասարակագիտության ամբողջ համակարգի խոր վերակառուցմանը։ Ստեղծելով ստեղծագործական որոնումների ու ընկերական բանավեճերի մթնոլորտ, անհրաժեշտ է լենինաբար միացնել մտքի նորությունն ու ճկունությունը՝ հստակ դասակարգային դիրքորոշման, աշխարհայացքային և մեթոդաբանական սկզբունքայնության հետ։

«Կոմունիստի» առջև լուրջ խնդիրներ են ծառանում մարքսիստական-լենինյան փիլիսոփայության և գիտական կոմունիզմի ասպարեզում գործունեության նոր ուղղությունների ու ձևերի խթանման, դրանց որակի բարձրացման գործում։ Փիլիսոփայական միտքը դեռևս մեծ մասամբ խորասուզված է կամ անցյալի, կամ էլ պրակտիկայից շատ հեռու աբստրակցիաների մեջ՝ ի վնաս արդիականության կենսահույզ պրոբլեմների։ Փիլիսոփայությունը միայն այն ժամանակ կարող է արդյունավետորեն կատարել իր սոցիալական և գիտական ֆունկցիաները, երբ ժամանակին է արձագանքում երկրի ու միջազգային ասպարեզի գլխավոր իրադարձություններին, գիտության հիմնարար հայտնագործություններին և պրոցեսներին։ Նա պետք է տա կեցության, հոգևոր կյանքի, բարոյական բարդ հարցերի պատասխանը։

Մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունը կոչված է այսուհետ ևս զարգացնել իր գիտական բովանդակությունը, լինել մյուս գիտությունների տեսական և մեթոդաբանական հիմքը։ Փիլիսոփայական աշխատանքի այդ կարևորագույն բնագավառի որակը ոչ վերջին հերթին պայմանավորված է փիլիսոփայական հետազոտությունների կուլտուրայի բարձրացմամբ, աշխարհի նկատմամբ փիլիսոփայության ճանաչողական մոտեցման յուրահատկության հաշվառմամբ։ Այստեղ հավասարապես անընդունելի են ինչպես այդ յուրահատկության անտեսումը, դրա հանգեցումը կոնկրետ գիտությունների ձևերին ու մեթոդներին, այնպես էլ փիլիսոփայական հետազոտությունների կտրվածությունը գիտական գիտելիքների ամբողջ համակարգի զարգացումից։

Արդի հասարակական զարգացումն առաջադրում է այնպիսի պրոբլեմներ, որոնք առավելապես կոմպլեքսային բնույթ են կրում, իրենց լուծման համար պահանջում են գիտելիքների տարբեր բնագավառների ներկայացուցիչների համատեղ ջանքերը։ Փիլիսոփայական գիտությունը պարտավոր է ավելի մեծ նախաձեռնողական դեր ստանձնել գիտնականների ուշադրությունը այդ պրոբլեմների վրա հրավիրելու գործում, հետազոտել համընդհանուր, էական, օրինաչափ կապերն ու հարաբերությունները, դրանք մեկնաբանելով աշխարհայացքային, կուլտուր-պատմական լայն պլանով, բացահայտելով գիտական գործունեության սոցիալ-բարոյագիտական ասպեկտների աճող նշանակությունը։ Անհրաժեշտ է ընդլայնել ու ամրապնդել Վ. Ի. Լենինի պատգամած դաշինքը փիլիսոփաների և կոնկրետ բնագիտական, տեխնիկական ու հասարակական գիտությունների ներկայացուցիչների միջև, ծավալել ժողովրդատնտեսական, սոցիալ-քաղաքական, մշակութային պրոբլեմների համատեղ հետազոտությունները։

Փիլիսոփայության և գիտական կոմունիզմի կարևորագույն պրոբլեմներից առաջին պլանում են.

**Սոցիալիստական հասարակության զարգացման դիալեկտիկան նոր պատմական փուլում.** սովետական հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը և անցումը որակական նոր վիճակի, սոցիալական և քաղաքական սիստեմի կատարելագործումը, սոցիալիստական հասարակու-

թյան վերնաշենքի զարգացումը՝ հասարակական կյանքի առաջադիմող դեմոկրատականացման պայմաններում, սոցիալիստական հասարակությունում հակասությունների բնույթը և դրանց լուծման մեխանիզմը, արդի պայմաններում սոցիալական արդարության սկզբունքների հաստատումը, սոցիալիզմի սոցիալական արժեքները, բազմազգ սովետական պետականության ամրապնդումն ու զարգացումը, սոցիալիզմը որպես կապիտալիզմի պատմական այլընտրանք.

**Գիտատեխնիկական առաջադիմության սոցիալ-փիլիսոփայական և մեթոդաբանական պրոբլեմներ.** գիտատեխնիկական հեղափոխության նոր փուլի սոցիալական ասպեկտները, նրա նկատմամբ մարդասիրական և տեխնոկրատական մոտեցումների հակադրությունը, կրթության, կադրերի որակավորման և վերաորակավորման պրոբլեմները, այդ թվում էլեկտրոնային գրագիտության նկատմամբ հասարակության աճող պահանջմունքը, «արհեստական ինտելեկտի» ստեղծման տեսական և կիրառական պրոբլեմները, գիտատեխնիկական հեղափոխությունը և շրջակա աշխարհի ճանաչման նոր միջոցները, մարդու տիեզերք դուրս գալու, ատոմային էներգիայի օգտագործման, միկրոէլեկտրոնիկայի, ինֆորմատիկայի, ռոբոտատեխնիկայի և բիոտեխնոլոգիայի հետ կապված գիտատեխնիկական հեղափոխության նորագույն փուլի միացումը սոցիալիզմի արմատական առավելությունների հետ՝ արագացման պայմաններում նրա զարգացման որակական նոր աստիճանում։

Գիտատեխնիկական առաջադիմության աշխարհհայացքային և բարոյամարդասիրական պրոբլեմների վերլուծությունն անբաժան է Արևմուտքի բուրժուական փիլիսոփայության մեջ տարածված տեխնոկրատիզմի քննադատությունից, տեխնոկրատիզմ, որն արտահայտվում է իբր ինչպես կապիտալիզմին, այնպես էլ սոցիալիզմին փոխարինելու եկող XXI դարի «ինֆորմացիոն հասարակության» կոնցեպցիաներում, սցիենտիզմի, բարոյաէթիկական նիհիլիզմի քննադատությունից.

**Հասարակության առաջընթաց զարգացման մեջ մարդկային գործոնի դերի աճը.** մարդկային գործոնը որպես գիտակցականության և գործունեության օրգանական միասնություն, ունիվերսալ աշխատողի նկատմամբ գիտատեխնիկական առաջադիմության պահանջները և բազմակողմանի զարգացած անհատի կոմունիստական իդեալը, մարդկային բանականությունը որպես հասարակության ռեսուրսներից կարևորագույնը, մարդկային բոլոր ընդունակությունների և հնարավորությունների բացահայտումը որպես հասարակական առաջադիմության շարժիչ ուժ և բարձրագույն նպատակ։

Հասարակական բոլոր գիտությունների գործունեության կարևորագույն ուղղությունը ակտիվ մասնակցությունն է մասսաների կոմունիստական դաստիարակությանը։ Գիտությունը կոչված է նպաստելու մարդու աշխարհհայացքի, բարոյական հատկանիշների ձևավորմանը, աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի, ինքնակարգապահության, պատասխանատվության, կոլեկտիվիզմի զգացման աճին։

Անհրաժեշտ է լայնորեն ծավալել սոցիոլոգիական հետազոտությունները, այդ թվում հասարակական, կոլեկտիվ և անհատական շահերի համաձայնեցման հարցերի, մարդկային գործունեության պահանջմունքների և խթանների վերլուծությունը, սոցիալիստական ապրելակերպի սոցիալ-տնտեսական և բարոյաքաղաքական հիմունքների, ընտանեկան-ամուսնական հարաբերությունների, հասարակական կարծիքի ուսումնասիրությունը։ Հարկ է ըստ ամենայնի հաստատել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վսեմ գաղափարները, սոցիալիզմի սոցիալական և բարոյական սկզբունքները, հարձակողական պայքար մղել քաղքենիության և հոգևոր աղքատության, խնամառուականության և սպառողականության արդի տարատեսակների դեմ։

Անհրաժեշտ է ավելի շատ ուշադրություն նվիրել մարդու կյանքի և զարգացման կոմպլեքսային պրոբլեմներին, նրա նպատակներին, իդեալներին և արժեքներին, խորապես հետազոտել սոցիալական և բնական-կենսաբանական գործոնների փոխգործողությունը։



էկոնոմիկայի վերակառուցումը, տնտեսական մեխանիզմի արմատական ռեֆորմը, կառավարման կատարելագործումը պահանջում են տնտեսագիտական տեսության խոր զարգացում և, ամենից առաջ, նրա այնպիսի հիմնական պրոբլեմների վերլուծություն, ինչպիսին են արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների դիալեկտիկան, ցենտրալիզմի և ինքնուրույնության զուգակցումը, կոոպերացիայի և պարենահարկի մասին լենինյան գաղափարները՝ արդի պայմաններին համապատասխան։

«Կոմունիստի» ուշադրության կենտրոնում պետք է լինի մարքսիստական արմատական դրույթը արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների դիալեկտիկորեն հակասական փոխգործողության վերաբերյալ՝ որպես հասարակության առաջընթաց զարգացման գլխավոր շարժիչի։ Արտադրական հարաբերությունների և տնտեսավարման մեթոդների մշտական, նպատակաուղղված կատարելագործումը գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական առաջադիմության շեշտակի արագացման, մարդկային գործոնի, մասսաների ստեղծագործության ակտիվացման կարևոր նախադրյալն է։

Տեսական և գործնական մեծ հետաքրքրություն են ներկայացնում արմատական տնտեսական ռեֆորմի երկու օրգանապես փոխկապակցված ուղղությունները, որոնք կոչված են շեշտակի արագացնել անցումը դեպի սոցիալիստական ընդլայնված վերարտադրության ինտենսիվ տիպին. մի կողմից՝ ժողովրդական տնտեսության ստրատեգիական խնդիրների լուծման, զարգացման տեմպերի և համամասնությունների սահմանման, նրա հաշվեկշռվածության ապահովման գործում պլանային, կենտրոնացված ղեկավարման արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումը, և մյուս կողմից՝ նախաձեռնության համակողմանի զարգացումը, ինքնուրույնության սահմանների ընդլայնումը, ձեռնարկությունների և միավորումների պատասխանատվության բարձրացումը։

Օրկմիասնական այդ խնդրի կոնտեքստում անհրաժեշտ է դնել և լուծել ձեռնարկություններն ու միավորումները իսկական տնտհաշվարկի, ինքնափոխհատուցման և ինքնաֆինանսավորման փոխադրելու, կոլեկտիվների եկամուտների մակարդակը նրանց աշխատանքի արդյունավետությունից ուղղակի կախման մեջ դնելու պրոբլեմները, բոլոր մակարդակներում ղեկավարման տնտեսական մեթոդների արմատավորումը, կառավարմանը արդիական կազմակերպական կառուցվածքներով օժտելը՝ հաշվի առնելով արտադրության համակենտրոնացման, մասնագիտացման և կոոպերացման միտումները, ճյուղային և տերիտորիալ կառավարման լավագույն զուգակցման, հանրապետությունների և ռեգիոնների կոմպլեքսային տնտեսական զարգացման, միջճյուղային ռացիոնալ կապերի հաստատման ապահովումը, կառավարման համակողմանի դեմոկրատականացումը, դրանում աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացումը, ներքևից վերահսկողության, տնտեսական մարմինների հաշվետու լինելու և աշխատանքի հրապարակայնության ուժեղացումը։

Առանձնահատուկ ուշադրություն պետք է նվիրել արտադրության միջոցների նկատմամբ համաժողովրդական սեփականության ամրապնդման և դրա իրացման ձևերի պրոբլեմներին, խորությամբ լուսաբանել հասունացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հնարավորությունների օգտագործման հարցերը՝ ներառյալ սպառողական և արհեստագործական կոոպերացիաների զարգացումը, ինչպես նաև անհատական աշխատանքային գործունեությունը։

Համակողմանի վերլուծության կարիք ունեն տնտեսական զարգացման տեմպերի, գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացման պայմաններում աճի նոր որակի, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, կառավարման արդյունավետ ձևերի, աշխատանքի կազմակերպման և խթանման պրոբլեմները։ Անհրաժեշտ է խորությամբ բացահայտել տնտեսական և սոցիալական գործոնների փոխադարձ կապը, ժողովրդական տնտեսության վերակառուցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ռեսուրսախնայողության, արտա-

ձևերին՝ ի շահ սոցիալիստական երկրների գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, տնտեսական անվտանգության, աշխարհում սոցիալիզմի ազդեցության և հեղինակության աճին։

Խորացված վերլուծություն են պահանջում կոմունիստական, բանվորական, ազգային-ազատագրական և լայն դեմոկրատական շարժումներում տեղի ունեցող պրոցեսները։ Կարևոր է հաշվի առնել այն նոր իրողությունները, պրոբլեմներն ու խնդիրները, որոնց նրանք առնչվում են վերջին տարիներին։

Միջազգային ասպարեզում գաղափարախոսական սուր հակամարտության պայմաններում ամսագիրը կոչված է հարձակողական պայքար մղել իմպերիալիստական կեղեքման, սոցիալական ռևանշի և միլիտարիզմի գաղափարախոսության ու քաղաքականության դեմ, խելամտորեն պաշտպանել սոցիալիզմի գաղափարների և պրակտիկայի պատմական ճշմարտացիությունը, համոզիչ կերպով մերկացնել մասսաների հոգևոր ճնշման բուրժուական քաղաքականությունը։ Մարդկանց մտքերի ու սրտերի համար պայքարում կարևոր է ցույց տալ բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերի, կոմունիստների նպատակների սկզբունքային համընկնումը մարդկության հիմնական մարդասիրական արժեքների հետ։

«Կոմունիստի» արմատական խնդիրն է մեր հասարակության սոցիալ-տնտեսական արագացման գործում կուսակցության ավանգարդային դերի բացահայտումը, կուսակցական կոմիտեների քաղաքական, կազմակերպչական և գաղափարախոսական գործունեության նոր ձևերի ու մեթոդների վերլուծությունը, ընդհանրացումը և պրոպագանդումը։ Ամսագրի հրապարակումները պետք է օգնեն կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցմանը, քաղաքական ղեկավարման ոճի և մեթոդների կատարելագործմանը, կուսակցության մեջ ստեղծագործության, ընկերականության, սկզբունքային պահանջկոտության, քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտի ամրապնդմանը, բոլշևիզմի ավանդույթների ոգով կադրերի, կուսակցական ակտիվի, բոլոր կոմունիստների դաստիարակությանը։

Պահանջվում է ոչ միայն տեսության, այլև ՍՄԿԿ-ի և համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման պատմության գիտական հետազոտությունների էական ինտենսիվացում, բոլոր երկրների կոմունիստների շարժման պատմական զարգացման օրինաչափությունների հիմնարար ընդհանրացումներ, կոմունիստներ, որոնք հանդիսանում են աշխատանքի մարդկանց, ամբողջ առաջադեմ մարդկության դարավոր իղձերի արտահայտիչները։ Ներկայի և ապագայի ուղղված անցյալի փորձի վերլուծությունը և տեսության անհրաժեշտ տարրն է, և մեթոդը, որի օգնությամբ մշակվում են տեսական նոր հետևություններ։ Շարժվելով այդ ուղղությամբ, անհրաժեշտ է հասնել անցյալի հետազոտման խնդիրների հետ արդիականության իմաստավորման ու ապագան թափանցելու խնդիրների օրգանական միացմանը, դիմել անցյալին, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «այն տեսակետից, ինչ որ վաղը կամ մյուս օրը մեր քաղաքականությանը պետք կգա» (ԵԼԺ, հ. 38, էջ 172), ծանրության կենտրոնը փոխադրել «ոչ այնքան մեր ապրածի նկարագրության վրա, որքան փորձի այն տվյալների վրա, որ մենք ստանում ենք և պետք է ստանանք մեր անմիջական պրակտիկ գործունեության համար» (ԵԼԺ, հ. 39, էջ 417)։ Անհրաժեշտ է մշտապես դիմել Վ. Ի. Լենինի ստեղծագործական լաբորատորիային, նրա կյանքի վերջին տարիների աշխատություններին, որոնցում տրված են հատկապես սոցիալիստական շինարարության առաջին փորձերի ռեալ պրակտիկայից կատարված խոր տեսական հետևությունների նմուշներ։

Պատմակուսակցական պրոբլեմների հիմնարար մշակումները, կուսակցության անցած ուղու համակողմանի լուսաբանումը, նրա ղեկավար դերի բացահայտումը՝ հատկապես բեկումնային փուլերում, կուսակցության քաղաքականության մեջ հաջորդայնության և նորարարության դիալեկտիկան, պատմակուսակցական գիտության վիճակը և զարգացման հեռանկարները, հետազոտությունների ու դասավանդման որակը— այս հարցերը պետք է մշտապես գտնվեն ամսագրի գործունեության կենտրոնում։

Ամսագրի առջև պատասխանատու խնդիրներ են ծառանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության՝ մոտեցող 70-ամյակի կապակցությամբ։ Անհրաժեշտ է հրապարակել հոդվածների շարք, որոնք բազմակողմանիորեն ցույց տան մեր կուսակցության և ժողովրդի հարուստ փորձը, ուշադրությունը կենտրոնացնելով, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը հեղափոխության 4-րդ տարեդարձի առթիվ. «դեռևս չլուծված» խնդիրների վրա, Հոկտեմբերի գաղափարների և կուսակցության ներկայիս կուրսի փոխադարձ կապի վրա»։

Քննարկելով Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային-պատմական նշանակությունը, նրա մարդասիրական հիմունքները, նրա ծնած հասարակարգի նվաճումներն ու առավելությունները, անհրաժեշտ է համակողմանիորեն բացահայտել մեր երկրում սոցիալիստական վերափոխումների առաջնայնական և նորարարական բնույթը, չշրջանցելով սխալներն ու բացթողումները, ցույց տալով դրանց անհրաժեշտ գնահատական տալու և ճիշտ լուծումներ գտնելու ու Հոկտեմբերի ուղիով հետագա առաջընթացի ապահովման կուսակցության ընդունակությունը։ Հրապարակվող նյութերում պետք է զգացվի ժամանակների, քաղաքականության, հեղափոխական ավանդույթների կենդանի կապը, դրանց համահնչունությունն այն ընդհանուր բարոյահոգեբանական մթնոլորտի հետ, որ ձևավորվել է ապրիլյան պլենումից, կուսակցության XXVII համագումարից հետո։

Հանդեսի աշխատանքի բովանդակությունը, ձևերն ու մեթոդներն անհրաժեշտ է համապատասխանեցնել ժամանակի պահանջներին։ Ընդլայնել հեղինակային ակտիվը, նրա շուրջը համախմբել տեսական լավագույն ուժերը, եռանդուն կերպով ներգրավել նոր հեղինակների։

Ամրապնդել խմբագրության կապը կուսակցական գիտական և ուսումնական հաստատությունների, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ինստիտուտների հետ, կազմակերպել համատեղ կոնֆերանսներ ու սեմինարներ, առավել կարևոր նյութերի նախապատրաստման համար ստեղծել կոմպլեքսային խմբեր։ Բանավեճերն ու քննարկումներն անհրաժեշտ է անցկացնել այնպես, որպեսզի դրանք ապահովեն գիտելիքների իրական աճ ու կոնցեպտուալ բնույթի լուրջ հանձնարարականների մշակում։ Լիովին բացառել հրատապ կենսական պրոբլեմների քննարկումները կեղծ գիտական բանակռիվներով, իսկ խոշոր տեսական հարցերը՝ իրականությունից կտրված սխոլաստիկ անհեթեթություններով փոխարինելը։

Ընդլայնել գրախոսվող և մատենագրվող աշխատությունների ու գրքերի շրջանակը, պարբերաբար հրապարակել պրոբլեմային-վերլուծական տեսություններ՝ հասարակագիտության տարբեր ուղղությունների, արվեստի, գրականության, մանկավարժության զարգացման գործերի վիճակի մասին։ Տալ հասարակագիտական հանդեսների հրապարակումների վերլուծություն և գնահատական, զարգացնել գործնական կապերը նրանց հետ։ «Կոմունիստի» քննադատական-գրախոսական նյութերին պետք է հատուկ լինեն կուսակցական սկզբունքայնությունը, գիտական բարձր չափանիշները, օբյեկտիվությունն ու պահանջկոտությունը, որոնք բացառեն խմբակային կամ անձնական հաշիվներ մաքրելու ցանկացած փորձերը, ճաշակամոլությունը և սուբյեկտիվիստական հակումները, պիտակներ կպցնելը։

Անհրաժեշտ է սիստեմատիկաբար տպագրել խմբագրական փոստի, նամակների և ընթերցողների առաջարկությունների տեսություններ, կանոնավոր կերպով կազմակերպել ընթերցողների կոնֆերանսներ, այդ թվում սկզբնական կուսակցական կազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում, հանդիպումներ կուսակցական ակտիվի և գիտական հասարակայնության հետ, հանդեսի աշխատանքի բարելավման համար օգտագործել հասարակական կարծիքի հարցումները։

---

## ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները գործողության մեջ

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԱԳԱՑՄԱՆ ՀԻՄՔՆ Է

**Ֆ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Մինիստրների
խորհրդի նախագահ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության XXVII համագումարը մեր երկրի պատմական տարեգրության մեջ մտավ որպես քաղաքական, տնտեսական, սոցիալական և գաղափարական կարևորագույն իրադարձություն։ Տասներկուերորդ հնգամյակում և ընդհուպ մինչև ընթացիկ հարյուրամյակի վերջը երկրի հասարակական արագ զարգացման՝ համագումարի կանխորոշած ստրատեգիական գիծը կրում է բազմապլան բնույթ և ընդգրկում մեր կյանքի բոլոր ոլորտները։*

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը XXVII համագումարին ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ ընդգծեց. «Նախկին նյութատեխնիկական հիմքի վրա անհնար է հասնել արմատական փոփոխությունների։ Մենք ելքը տեսնում ենք գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, գիտատեխնիկական առաջադիմության ավանգարդային ուղղություններում առաջանցման, տնտեսական մեխանիզմի, կառավարման սիստեմի վերակառուցման հիման վրա ժողովրդական տնտեսության խոր վերակառուցման մեջ»։*

*Համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումը խնդիր են դրել վճռականորեն հաղթահարել գիտատեխնիկական առաջադիմության ճանապարհին եղած խոչընդոտները, արմատական հեղափոխական տեղաշարժեր ապահովել նրա բոլոր ուղղություններում։*

*Ելնելով կուսակցության հիմնադրույթներից՝ առաջին անգամ մեր երկրի պատմության մեջ նախատեսվում է արդեն տասներկուերորդ հնգամյակում հասնել վերջնական բարձր արդյունքների՝ ի հաշիվ էկոնոմիկայի աճի ինտենսիվ, որակական գործոնների օգտագործման։*

*Մեր հանրապետության աշխատավորները խանդավառությամբ ընկալեցին կուսակցության առաջադրած խնդիրները, ըստ արժանվույն գնահատեցին դրանք՝ որպես ժողովրդի բարօրության, սովետական մարդկանց կենսամակարդակի հետագա աճի ապահովման վերաբերյալ հոգատարության վառ դրսևորում։*

*Գիտատեխնիկական առաջադիմության հարցերն առանձնապես հրատապ են մեր հանրապետության համար, որն ունի սահմանափակ տարածքային և*



*բնական ռեսուրսներ, կլիմայական բարդ պայմաններ ու տրանսպորտային հնարավորություններ։*

*ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թվականի ապրիլի 16-ի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» պատմական որոշումը հանրապետությանը նպատակաուղղեց դեպի զարգացման ինտենսիվ ուղի, սահմանեց երկարատև ժամանակաշրջանի հիմնական խնդիրները։ Որոշմամբ նախատեսված միջոցառումների հետևողական, պլանաչափ իրացման շնորհիվ արագացան հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը, քանակական ու որակական զգալի տեղաշարժեր կատարվեցին էկոնոմիկայում։*

*Անցած տասը տարում Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղություններին համապատասխան իրականացվեցին աշխատանքներ մեքենաշինության աշխատատար, սակավնյութատար և սակավէներգատար ճյուղերի (էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, էլեկտրատեխնիկական արդյունաբերություն, սարքաշինություն, ճշգրիտ մեքենաշինություն, հաստոցաշինություն), թեթև ու սննդի արդյունաբերության զարգացման առաջանցիկ տեմպերի հաշվին արդյունաբերության ճյուղային կառուցվածքի կատարելագործման նպատակով։*

*Արդյունաբերական արտադրության զարգացումն ուղեկցվում է նրա տնտեսական արդյունավետության բարձրացմամբ։ Ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են նոր տեխնիկայի մի շարք կարևորագույն միջոցառումներ։ Յուրացվել են հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին համապատասխանող արդյունաբերական արտադրանքի նոր տեսակներ, սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսներ, դրանց մեքենայացման ու ավտոմատացման նոր միջոցներ և այլն։*

*Առաջնահերթ նշանակություն տալով արտադրանքի սպառողական և տեխնիկատնտեսական հատկությունների բարելավմանը, նրանց տեսականու նորացմանը և տեխնոլոգիական ռեժիմների ու ստանդարտների պահպանմանը՝ հանրապետությունում հետևողական աշխատանք է իրականացվել որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկումն ավելացնելու ուղղությամբ։*

*Արդյունաբերական արտադրության զարգացման ասպարեզում ձեռք բերած նվաճումների հետ մեկտեղ, նախանշվեցին դրական տեղաշարժեր նաև նրա տարածքային տեղաբաշխման բնագավառում՝ նպատակ ունենալով ապահովել փոքր քաղաքների, լեռնային և նախալեռնային շրջանների կոմպլեքսային սոցիալ-տնտեսական զարգացումը, առավել ռացիոնալ օգտագործել աշխատանքային և բնական ռեսուրսները, կանխել հանրապետության որոշ գյուղական շրջաններից դեպի խոշոր քաղաքներ արտահոսքի պրոցեսը։*

*Տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակների տարիներին հանրապետության տարբեր շրջաններում ստեղծվեցին ու գործում են արտադրամիավորումների 210 մասնաճյուղեր և արտադրական տեղամասեր։ Հանրապետության լեռնային, նախալեռնային ու մյուս շրջաններում մասնաճյուղերի ստեղծման ուղղությամբ մեծ աշխատանք կատարեցին «Լույս», «Շուշան», «Սապֆիր», «Էլեկտրասարք», «Հայավտո», «Հայքիմմեքենա» և մյուս արտադրամիավորումները։*

*Միագումար հանրային արտադրանքը 1985 թվականին՝ 1975 թվականի համեմատությամբ, աճեց 79,8, արտադրված ազգային եկամուտը՝ 88,9 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալն աճեց 95,3 տոկոսով։ Ընդ-սմին արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում մեքենաշինության և մետաղամշակության տեսակարար կշիռը 1985 թվականին կազմեց 30,3 տոկոս՝ 1975 թվականի 19,9 տոկոսի դիմաց։*

*Աշխատանքներ իրականացվեցին նյութատար և էներգատար արտադրությունների կրճատման ու սահմանափակման, դրանց շահագործման անվտանգության ապահովման, բնական միջավայրի վիճակի վրա բացասաբար ազդող*

արտադրությունների փակման և նվազեցման ուղղությամբ։ Հանրապետության էկոնոմիկան է՛լ ավելի հակվեց տեղական ռեսուրսների կոմպլեքսային վերամշակմանը, հանրային արտադրության մեջ ազատ աշխատանքային ռեսուրսների լայնորեն ներգրավմանը, ստեղծված գիտական և գիտատեխնիկական պոտենցիալի արդյունավետ օգտագործմանը։ Միջոցառումներ իրականացվեցին արտադրության վարման ինտենսիվ գործոնների հիման վրա պարենային ծրագրի խնդիրների կատարման ուղղությամբ։ Չնայած եղանակային անբարենպաստ պայմաններին, տարեցտարի ավելացան գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալները։ Առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, երկրագործության կուլտուրայի բարձրացման, ոռոգելի հողերի ընդլայնման և ավելի ինտենսիվ օգտագործման շնորհիվ գյուղատնտեսական արտադրությունը հանրապետությունում առավել կայուն բնույթ ստացավ։

Աճեցվեցին ու լայնորեն արմատավորվեցին հացահատիկային կուլտուրաների, տոմատի, բանջարանոցային և կերային կուլտուրաների նոր, բարձրբերքատու սորտեր։ Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում հիմնվեցին 16,8 հազար հեկտար ոռոգելի ինտենսիվ այգիներ։

Գյուղատնտեսական արտադրության մեջ ձեռք բերված հաջողությունները շատ բանով պայմանավորված էին ճյուղի նյութատեխնիկական բազայի ամրապնդմամբ, գյուղատնտեսական ձեռնարկությունների ու կազմակերպությունների արտադրատեխնիկական ապահովման բարելավմամբ։ Նոր տեխնիկայով գյուղատնտեսության հետևողականորեն հագեցումը թույլ տվեց բարձրացնելու մեքենայացման մակարդակը և կրճատելու ձեռքի աշխատանքի բաժինը։

Դինամիկորեն զարգացան նաև ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերը։ Աճեցին վերամշակող ճյուղերի հիմնական ֆոնդերը։ Շահագործման հանձնվեցին մի շարք գյուղատնտեսական կարողություններ, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրանքի վերամշակման ու պահպանման ձեռնարկություններ։

Գյուղատնտեսության զարգացման առանձնահատկությունները, բնակլիմայական պայմանները, գիտական դպրոցների ավանդույթները նպաստեցին հանրապետության որոշակի գիտական մասնագիտացման ձևավորմանը։

Հանրապետությունում հաշվվում են գիտության և գիտական սպասարկման բազմաթիվ կազմակերպություններ, այդ թվում՝ ավելի քան 100 գիտական հաստատություն։ Դրանցում զբաղված 31 հազար մարդուց 21,5 հազարը գիտական ու գիտամանկավարժական աշխատողներ են՝ ժամանակակից գիտության գրեթե բոլոր հիմնական ուղղությունների գծով։ Բնակչության 10 հազար մարդուն ընկնող գիտական ու գիտամանկավարժական կադրերի թվով Հայկական ՍՍՀ-ն միութենական հանրապետությունների մեջ (ՌՍՖՍՀ-ից հետո) գրավում է երկրորդ տեղը։

Գիտության զարգացման գործում կարևոր դեր է խաղում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան՝ մոտ 10 հազար մարդ ունեցող 31 գիտահետազոտական հաստատություններով, այդ թվում՝ 3,3 հազար գիտական աշխատողներ։ Գիտական պոտենցիալի հիմնական մասը կենտրոնացված է միութենական և միութենական-հանրապետական ենթակայության ճյուղային կազմակերպություններում, որտեղ զբաղված է գիտության և գիտական սպասարկման մեջ բոլոր աշխատողների ավելի քան 50 տոկոսը։ Վերջին տասը տարում զգալիորեն մեծացավ գիտության գործարանային սեկտորը։ Արդյունաբերական ձեռնարկություններում կոնստրուկտորական ստորաբաժանումների թիվն ավելացավ գրեթե 1,4 անգամ, իսկ գիտական աշխատանքով զբաղվածների թվաքանակը՝ 1,3 անգամ։ Բուհական գիտության մեջ զբաղված է հանրապետության գիտական աշխատողների ավելի քան 35 տոկոսը, որի 43 տոկոսը՝ գիտական աստիճանով։

Հանրապետությունում տարվում են մի շարք ֆունդամենտալ հետազոտություններ ժամանակակից գիտության շատ ճյուղերի՝ կառավարման ավ-



տոմատացված համակարգերի և էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի, ռադիոլոկացիայի, աստղաֆիզիկայի, միջուկային ֆիզիկայի և տարրական մասնիկների ֆիզիկայի, ռադիոֆիզիկայի, էլեկտրոնիկայի, կարծր մարմնի ֆիզիկայի գծով, մաթեմատիկայի, մեխանիկայի, միկրոկենսաբանության, բիոքիմիայի, բիոֆիզիկայի, օրգանական և անօրգանական քիմիայի, երկրաբանության մի շարք ուղղությունների գծով։

Ընդլայնվում է ժողովրդատնտեսական խնդիրների լուծման ուղղությամբ հանրապետության գիտական հիմնարկներում կատարվող գիտահետազոտական աշխատանքների թեմատիկան։

Վերջին տարիների ընթացքում կապիտալ շինարարությունում գիտության և տեխնիկայի նվաճումների, շինարարական արտադրության առաջավոր փորձի ներդրման հիման վրա բարձրացավ նրա տեխնիկական մակարդակը։ Ընդարձակվեցին ատաղձագործական իրերի, մետաղական կոնստրուկցիաների, արմատուրային և սանտեխնիկական պատրաստուկների, ապրանքային բետոնի արտադրության կարողությունները։ Յուրացվել է մի շարք նոր արդյունավետ կոնստրուկցիաների ու նյութերի արտադրությունը, արմատավորվել են շինարարության առաջադիմական կոնստրուկտիվ սիստեմներ և մեթոդներ։

Որոշակի դրական տեղաշարժեր կատարվեցին ժողովրդական կրթության, առողջապահության, կուլտուրայի համակարգի, բնակչության սպասարկումների ոլորտի զարգացման բնագավառում։ Այս ամենը թույլ տվեց հանրապետության էկոնոմիկան դուրս բերելու զարգացման նոր բնագծեր։

Սակայն ՍՄԿԿ XXVII և Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարների պահանջների լույսի ներքո անհրաժեշտ է քննադատորեն վերլուծել հանրապետության ժողովրդական տնտեսության վիճակը՝ նրա գիտատեխնիկական մակարդակի, համաշխարհային ստանդարտներին արտադրանքի արտադրության համապատասխանության ապահովման, որակի բարձրացման, կատարվող գիտական հետազոտությունների խորացման և արտադրությանը դրանց մոտեցման, աշխատանքի պայմանների ըստ ամենայնի բարելավման և ավտոմատացման ու մեքենայացման բազայի վրա նրա արտադրողականության բարձրացման առումով։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը, ղեկավարվելով կուսակցության համագումարի որոշումներով, բազմակողմանիորեն վերլուծեցին տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակների տարիներին հանրապետությունում այդ ուղղությամբ տարված աշխատանքի վիճակը ու կանխանշեցին կոնկրետ միջոցառումներ՝ ուղղված գիտատեխնիկական առաջադիմության հետագա արմատական արագացմանը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1985 թվականի հուլիսյան պլենումում նշվեց, որ այսօր պետք է հենվել ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, ռեսուրսների խնայողության, արտադրանքի որակի կտրուկ բարելավման վրա, քանի որ գործող շատ ձեռնարկություններ երկար տարիներ տեխնիկապես չեն նորացվել, նրանցից քամվել է բոլոր հնարավորը և շատ քիչ ներդրվել։

Հանրապետությունում գիտատեխնիկական առաջադիմության և արտադրության ինտենսիվացման գործում դեռևս լրիվ չափով չի օգտագործվում եղած գիտատեխնիկական պոտենցիալը։ Լուրջ թերություններ կան արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման արագացման, ինքնածախսածածկման ժամկետների կրճատման և իրականացված միջոցառումների բարձր արդյունավետության ապահովման հարցերում։

Ակադեմիական, գերատեսչական և բուհական որոշ հաստատությունների գիտահետազոտական աշխատանքների արդյունավետությունն առայժմ ոչ պատշաճ մակարդակի վրա է գտնվում, շարունակում է տեղ գտնել մանր թեմաների գծով ուժերի և միջոցների փոշիացումը։ Խոշոր կոմպլեքսային հետազոտություններ դեռևս քիչ են կատարվում, գիտական պոտենցիալը չի կենտրոնացված ժողովրդատնտեսական կարևորագույն նշանակություն ունեցող

պրոբլեմների լուծման համար։ Անցած տարիների աշխատանքի արդյունքները ցույց տվեցին, որ դեռևս անբավարար է հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվող ավարտուն մշակումների թիվը։

1981—1985 թվականներին հանրապետության գիտությունների ակադեմիայի կողմից ներկայացված արդյունաբերական արտադրության մեջ ներդրման ենթակա 20 առաջարկություններից միայն չորսն էին համապատասխանում ավարտուն մշակումներին ներկայացվող պահանջներին, իսկ բուհերի առաջարկած 14 մշակումներից ոչ մեկը չէր համապատասխանում ավարտուն գիտատեխնիկական մշակումների ընդունման ու գնահատման վերաբերյալ կանոնադրության պահանջներին։ Ավարտուն շատ մշակումներում բացակայում է առաջարկվող գիտատեխնիկական լուծումների հեռանկարայնության, նրանց տնտեսական արդյունավետության, պատենտունակության գնահատականը։

Արդյունաբերական մինիստրությունների և գերատեսչությունների ճյուղային գիտահետազոտական ու կոնստրուկտորական կազմակերպություններում դեռևս դանդաղ է վերակառուցվում աշխատանքը գիտական մշակումների որակի բարձրացման, ավարտուն աշխատանքների ներդրման ժամկետների կրճատման ուղղությամբ։ Բավական է նշել, որ 1985 թվականին ավարտուն թեմաների ընդհանուր թվից 37-ը կատարված էին լավագույն մշակումների մակարդակից ցածր, իսկ 193 մշակումների գծով տեխնիկական մակարդակն առհասարակ չէր որոշված։ Գիտատեխնիկական մշակումների ցածր մակարդակի փաստեր են տեղ գտել Կիրովականի «Պոլիմերսոսինձ» գիտաարտադրական միավորումում, «Էլեկտրամեքենա», «Հայգունմետնախագիծ» գիտահետազոտական ինստիտուտներում, «Հայգյուղտնտմեքենայացում» գիտաարտադրական միավորումում և այլն։ Չնայած այն բանին, որ շատ գիտահետազոտական ինստիտուտների ու կոնստրուկտորական տեխնոլոգիական բյուրոների գծով վերջին տարիներին ներդրված մշակումներից ստացվեց տնտեսական բարձր արդյունք, առանձին կազմակերպություններ չապահովեցին դրա ստացումը։ Օրինակ, ավտոմատիկայի սարքերի և տարրերի պետական հատուկ կոնստրուկտորական բյուրոյի ու «Հայգյուղտնտմեքենայացում» գիտաարտադրական միավորման գծով ավարտուն մշակումների ներդրումից սպասվող տարեկան տնտեսական արդյունքը ենթադրվում էր համապատասխանաբար 167 հազար ռուբլու և 1816 հազար ռուբլու չափով, իրականում ոչ մի արդյունք չստացվեց։

Սարքաշինական մինիստրության, ավտոարդմինիստրության, գունմետվարչության, կապի և մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների գծով նոր տեխնիկայի միջոցառումների ներդրման ինքնածախսածածկման ժամկետը զգալիորեն գերազանցում է միջին հանրապետական ցուցանիշը։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում դանդաղորեն է ընթանում արտադրական սարքավորումների արդիականացման պրոցեսը։ 1985 թվականին, Հայկական ՍՍՀ կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով, արդիականացվեց արդյունաբերությունում տեղադրված սարքավորումների ընդամենը 0,4 տոկոսը։

Արտադրական սարքավորումները հատկապես դանդաղորեն են նորացվում հանքային պարարտանյութերի արտադրության, թեթև և սննդի արդյունաբերության մեքենաշինության, տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության, շինարարական, ճանապարհային և կոմունալ մեքենաշինության, ավտոարդյունաբերության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության, շինարարական նյութերի արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկություններում։

Այս բոլորն ի վերջո հանգեցնում է արտադրական ֆոնդերի ակտիվ մասի ծերացման, այն դարձնելով սակավարդյունավետ ու սակավշահութաբեր։ Հիմնական ֆոնդերի նորացման անբավարար տեմպերի, նրանց անբավարար տեխնիկական վիճակի, մեքենայացման և ավտոմատաց-



ման միջոցների նվազ օգտագործման հետևանքով հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության ընդհանրացնող ցուցանիշը՝ ֆոնդահատույցը, 1985 թվականին, 1980 թվականի համեմատությամբ, նվազեց 1,9 տոկոսով, որի պատճառով պայմանական կորուստները տասնմեկերորդ հնգամյակի տարիներին կազմեցին ավելի քան 100 միլիոն ռուբլի։

ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց խոշոր արտադրական և գիտաարտադրական միավորումների ցանցի զարգացման, գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային, նախագծակոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների ուժերի ու միջոցների համակենտրոնացման միջոցով լուծել գիտական մշակումների արդյունավետության բարձրացման և արտադրության մեջ դրանց ներդրման արագացումն ապահովող խնդիրները։

Ելույթ ունենալով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը բազմիցս նշել է, որ այնպիսի մի փոքր հանրապետություն, ինչպիսին Հայկական ՍՍՀ-ն է, չի կարող մրցել մյուս հանրապետությունների հետ արտադրանքի ծավալներով, սակայն կարող է և պետք է մրցի ու դառնա առաջինը ըստ արտադրանքի որակի և բարդության։ Մեր նշանաբանը պետք է լինի՝ «Արտադրված է Սովետական Հայաստանում, ուրեմն արտադրված է գերազանց»։ Դրան պետք է նպատակաուղղվեն մեր գիտական կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների, ձեռնարկությունների, նրանց կոլեկտիվների ջանքերը։ Այդ խնդիրների լուծմանը պետք է ուղղվի կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների գործունեությունը, դրան պետք է ենթարկվի սովետների, պետական ու տնտեսական մարմինների գործունեությունը։

Այսօր մեր առջև մեծ ու բարդ խնդիրներ են ծառացած գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա հանրային արտադրության ինտենսիվացման ասպարեզում։ Այդ ուղղությամբ հիմնական միջոցառումներն արտացոլում գտան ՀԿԿ Կենտկոմի հավանությանն արժանացած և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանում հաստատված հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների պետական պլանի մեջ։ Հանրապետության նյութական արտադրության ճյուղերի հետագա զարգացումը կընթանա գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների ներդրման, ստեղծված արտադրական և գիտական պոտենցիալի առավել ինտենսիվ օգտագործման, արտադրական կարողությունների տեխնոլոգիական արդիականացման ու գործող ձեռնարկությունների վերակառուցման հիման վրա։

Կշարունակվի տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներում մշակված ու իրականացվող՝ գիտատեխնիկական առաջադիմությունը որոշող արդյունաբերության, սակավմետաղատար և սակավէներգատար ճյուղերի առաջանցիկ զարգացման սկզբունքային կուրսը։

Գիտատեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղություններից են առաջավոր տեխնոլոգիաների լայնորեն յուրացումը, առաջադիմական, բազային տեխնոլոգիաների ստեղծման, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման ընդհանուր միութենական և հանրապետական նպատակային կոմպլեքսային գիտատեխնիկական մի շարք ծրագրերի մշակումն ու արտադրության մեջ ներդրումը, արտադրության ավտոմատացումը և մեքենայացումը։

Տասներկուերորդ հնգամյակում նախատեսվում է մեքենայացված, հարահոս ու ավտոմատ գծերի, կոմպլեքսայնորեն մեքենայացված և ավտոմատացված տեղամասերի ու արտադրությունների, ռոբոտատեխնիկայի և մանիպուլյատորների կիրառմամբ ճկուն արտադրական սիստեմների լայնորեն արմատավորում։ Հնգամյակի տարիներին նախատեսվում է հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ընդհանուր առմամբ ներդնել նոր տեխնիկայի

մինիստրության Երևանի ավտոդողերի գործարանի վերակառուցման ու տեխնիկական վերազինման հարցերի լուծումը։

Մշակվել է Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի տեխնիկական վերազինման ծրագիր, որը կապահովի արտադրության 75 տոկոս ինտենսիվացում։ Նվազող տիտրով փոքր գծային խտությունների ացետատային ժապավենի թողարկման շնորհիվ արտադրանքի ծավալը կավելանա 15—20 տոկոսով՝ հումքի և էներգառեսուրսների հարաբերական տնտեսմամբ։

Օրակարգում է Կիրովականի քիմիական գործարանի արմատական վերակառուցման՝ ամոնիումի նոր արտադրության շահագործման և բնապահպան կոմպլեքսային միջոցառումների իրականացման հարցը։

Առաջ է քաշված հանրապետության հնագույն ձեռնարկություններից մեկը՝ Երևանի ավտոդողերի գործարանը, ծանր վիճակից դուրս բերելու հարցը, որի արտադրանքը արտադրության ծայրահեղ տեխնիկական հետամնացության պատճառով դարձել է ոչ մրցունակ։ Այստեղ պետք է մշակվեն և իրականացվեն արտադրության տեխնիկական վերազինման միջոցառումներ, անցնելով շառավղային կոնստրուկցիայի ավտոդողերի թողարկման՝ մետաղակորդի և բարձրամուր պոլիմերային կորդերի կիրառմամբ։ Դրա հետ մեկտեղ, պետք է լուծել նաև ձեռնարկության բանվորների և ծառայողների սոցիալական ու կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մի շարք հարցեր։

Մեծ ուշադրություն պետք է նվիրել Լենինականի կոմպրեսորների գործարանին՝ վերջնականապես որոշել նրա արտադրական մասնագիտացումը։ Մի շարք տարիների ընթացքում գործարանի արտադրական անվանացանկը բազմիցս փոփոխություններ է կրել, որը կասեցրել է բարձրարտադրողական սարքավորումներով արտադրությունը վերազինելու պրոցեսը։ Գործարանի թողարկած ՖԿ—0,09 կոմպրեսորներն իրենց տեխնիկատնտեսական բնութագրերով չեն համապատասխանում ժամանակակից պահանջներին, և այդ կապակցությամբ հարց է դրվում նորացնելու ու կայունացնելու գործարանի արտադրանքի անվանացանկը։

Մեծ ու բարդ խնդիրներ են լուծվելու հանրապետության վառելիքաէներգետիկ կոմպլեքսում։ Մենք պետք է բոլոր միջոցները գործադրենք մի շարք սկզբունքային հարցերի լուծումն արագացնելու համար։ Դրանք են՝ կարողությունների ավելացումը Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում, հիդրոկուտակիչ էլեկտրակայանի շինարարությունը, Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանի շինարարության ավարտումը, փոքր գետերի վրա հիդրոէլեկտրակայանների շինարարությունը և էներգիայի ոչ տրադիցիոն աղբյուրների օգտագործումը։ Միաժամանակ լրացուցիչ միջոցներ կձեռնարկվեն Հյուսիսային Կովկասից եկող նոր գազամուղի, գազի հեղուկացման գործարանի և գազի ու մազութի լրացուցիչ պահեստարանների շինարարությունն արագացնելու համար։

1988 թվականին կավարտվի Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի ցեմենտի արտադրության ընդլայնումը, որը թույլ կտա այդ գործարանում կենտրոնացնելու հանրապետության ցեմենտի ամբողջ արդյունաբերությունը, բարձրացնելու հանրապետությունը ցեմենտով ապահովելու հուսալիությունը և վերջնականապես լուծելու օդային միջավայրի պահպանության հարցերը Հրազդանի շրջանում։

Գյուղատնտեսությունում ստեղծված արտադրական պոտենցիալի օգտագործման նախատեսվող բարելավումը, բուսաբուծության մեջ ինտենսիվ տեխնոլոգիաների ներդրումը, անասունների և թռչունների մթերատվության ավելացման հաշվին անասնապահության արտադրանքի գրեթե ամբողջ հավելաճի ստացման ապահովումը թույլ տվեցին 1990 թվականին, 1985 թվականի համեմատությամբ, սահմանելու սովխոզներում 8 տոկոսով ինքնարժեքի իջեցման առաջադրանք։



Տնտեսական աճի և հանրային արտադրության արդյունավետության մակարդակի բարձրացման պլանավորվող արագ տեմպերը, արտադրական պոտենցիալի աճի հետ մեկտեղ, հնարավորություն են տալիս լուծելու սոցիալական բնույթի պրոբլեմների է՛լ ավելի մասշտաբային շրջանակ։ Դրանով իսկ ռեալ պայմաններ են ստեղծվում էկոնոմիկայի զարգացման՝ սոցիալական ուղղվածության ուժեղացման կուսակցության կուրսի կենսագործման համար։

Այդ խնդրի կատարումը առանձնապես վառ է դրսևորվում ճյուղում կապիտալ ներդրումների այն բաժնի էական ավելացման մեջ, որը կոչված է անմիջականորեն ապահովելու բնակչության բարեկեցության աճը։ Ավելի քան 3,5 մլրդ ռուբլի պետական կապիտալ ներդրումներ կամ ընդհանուր ծավալի գրեթե 43 տոկոսն ուղղվում են ագրոարդյունաբերական կոմպլեքսի, ժողովրրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը, սոցիալ-կուլտուրական և կոմունալ շինարարության ու սպասարկումների ոլորտի զարգացմանը։ Սոցիալական ոլորտի ապարեզում կապիտալ ներդրումների բաժնի էական մեծացումը պլանային պրակտիկայում սկզբունքային նոր ու արտակարգ անհրաժեշտ հանգամանք է և ուղղված է այդ ոլորտի պլանավորման նկատմամբ, այսպես կոչված, «մնացորդային» մոտեցման վճռական հաղթահարմանը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թվականի հուլիսյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Մեզանում կան բոլոր նախադրյալները ՍՄԿԿ XXVII համագումարի, կուսակցության Կենտկոմի հունիսյան պլենումի կողմից առաջադրված՝ մեր երկրի հետագա զարգացմանը, մեր հասարակության ներկային ու ապագային վերաբերող բացառիկ կարևորության խնդիրները հաջող լուծելու համար»։

Զինված ՍՄԿԿ XXVII համագումարի գաղափարներով, հանրապետության աշխատավորական կոլեկտիվներն իրենց ողջ ջանքերը կներդնեն երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման գործին, նոր, տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման համար։

Մեր առջև ծառացած են մեծ ու պատասխանատու խնդիրներ, որոնք վերաբերում են գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա, հանրապետության էկոնոմիկայի դինամիկ զարգացմանը։ Ստեղծված որոշակի ինդուստրիալ պոտենցիալը ռեալ բազա կհանդիսանա կուսակցության XXVII համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի առաջադրած՝ հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա արագ զարգացման խնդիրները հաջողությամբ լուծելու գործում։

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի նախագահ

Վերջին տարիներին սովետական արհմիությունները էլ ավելի են ընդլայնել իրենց շրջանակները՝ ներառելով ոչ միայն բանվոր դասակարգին ու աշխատավոր մտավորականությանը, այլև կոլտնտեսային գյուղացիությանը: Ըստ էության իրականացել է սովետների VIII համագումարում Վ. Ի. Լենինի առաջադրած այն պահանջը, որ արհմիությունների աշխատանքն ամրապնդելու համար հարկավոր է այն տարածել ոչ միայն գյուղական պրոլետարիատի, այլև ամբողջ աշխատավոր գյուղացիության վրա: Այսօր արհմիությունները վերածվել են մի հզոր բանակի, որն իր շարքերում միավորում է 130 միլիոնից ավելի մարդու՝ բանվորներ, կոլտնտեսականներ և մտավորականություն, այսինքն՝ սովետական հասարակության սոցիալական բոլոր խմբերին:

Այսպիսով, արհմիություններն աճել են ոչ միայն թվակազմով, այլև որակապես և վճռական դեր են կատարում երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների վերելքի ապահովման, նրա առջև ծառացած սոցիալ-տնտեսական խոշորամասշտաբ խնդիրների լուծման գործում: Արհմիությունների որակական նոր բնութագրերը, որոնք ունեն գաղափարախոսական, քաղաքական և սոցիալական խոր իմաստ, ինքնին սովետական ժողովրդի ամուր միասնության, սոցիալիստական հասարակարգի աննախադեպ և համակողմանի զարգացման ու առաջընթացի շատ կարևոր ցուցանիշ են:

Վ. Ի. Լենինը դեռևս սովետական իշխանության արշալույսին արհմիությունների գոյությունն օրինաչափ էր համարում, որովհետև դրանք «...ոչ միայն պատմականորեն անհրաժեշտ են, այլև հանդիսանում են ինդուստրիալ պրոլետարիատի պատմականորեն անխուսափելի, պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում նրան համարյա գլխովին ընդգրկող կազմակերպությունը» (**ԵԼԺ**, հ. 42, էջ 251): Դրա համար էլ նա բարձր էր գնահատում արհմիությունների տեղն ու դերը նոր հասարակության քաղաքական սիստեմում:

Ո՞րն էր արհմիությունների արժեքավորման լենինյան ելակետը: Առաջին հերթին, նա արհմիությունները դիտում էր որպես մի մասսայական կազմակերպություն, որն ակտիվորեն մասնակցում է սովետական պետության, սոցիալիստական հասարակարգի, հանրային արտադրության կառավարմանը: Եվ, երկրորդ, նա անչափ կարևորում էր արհմիությունների առջև մշտապես ծառացած երկմիասնական խնդիրը՝ հոգատարությունն ու մտահոգությունը, մի կողմից՝ ժողովրդական տնտեսության համակողմանի ու դինամիկ զարգացման, սոցիալիստական արտադրության վերելքի, մյուս կողմից՝ աշխատավորական կոլեկտիվների իրավունքների ու շահերի, նրանց աշխատանքի, հանգստի ու կենցաղի պայմանների բարելավման նկատմամբ: Դրանք փոխկապակցված, միմյանցով պայմանավորված են: Չէ՞ որ հանրային արտադրության անշեղ զարգացմամբ հնարավոր է լինում աշխատավորների համար ստեղծել



արարման, ակտիվ ու արդյունավետ հանգիստ անցկացնելու, կենցաղը բարձր մակարդակով վարելու լայն հնարավորություններ: Այդ հոգատարությանը աշխատավորներն արժանի ձևով են պատասխանում, տիրոջ սրտացավությամբ վերաբերվում գործին, հանրային բարիքներին: Կուսակցությունը նպատակ է այդպիսի փոխկապակցվածության ամրապնդմանը: ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում նախատեսվում է առաջիկա 15 տարում կրկնապատկել ժողովրդի կենսապայմանների բարելավմանը տրամադրվելիք ռեսուրսների ծավալը, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելացնել 1,6—1,8 անգամ: Հսկայական միջոցներ են հատկացվելու բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարության ընդլայնման նպատակին:

Արհմիությունների վերաբերյալ լենինյան գնահատականներն ու դրույթներն այսօր էլ պահպանում են իրենց նշանակությունը: Կուսակցությունը դրանք հիմք է ընդունում արդի փուլում արհմիությունների նոր խնդիրները, նրա իրավունքների ու պարտականությունների շրջանակները սահմանելու համար: Եվ միանգամայն օրինաչափ է, որ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում այնքա՜ն կարևորվում է արհմիությունների գործունեության ու նրան վերապահվող դերի վերաբերյալ լենինյան դրույթը. «ՍՄԿԿ-ն իր խնդիրն է համարում նպաստել **արհեստակցական միություններին՝** աշխատավորների առավել մասսայական կազմակերպության, կառավարման դպրոցի, տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի հեղինակության և ազդեցության մշտական աճին»:

Կուսակցության ծրագրում հանգամանորեն կանոնարկված են արդի փուլում արհմիությունների հիմնական ֆունկցիաները, առաջադրված են նրանց գործունեության արմատական խնդիրները: Նրանք պարտավոր են ըստ ամենայնի նպաստել ժողովրդական հարստության բազմապատկմանը, մարդկանց աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների բարելավմանը, պաշտպանել նրանց իրավունքներն ու շահերը, մշտապես զբաղվել մասսաների կոմունիստական դաստիարակությամբ, նրանց մասնակից դարձնել արտադրական և հասարակական գործերի կառավարմանը, ամրապնդել գիտակցական աշխատանքային կարգապահությունը:

Սակայն այդ ամենով չեն սահմանափակվում արհմիությունների անելիքները: Նրանց առջև խնդիր է դրված ավելի ակտիվորեն մասնակցել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման զարգացմանը, պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության արմատական հարցերի լուծմանը, ավելի սերտորեն համագործակցել սովետների և աշխատավորների մյուս կազմակերպությունների հետ, նպաստել աշխատավորական կոլեկտիվների լիազորությունների իրականացմանը, սոցիալական արդարության սկզբունքների արմատավորմանը և այլն:

Սովետական արհմիությունները ճիշտ են ընկալում իրենց առջև ծառացած արդի խնդիրների հույժ կարևորությունը, ձգտում են մշտապես գտնվել կուսակցության նոր պահանջների մակարդակի վրա, ակտիվ, համակողմանի և հետևողական գործունեություն ծավալել ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները, նրա հաստատած փաստաթղթերում բովանդակված դրույթներն անվերապահորեն կատարելու համար: Այդ համընդհանուր պրոցեսից անմասն չեն մնում նաև Հայաստանի արհմիութենական կազմակերպությունները: Դա մասնավորապես արտահայտվեց դեռևս համագումարի համաժողովրդական նախապատրաստության ընթացքում հանրապետության աշխատավորական կոլեկտիվներում առաջացած արտադրական ու քաղաքական բարձր ակտիվության և ձեռք բերված տնտեսական հաջողությունների մեջ:

Կոմունիստական կուսակցության գործունեության կարևոր ոլորտը եղել և մնում է էկոնոմիկայի կառավարումը: Եվ դա բնական է: Չէ՞ որ հենց այստեղ են անհրաժեշտ նախադրյալներ ստեղծվում երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունն ամրապնդելու, սովետական մարդկանց կենսամակարդակը բարձրացնելու, հասարակության որակական նոր վիճակի հասնելու համար: Եվ կուսակցության XXVII համագումարը աշխատավորական կոլեկտիվներին, արհմիութենական կազմակերպություններին զինեց այդ խնդիրների լուծման գործողությունների հստակ ծրագրով, որի հիմքում ընկած է սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կոնցեպցիան և որն առաջ էր քաշվել դեռևս ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան

մակերպել սեմինարներ՝ նվիրված աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության հետագա զարգացմանն ու խորացմանը: Բոլոր հանրապետական կոմիտեները մշտական կազմակերպչական աշխատանք են տանում աշխատավորական կոլեկտիվների արհմիութենական ակտիվի շրջանում՝ արտադրության ռեզերվների որոնման, բարձր վերջնարդյունքների ստացման նպատակով սոցիալիստական գործարար մրցություն ծավալելու համար:

Արտադրամասսայական հանձնաժողովների նախագահները, արհմիութենական ողջ ակտիվը արհմիութենական դասընթացներում հատուկ ծրագրով ուսումնասիրում են սոցիալիստական մրցության կազմակերպման բարելավման հարցերը:

Սոցիալիստական մրցության հարցերը խորությամբ ուսումնասիրելու նպատակով Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիային և ՀԱՄԽ-ին առընթեր կազմակերպվել է գիտամեթոդական խորհուրդ: Նրանում ստեղծվել են մրցության կազմակերպման ձևերի կատարելագործման և բարոյական ու նյութական խրախուսման օգտագործման սեկցիաներ: Խորհուրդը զբաղվում է մրցության կազմակերպման առաջավոր փորձի ուսումնասիրման, ընդհանրացման և տարածման հարցերով, գիտատեխնիկական ընկերության հանրապետական խորհրդի հետ միասին նախապատրաստում և անցկացնում է գիտագործնական կոնֆերանսներ՝ նվիրված արդի պայմաններում սոցիալիստական մրցության հետագա զարգացման խնդիրներին:

Ինչպես տեսնում ենք, մեր հանրապետությունում զգալի գործ է արվում սոցիալիստական մրցության կազմակերպումը կուսակցության արդի պահանջների մակարդակին բարձրացնելու համար: Դրա վկայությունը ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշներն են, որ տարիներ շարունակ նվաճում են մեր հանրապետությունը, Երևան, Կիրովական քաղաքները, մի շարք շրջաններ և բազմաթիվ աշխատավորական կոլեկտիվներ:

Սակայն այդ հաջողությունները բնավ էլ չեն նշանակում, թե սոցիալիստական մրցության կազմակերպման գործում թերություններ և թերացումներ չկան: Ցավոք, քիչ չեն այն կոլեկտիվները, որոնք այդ կարևոր գործի նկատմամբ ցուցաբերում են ձևական մոտեցում, չեն ապահովում մրցության գործարարությունն ու ներգործունությունը: Հանրապետության գրեթե բոլոր կոլեկտիվներում վաղուց լայն արձագանք է գտել «Ոչ մի ետ մնացող կողքին» հայրենասիրական նախաձեռնությունը և, բնականաբար, մրցության սլաքն ուղղվել է դրա արմատավորմանը: Մինչդեռ, որքան զարմանալի է, 1985 թ. արդյունաբերական 63 ձեռնարկություններ չկատարեցին արտադրանքի իրացման պլանը, 110-ը՝ պայմանագրային պարտավորությունները, 78-ը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները: Այս գործում խիստ թերացել են հատկապես քիմիական ու նավթաքիմիական, ավտոմոբիլային ու շինանյութերի արդյունաբերության համակարգերի ձեռնարկությունները: Վատ աշխատեցին հատկապես շինարարները: Նրանք թերակատարեցին ինչպես հիմնական ֆոնդերի, այնպես էլ բնակարանային, նախադպրոցական և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների գործարկման պլանները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. ապրիլյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ըստ արժանվույն գնահատելով ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերում տարեսկզբին ձեռք բերված հաջողությունները, անհանդուրժելի համարեց այն փաստը, որ առանձին մինիստրություններ, գերատեսչություններ և արտադրական կոլեկտիվներ չկատարեցին առաջին եռամսյակի պլանները և խնդիր դրեց ուժեղացնել խստապահանջությունը անփույթ աշխատողների նկատմամբ, բարձրացնել ոչ միայն ղեկավարների, այլև աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվությունը արտադրական խնդիրների լուծման գործում: Այս պահանջները արհմիութենական կազմակերպությունները պետք է ընդունեն որպես գործողության ծրագիր և ջանան, որպեսզի ապահովվի սոցիալիստական մրցության գործարարությունն ու բարձր արդյունավետությունը, դրա նկատմամբ ձևական մոտեցման յուրաքանչյուր դրսևորում դառնա քննարկման առարկա, մեղավորները պատասխան տան ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և XXVII համագումարի պահանջների ողջ խստությամբ: Խնդիրն այն է, որ սոցիալիստական մրցությունը դիտվի որպես այժմյան և գալիք լարված ու բարդ պլանների կատարման հզոր միջոց:



Բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների համար առողջ և անվտանգ աշխատանքի պայմանների ստեղծումը արհմիությունների կարևոր խնդիրներից է: ՍՄԿԿ XXVII համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց, որ արհմիությունները ընդհանուր առմամբ քիչ բան չեն անում բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների պահանջմունքների բավարարման, մրցության զարգացման, կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, սակայն, այնուամենայնիվ, նրանք գլխավոր ուշադրությունը պետք է նվիրեն թե՛ աշխատավորների օրինական շահերի պաշտպանությանը, աշխատանքի պահպանությանն ու անվտանգության տեխնիկային և թե առողջարարական, մարզական, ակումբային հիմնարկությունների շինարարությանն ու աշխատանքին: «Արհմիությունների համար, սոցիալական քաղաքականությունը, աշխատավորների շահերը պետք է մշտապես լինեն առաջին պլանում»— ահա XXVII համագումարի կարևոր պահանջներից մեկը: Հետևաբար, ՀԱՄԽ-ը, հանրապետական կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները պարտավոր են այդ խնդիրները մշտապես պահել ուշադրության կենտրոնում, օգնել ձեռնարկությունների և տնտեսությունների ղեկավարներին արտադրության մարդկանց աշխատանքը հեշտ ու հաճելի դարձնելու գործում:

Գաղտնիք չէ, որ բանվորն ու կոլտնտեսականը ավելի արտադրողաբար և տիրոջ սրտացավությամբ են աշխատում, երբ տեսնում են, որ ամեն ինչ արվում է իրենց կենցաղն ու հանգիստը արդյունավետ կազմակերպելու համար: Այս առումով շոշափելի գործ է արվել անցած հնգամյակում: Այսպես, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման, արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման միջոցով ավելի քան 212 հազար մարդու աշխատանքի պայմանները համապատասխանեցվել են սանիտարական նորմաներին: Իրականացվում է լայն ծրագիր աշխատավորներին մասնագիտական արտահագուստով, կոշկեղենով և անձնական օգտագործման այլ պարագաներով ապահովելու համար: Շատ ձեռնարկություններում գործարկվել են նոր հանդերձարաններ, ցնցուղներ, լվացարաններ, կանանց հիգիենայի սենյակներ և այլն: Կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցերով լավ են զբաղվում «Հայէլեկտրամեքենա», «Լույս» արտադրական, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումների, հանրապետության շատ ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպություններ: Արհմիության կազմակերպության նախաձեռնությամբ և ադմինիստրացիայի աջակցությամբ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխամասային՝ Երևանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական ձեռնարկության տարածքում ստեղծվել է, այսպես կոչված, կենցաղի փողոց: Այստեղ գործում են արդյունաբերական, պարենային, բանջարեղենի, տնտեսական ապրանքների, գրքերի խանութներ, պոլիկլինիկա, դեղատուն, խնայդրամարկղ, փոստային, ինքնաթիռի տոմսերի վաճառքի կետ, օպտիկայի, տղամարդկանց և կանանց կոշիկի սրահներ, երեք անվճար վարսավիրանոց, լավաշի փուռ, ճաշարաններ և այլ օբյեկտներ: Ինչպես այստեղ, այնպես էլ Երևանի էլեկտրալամպերի, Կիրովականի ավտոգենային մեքենաշինության և այլ գործարաններում բանվոր-ծառայողները կարող են գնել ամենաանհրաժեշտ ապրանքները և ժամանակ չկորցնել դրանք քաղաքի խանութներից ձեռք բերելու համար: «Լույս» արտադրամիավորման Կիրովականի օբյեկտներում իրենց հանգիստն են անցկացնում ոչ միայն բանվոր-ծառայողները, այլև նրանց դպրոցական և նախադպրոցական երեխաները:

Հանրապետությունում հետևողական աշխատանք է կատարվում աշխատանքի առողջ և անվտանգ պայմաններ ստեղծելու նպատակով: Սակայն արվածը դեռևս չի համապատասխանում կուսակցության առաջադրած նոր պահանջներին: Բանն այն է, որ հազարավոր բանվորներ մինչև օրս էլ զբաղված են ֆիզիկական ծանր աշխատանքներում, շատ տեղերում դանդաղ են բարելավվում կենցաղային պայմանները. պակասում են հանդերձարանները, ցնցուղները, լվացարանները և սանիտարահիգիենիկ այլ ծառայություններ, որոնց համար մեզ տեղին քննադատեց ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ծալանը Երևանում ՀԱՄԽ-ի ակտիվի հետ ունեցած հանդիպման ժամանակ: Ձեռնարկություններում դանդաղ է զարգանում քիմիական մաքրման և արտահագուստի լվացման կետերի ցանցը, շինարարական շատ կազմակերպություններ չունեն իրենց ճաշարանները: Կապի մինիստրության 60, ավտո-

տրանսպորտի մինիստրության 11 ձեռնարկություններ զուրկ են սանիտարակենցաղային պայմաններից: Դեռևս քիչ են կանանց հիգիենայի սենյակներով ապահովվածությունը ագրոարդի, առողջապահության, թեթև արդյունաբերության և այլ մինիստրությունների կազմակերպություններում և ձեռնարկություններում: Նրանց որոշ ղեկավարներ, արհկոմների թույլ հսկողության հետևանքով, տարիներ շարունակ չեն օգտագործում աշխատանքի պաշտպանության և դրա պայմանների բարելավման համար հատկացված միջոցները: Կոլեկտիվ պայմանագրերով և աշխատանքի պաշտպանության համաձայնագրերով նախատեսված միջոցառումների մի մասը չի իրականացվում:

Ինչպես տեսնում ենք, աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման գործում անելիքները շատ են: Եվ, բնականաբար, առողջ և անվտանգ աշխատանքի լավ պայմաններ ստեղծելու համար լայն հեռանկարներ են բացվել ընթացիկ հնգամյակում: Արհմիությունները հանրապետության տարածքում գտնվող բոլոր մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների հետ մշակել են աշխատանքի պայմանների ու պաշտպանության սանիտարաառողջապահական, հանգստի ու կենցաղի պայմանների բարելավման միջոցառումներ: Դրանցում առանձնակի տեղ են տրվել ձեռքի աշխատանքի մեքենայացմանը, անվտանգ արտադրության, ակտիվ հանգստի, առողջ կենցաղի կազմակերպմանը:

Աշխատանքի պաշտպանության կանոնների վերաբերյալ ձեռնարկությունների ինժեներատեխնիկական և մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքի պաշտպանության ծառայության աշխատողների գիտելիքների մակարդակը բարձրացնելու նպատակով հանրապետությունում ստեղծվել է աշխատանքի պաշտպանության երկու հասարակական համալսարան: Մեկը գործում է տեխնիկայի տան, մյուսը՝ արհմիութենական դասընթացների բազայի վրա: ՀԱՄԽ-ում կազմակերպվել է արտադրական ու կենցաղային օբյեկտների շինարարության և վերակառուցման նախագծերի ընտրովի փորձաքննական խորհուրդ: Այն պետք է զբաղվի նախագծերի որակի բարձրացման և դրանցում աշխատանքի պաշտպանության կանոնների ու նորմաների լիակատար պահպանման հարցերով:

Աշխատավորների սանիտարակենցաղային սպասարկման հետագա բարելավման նպատակով ընթացիկ տարվա մարտ ամսին ՀԱՄԽ-ի նախագահությունում գործարար կերպով քննարկվեց արտադրությունում աշխատողների սանիտարակենցաղային սպասարկման հարցը: Նախագահությունը հանձնարարեց մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարներին՝ կոնկրետ միջոցներ ձեռնարկել աշխատավորական կոլեկտիվներում օրինակելի արտադրական կենցաղի պայմաններ ստեղծելու համար: Ընթացիկ տարվա մայիսին Լենինականի արդյունաբերական ձեռնարկություններում հանգամանորեն ուսումնասիրվել են կանանց և անչափահասների աշխատանքի պայմանները և արդյունքները քննարկման են դրվել ՀԿԿ Լենինականի քաղկոմի բյուրոյում: Տարեվերջին ուսումնասիրվելու է արտադրական կենցաղը օրինակելի վիճակի հասցնելու հարցը Երևան քաղաքի ձեռնարկություններում և կազմակերպություններում:

Արտադրության բարձր կուլտուրայի և օրինակելի արտադրական կենցաղի արմատավորումը արհմիութենական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից է: ՀԱՄԽ-ը դրանց լուծման վրա է սևեռել հանրապետական և տեղական կոմիտեների ուշադրությունը: Առավել լավ արդյունքի հասնելու նպատակով որոշվել է անցկացնել արտադրության բարձր կուլտուրայի և օրինակելի արտադրական կենցաղի մրցույթ, հաստատվել են մրցույթի պայմանները: Դրա հիման վրա մշակվել է նաև աշխատանքային կոլեկտիվում օրինակելի արտադրական կենցաղի ծրագիր: Ըստ այդ ծրագրի՝ պլանավորված է կազմակերպել տնտհաշվարկային շարժական արդյունաբերական լաբորատորիա՝ աղմուկը, վիբրացիան, լուսավորվածությունը, փոշոտվածությունը և գազոտվածությունը չափելու համար: Կնորոգվեն ու կբարեկարգվեն բոլոր կենցաղային շենքերը, ճաշարանները, կարմիր անկյունները, հանգստի սենյակները: Նախատեսվում է խոշոր ձեռնարկություններում սարքավորել հոգեբանական լիցքաթափման սենյակներ, բացել մասնագիտական արտահագուստի վաճառասրահ-խանութ: Հայաստանի արհմիությունների համագումարի օրերին կը-



կազմակերպվի աշխատանքի պաշտպանության ցուցահանդես, իսկ ՍՍՀՄ արհմիությունների համագումարի նախօրեին կավարտվեն սանիտարակենցաղային շենքերի շինարարությունն ու վերակառուցումը:

Աշխատավորների բնակարանային ապահովվածությունը սոցիալական առաջնահերթ խնդիր է: ՍՄԿԿ XXVII համագումարին Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման, կուսակցության ծրագրի նոր խմբագրության մեջ և ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում առանձնակի նշվում է դրա հույժ կարևորությունը: Մեր հանրապետությունում ամեն տարի հազարավոր ընտանիքներ բարելավում են իրենց բնակարանային պայմանները: Սակայն, ցավոք, այդ գործում դեռևս կան աղաղակող թերություններ: Ինչպես վերն ասվեց, չեն կատարվում բնակարանային շինարարության պլանները, շատ բնակելի շենքեր շահագործման են հանձնվում խիստ թերություններով: Այդ հարցը անհանգստացնում է նաև արհմիութենական կազմակերպություններին և մարմիններին: Վերջերս ՀԱՄԽ-ի և «Տրուդ» թերթի նախաձեռնությամբ դրան նվիրված «Բաց նամակի» օր անցկացվեց «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխամասային ձեռնարկությունում: Շինարարական կազմակերպությունների ղեկավարները հաշիվ տվեցին բանվորական կոլեկտիվին՝ բնակելի շենքերի ցածրորակ կառուցման կապակցությամբ և խոստացան արմատապես կարգավորել այդ գործը, բացառել նոր բնակարաններ ստացող քաղաքացիների դժգոհությունը: Արհմիութենական կազմակերպությունների պարտքն է ոչ միայն զբաղվել կոլեկտիվների անդամների բնակարանային պայմանների բարելավման, հերթագրման ու բնակարանների բաշխման հարցերով, այլև հետևել, որպեսզի դրանք լինեն որակով և քաղաքացիները ստիպված չլինեն ծախսել ավելորդ ժամանակ ու միջոցներ:

Արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման գործում եղած լուրջ թերություններից մեկը մի շարք ձեռնարկություններում աշխատանքի պայմանների անբավարար վիճակն է: Որքան էլ զարմանալի է, գիտատեխնիկական առաջընթացի արագացման արդի փուլում շատ տեղերում խիստ դանդաղում է սոցիալական զարգացման խնդիրների լուծումը: Տարօրինակ է, որ մինչև օրս հանրապետության 764 ձեռնարկություններում կամ նրանց 40 տոկոսում, ինչպես նաև 146 բանվորական հանրակացարաններից 75-ում չկան հասարակական սննդի օբյեկտներ: Դրանց մի մասում չեն գործում նաև մի շարք կենցաղային ծառայության կետեր: Լուրջ բարելավման կարիք ունի կուլտուր-լուսավորական և սպորտային աշխատանքը:

Արհմիութենական և տնտեսական մարմինները պետք է բնակչության սոցիալական զարգացման խնդիրները մշտապես պահեն իրենց տեսադաշտում, դրանց լուծման համար ավելի լիովին ու ստեղծագործաբար օգտագործեն առաջավոր կոլեկտիվների, արհմիութենական կազմակերպությունների կուտակած ուսանելի փորձը, առկա բոլոր ռեզերվները:

Եվս մեկ կարևոր խնդիր, որի վրա նույնպես հրավիրվում է արհմիութենական կազմակերպությունների ու մարմինների ուշադրությունը: ՍՍՀՄ արհեստակցական միությունների կանոնադրությանը համապատասխան, այս տարի անցկացվելու են նրանց ընտրությունները: Հաշվետու-ընտրական կամպանիայի նախապատրաստման ու անցկացման ընթացքում գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացնել ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների, ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարի որոշումների իրագործման, 1986 թ. տնտեսական և սոցիալական զարգացման պլանների և սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարման վրա:

Հաշվետվություններն ու ընտրությունները պետք է օգտագործել՝ հանրագումարի բերելու աշխատավորական կոլեկտիվների վերաբերյալ ՍՍՀՄ օրենքի, արհմիութենական մարմինների գործունեության ոճի և ձևերի կատարելագործման, ՀԱՄԿԽ-ի ծրագրային միջոցառումների իրականացման և արհմիութենական փաստաթղթերի փոխանակման ասպարեզում կատարած աշխատանքները: Ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների պահանջներից՝ անհրաժեշտ է հաշվետու-ընտրական կամպանիան ծառայեցնել արհմիութենական ներքին օղակների մարտունակության բարձրացմանը, ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը հասարակության ու տնտեսության կառավարմանը: Այդ նպատակով հարկավոր է արհմիութենական մարմիններում առավել մեծ չափով ներկայացնել բանվորներին, կոլտնտեսական-

ների, համապատասխան ճյուղերի մասնագետներին, երիտասարդությանը, առաջ քաշել քաղաքականապես հասուն, ձեռներեց, արտադրությանը քաջածանոթ, կազմակերպչական անհրաժեշտ ունակություններով և բարոյական հատկանիշներով օժտված կադրեր:

Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, էկոնոմիկան հիմնովին ինտենսիվ ռելսերի վրա տեղափոխելու կուսակցության առաջադրած կուրսը պահանջում է է՛լ ավելի կատարելագործել տնտեսավարության մեթոդներն ու ձևերը, ամրապնդել արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքները: Այդ խնդիրների լուծումն անհնարին է առանց մասսաների, աշխատանքային կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության բարձրացման և նախաձեռնության զարգացման: Այդ առնչությամբ մեծանում են մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների դերը, աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքի անվերապահ կիրառման անհրաժեշտությունը: Բանն այն է, որ որոշ արհմիութենական աշխատողներ և տնտեսական ղեկավարներ օրենքի ընդունումով գործն ավարտված են համարում: Որքան զարմանալի է, մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների 1986 թ. պլանային ցուցանիշների նախագծերը պետպլան են ներկայացվել առանց աշխատավորական կոլեկտիվների քննարկման: Արհմիութենական մարմինների խնդիրն է պարբերաբար լսել տնտեսական ղեկավարների հաշվետվությունները աշխատավորական կոլեկտիվների՝ օրենքով սահմանված իրավունքների կիրառման, աշխատանքային օրենսդրության կատարման ընթացքի մասին, հաշիվ պահանջել օրենքից շեղումներ կատարող պաշտոնատար անձանցից, մշտապես հոգալ, որպեսզի աշխատավորները ակտիվորեն մասնակցեն արտադրության կառավարմանը, պատասխանատվություն զգան էկոնոմիկայի զարգացման որակական ցուցանիշների բարելավման համար:

Մեր երկիրը, սովետական ժողովուրդը նախապատրաստվում է արժանի գործերով նշել մեծ Հոկտեմբերի 70-ամյակը, որը լրանում է եկող տարի: Այդ առնչությամբ լուրջ խնդիրներ են ծառանում նաև արհմիութենական կազմակերպությունների և մարմինների առջև: Նրանց պարտքն է՝ զարգ տալ այդ հոբելյանական տարելիցին նվիրված սոցիալիստական մրցությանը, այն ուղղել արտադրական կոլեկտիվների աշխատանքային և քաղաքական ակտիվության ըստ ամենայնի բարձրացմանը, երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման արագացմանը:

---

# ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾ

**Հ. ՇԱՀԻՆՅԱՆ**
*Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստր*

**ՍՄԿԿ** XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ զարգացրեց և է՛լ ավելի կոնկրետացրեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի նախանշած՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրները: Համագումարն ամենայն շիտակությամբ բացահայտեց էկոնոմիկայում և սոցիալ-հոգևոր բնագավառներում տեղ գտած բացթողումները, թերությունները ու անտեղի միտումները, ցույց տվեց դրանց վերացման, գիտատեխնիկական առաջընթացի հետագա արագացման, աշխատանքի ինտենսիվացման ուղիները, մշակեց մարդկային գործունեության բոլոր ասպարեզներում երկիրը ինտենսիվ զարգացման ուղի փոխադրելու մարտական ծրագիր, սահմանեց սոցիալական արդարության սկզբունքի հաստատման հասարակական հարաբերությունների կատարելագործման համար հետևողական պայքարի, իներցիայի, պահպանողականության, ոչ նախաձեռնողականության վճռական հաղթահարման ամբողջական կոնցեպցիա, անողոք պատերազմ հայտարարեց ցուցամոլությանն ու հանդիսամոլությանը, հաջողություններով տարվելուն և աշխատանքի գնահատման նկատմամբ ոչ քննադատական մոտեցմանը:

Համագումարը սկզբունքային կարևորություն տվեց կյանքի և բարոյականության սոցիալիստական նորմերից ցանկացած շեղման դեմ վճռական և ոչ կոմպրոմիսային պայքարին, գողոնների, կաշառակերների, սպեկուլյանտների, բոլոր նրանց բացահայտմանն ու խստորեն պատժելուն, ովքեր իրենց հանցավոր գործողություններով սոցիալ-քաղաքական և բարոյական վնաս են հասցնում մեր հասարակությանը: Կուսակցության XXVII համագումարին ներկայացված Քաղաքական զեկուցման մեջ նշվում է. «Աշխատավորները արդարացիորեն դնում են այդպիսի երևույթներն արմատախիլ անելու հարցը: Կենտրոնական կոմիտեն լիովին պաշտպանում է այդ պահանջները: Անհրաժեշտ է համարված արդեն ամենամոտ ժամանակներում իրականացնել լրացուցիչ միջոցառումներ՝ ուղղված պորտաբույծների, սոցիալիստական սեփականության հափշտակիչների, կաշառակերների դեմ, նրանց դեմ, ովքեր բռնել են մեր կարգերի աշխատավորական բնույթին խորթ ուղի»:

Եվ այդ ժամանակը հասավ: Անաշխատ եկամուտների դեմ պայքարի ուժեղացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով նախատեսվում են պայքարի ուժեղացման միջոցառումներ սոցիալիստական ապրելակերպին անհարիր այն այլանդակ երևույթների դեմ, որոնք վնաս են հասցնում մեր պետության տնտեսական հիմքերին և սոցիալիզմի հիմնական սկզբունքին՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակության, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի»:

Մշակելով հանրային սեփականության պահպանության միջոցառումների համակարգ՝ սովետական պետությունը հենց սկզբից մի հատուկ խմբում առանձնացրեց սոցիալիստական սեփականության նկատմամբ հանցավոր ոտնձգությունները, դրանք համարելով առավել ծանրագույն: Դա կապված է այն բանի հետ, որ, առաջին, պետությունը և հասարակությունը դրանցից կրում են նյութական կորուստներ, երկրորդ՝ պետական և հասարակական ունեցվածքի հափշտակիչները, լինելով մասնավոր սեփականատիրական մնացուկների կրողներ, քայքայում են բարոյապես անկայուն մարդկանց: Նման երևույթների նկատմամբ անհանդուրժողականությունը մեծ է նաև այն պատճառով, որ հանցագործությունները երբեմն կատարում են պաշտոնական

անձինք, որոնք կոչված են պահպանելու և բազմապատկելու նյութական արժեքները։ Ներքին գործերի մարմինները ընթացիկ տարում բացահայտել են վառելիքաքսանյութեր հափշտակող հանցավոր խումբ, որը գործում էր «Հայգլխջրշին»-ի № 13 շարժական մեքենայացված շարասյունում։ 1985 թ. մայիսին այստեղ ստացվում է 54 տոննա պարունակությամբ և 19 հազար ռուբլու արժողությամբ ինդուստրիալ յուղի ցիստերն, որն ուղարկված էր Մասիսի նավթաբազայի հասցեով։ Սակայն փաստաթղթերի կեղծման միջոցով ցիստերնը բեռնաթափվել է № 13 ՇՄՇ-ում։ Դրանից հետո պահեստապետ Ժ. Թիզյանը, հանցավոր համաձայնության գալով գլխավոր ինժեներ Գ. Պետրոսյանի հետ, նույն շարասյան պետ Վ. Մանուկյանի գիտությամբ, գողացված յուղը իրացրել է կողմնակի ճանապարհով։ Նշված անձինք ենթարկվել են քրեական պատասխանատվության։

Ժողովրդական բարիքի յուրացման փորձը հաճախ ձեռնարկվում է անտնտեսվարության պայմաններում, հափշտակումների ուղիների ու սողանցքների վճռական փակման միջոցներ ձեռք չառնելու պատճառով։ Շատ շարաշահումներ հետևանք են արտադրության տեխնոլոգիայից, հումքի և նյութերի ծախսման նորմաներից կատարվող շեղումների, հնացած նորմաների կիրառման, նյութական արժեքների պահպանության թերությունների և հաշվառման բարձիթողի վիճակի։ Հաճախ խախտվում են ստուգումների և գույքագրման ժամկետներն ու կարգը, ցածր մակարդակով է իրականացվում գերատեսչական հսկողությունը։ Ի դեպ, շատ դեպքերում դեռևս անբավարար է անտնտեսվարության և հափշտակումների կանխման համար տարվող աշխատանքը։ Կուսակցության նոր պահանջների լույսի ներքո այսօր է՛լ ավելի է աճում իրավապահպան և առաջին հերթին ներքին գործերի մարմինների դերը հանցագործությունների և իրավախախտումների դեմ մղվող պայքարում, բարձրանում է նրանց պատասխանատվությունը սոցիալիստական սեփականության պահպանությունն ապահովելու գործում։

ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրների հաջող լուծման վճռական պայմանը ինչպես ամենուրեք, այնպես էլ ներքին գործերի համակարգում մարդկանց, կադրերի արդյունավետ աշխատանքն է, յուրաքանչյուր ղեկավարի անձնական բարձր պատասխանատվությունը անձնակազմի բարոյաքաղաքական վիճակի և ենթակաների դաստիարակության համար։ Կոլեկտիվի անդամների շրջանում ծավալված հետևողական կուսակցական-քաղաքական աշխատանքի, կարգապահության ամրապնդման, շեֆական դաստիարակության զարգացման, կադրերի ընտրության կատարելագործման ու որակական կազմի բարելավման շնորհիվ բարձրացել է նրանց պրոֆեսիոնալ մակարդակը և ամրապնդվել է կուսակցական միջուկը։ Վերջին ժամանակներս մենք անփույթ աշխատողներից վճռականորեն ազատվելու կուրս ենք վերցրել։ Քաղաքականապես ոչ հասուն, պրոֆեսիոնալ պատրաստությունից զուրկ, անպատասխանատու և չնախաձեռնող աշխատողները չպետք է տեղ գտնեն ներքին գործերի մարմիններում, քանի որ հենց նրանք են թուլացնում պայքարի լարվածությունը բացասական երևույթների դեմ, հենց նրանց գործողություններն են անուղղելի վնաս հասցնում միլիցիայի հեղինակությանը։

Այդ ամենը, ինչպես նաև հանցագործությունների դեմ պայքարի ուժեղացման և սոցիալիստական օրինականության ամրապնդման նպատակով կուսակցական, սովետական, իրավապահպան այլ մարմինների հետ համատեղ իրականացվող միջոցառումները ընթացիկ տարում դրական ազդեցություն ունեցան ներքին գործերի մարմինների գործունեության արդյունքների վրա և հանգեցրին հանրապետությունում օպերատիվ իրավիճակի կայունացմանը։ Այդ իրողության վկայություններից է քրեական հետախուզությամբ գրանցված հանցագործությունների բացահայտման բարելավումը։ Այդ ցուցանիշը համարվում է երկրում ամենալավագույններից մեկը։ Ծանր հանցագործությունների քանակը պակասել է 4,3 տոկոսով, այդ թվում նկատելիորեն նվազել են կանխամտածված հանցագործությունների, անձնական ունեցվածքի գողությունների, մարմնական ծանր վնասվածքների դեպքերը և այլն։ Հատուկ ուշադրություն է նվիրվում հասարակական վայրերում հանցագործությունների կանխմանը, որի շնորհիվ դրանք պակասել են 13,8 տոկոսով։ Առավել հարձակողական ձևով է իրականացվում պայքարը տնտեսական և այլ պաշտոնեական հանցագործությունների դեմ։ ԲԽՍՍ-ի ապարատը 8,6 տոկոսով ավելի է բացահայտել սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգության դեպքեր. դրանց ավելի



քան մեկ երրորդը պետական և հասարակական ունեցվածքի հափշտակություններ են, որոնց քանակն ավելացել է 4,2 տոկոսով, 9 տոկոսով աճել են սպեկուլյացիայի բացահայտման փաստերը։

Սակայն այսօրվա պահանջն է՝ չսահմանափակվել աշխատանքի որոշ բարելավմամբ, այլ պայքարի արմատական միջոցներ ձեռնարկել այն ամենի դեմ, ինչը խորթ է մեր հասարակության բնույթին և խանգարում է մեր առաջընթացին։ Ցավոք, առանձին անձանց և հափշտակիչների քողարկված խմբերի դեռևս հաջողվում է երկար ժամանակ անպատիժ կերպով հափշտակել նյութական ռեսուրսներ և խոշոր չափերի դրամական միջոցներ, շորթել կաշառքներ, զբաղվել սպեկուլյացիայով։

ՍՄԿԿ XXVII համագումարի արդյունքները և նրա որոշումները կատարելու ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները գործարար մթնոլորտում քննարկվեցին ՀԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա ապրիլյան պլենումում։ Այստեղ խորությամբ վերլուծվեց հանրապետության տնտեսական և կուլտուրական կյանքի, ինչպես նաև իրավապահպանական գործունեության բոլոր ոլորտների իրավիճակը, բացահայտվեցին մեր աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների պատճառները, որոնք անհապաղ վերացում են պահանջում։ Պլենումին տված զեկուցման մեջ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Ոչ մի ներում չպետք է լինի նրանց, ովքեր ձեռնարկությունից թռցնում են ինչ որ ձեռքներն ընկնի, ամեն կարգի կաշառակերների ու գռփողների, պաշտոնական դիրքը չարաշահողների, սպեկուլյանտների, ժողովրդական բարիքը հափշտակողների, ամեն կարգի բացասական հատկանիշներ կրողների համար։ Նրանց նկատմամբ պետք է կիրառել հասարակական դատապարտման ամբողջ ուժը, օրենքի ամբողջ ուժը»։ Այս պահանջը մեզ համար դարձել է գործողության ուղեցույց։

Ներքին գործերի մարմինների առջև ծառացած բազմաբնույթ խնդիրների մեջ այսօր հատկապես սուր է դրված հափշտակումների դեմ անհաշտ պայքարի կազմակերպման հարցը ագրոարդյունաբերական համալիրում։ Մենք լուրջ միջոցառումներ ենք իրականացնում՝ այդ բնագավառում ժողովրդական բարիքի նկատմամբ ոտնձգություններ կատարողների դեմ պայքարն ուժեղացնելու համար։ Բավական է նշել, որ անցած տարի, 1984 թ. համեմատությամբ, հանցագործությունների բացահայտման քանակն ավելացել է 17,9 տոկոսով։

Առաջնահերթ խնդիր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքի անկորուստ ամբարումը։ Դա կուսակցության այսօրվա պահանջն է։ Այդ առնչությամբ կիրառվող պրոֆիլակտիկայի համակարգում կարևոր տեղ են գրավում կուսակցական և սովետական մարմինների մասնակցությամբ ցանքի և բերքահավաքի ընթացքում բերքի պահպանության ապահովման նպատակով իրականացվող կոմպլեքսային միջոցառումները։ Դրանց կազմակերպված անցկացումը հափշտակումները, հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների փչացումները, վառելիքաքսանյութերի վատնումները կանխելու և վերացնելու գործնական միջոց է։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացման պայմաններում կարևոր նշանակություն է ստանում հումքի, վառելիքի և մյուս միջոցների խնայողաբար ծախսումը։ Պետական կարևորության այդ մեծ խնդրի լուծմանը պետք է նպաստի ներքին գործերի մարմինների և հասարակայնության արդյունավետ գործունեությունը։ Վառելիքաքսանյութերի հափշտակությունների դեմ պրոֆիլակտիկայի ակտիվացումը, այդ աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների ներդրումը պայմանավորեցին պայքարի արդյունավետության բարձրացումը։ Անցած տարի վառելիքաքսանյութերի հափշտակումների բացահայտման թիվը հանրապետությունում աճեց 11,9 տոկոսով։

Այդ ամենով հանդերձ, կիրառվող միջոցները դեռևս չեն ապահովում նավթամթերքների անհրաժեշտ պահպանությունը։ Ավտոտրանսպորտային ձեռնարկություններում փոխադրված բեռների և վազքի կիլոմետրերի հավելագրման պատճառով դեռևս զգալի են բենզինի կորուստները։ Այստեղ ստեղծում են վառելիքի ավելցուկ, որը հետագայում չհիմնավորված դուրս է գրվում։ Չծախսված բենզինը, նավթամթերքների միասնական կտրոնները ավտոձեռնարկությունների վարորդները, նյութական պատասխանատու և պաշտոնատար անձինք վերավաճառում են ավտոլիցքավորման կայանների աշխատողներին, տաքսիների վարորդներին և անհատական ավտոտերերին։

Վառելիքաքսանյութերի անհրաժեշտ պահպանությունը չի ապահովվում նաև նավթահրացման կազմակերպություններում: Ավտոլիցքավորման կայաններում դեռևս նկատվում են արհեստականորեն նավթամթերքների ավելցուկ ստեղծելու փաստեր: Նրանք գոյանում են տարբեր տեսակի բենզինները խառնելու, ավտոտրանսպորտը լիցքավորելիս վառելիքը թերալցնելու և այլ հանցանքների հետևանքով: Մտահոգություն է պատճառում վառելիքաքսանյութերի պահպանությունը հանրապետության նավթամթերքների պետական կոմիտեի համակարգի նավթի, հատկապես Մասիսի Գագարինի, Էջմիածնի և այլ բազաներում, որոնք քրեական տեսակետից գերատեսչության առավել վտանգավոր օբյեկտներն են: Միայն Մասիսի նավթաբազայում 1985 թ. բացահայտվել է հափշտակության չորս դեպք, դատապարտվել նյութական պատասխանատու երեք անձ:

Լայն հրապարակայնություն է տրվել հափշտակությունների, սպեկուլյացիայի և կաշառակերության դեմ մղվող պայքարին: Դրանց մերկացումը աճել է ոչ միայն քանակապես, այլև որակապես: Վերահսկիչ-վերստուգող ապարատների հետ համատեղ իրականացվող միջոցառումների շնորհիվ բացահայտված է հատկապես խոշոր չափերի հասնող հափշտակություն, որը կատարել են Հայկական ՍՍՀ պետագրոարդի կապիտալ շինարարության և վերակառուցման գլխավոր վարչության № 49 ՇՄՇ-ում գործող մի խումբ անձինք՝ պետ Գ. Մկրտչյանի գլխավորությամբ: Հավելագրման և շինմոնտաժային աշխատանքի ծավալի մեծացման միջոցով նրանք յուրացրել են ավելի քան 100 հազար ռուբլի: Խոշոր չափերի հասնող սպեկուլյացիայի մեջ մերկացվել է Մասիսի շրջանի բնակիչ Ռ. Վարդանյանը, որը ոչ մի տեղ չի աշխատում: Նա շամխորցի մի բնակչից գնել է 4.425 մեխակ՝ հատը մեկ ռուբլով և մտադիր էր վաճառել Երևանում՝ հատը 2 ռ. 50 կոպեկ արժեքով: Ենթադրվող օգուտը կազմելու էր 6.600 ռուբլի: Ընթացիկ տարվա փետրվարին ներքին գործերի մարմինները կաշառակերության մեջ մերկացրել են ժողովրդական դեպուտատների Սովետական շրջսովետի գործկոմի բնակարանային տնտեսության վարչության գլխավոր հաշվապահ Գ. Կիրակոսյանին և այդ վարչության պլանբաժնի պետ Լ. Հարությունյանին, որոնք, օգտվելով ղեկավարության հսկողության բացակայությունից, 1982—1986 թթ. ընացքում յոթ քաղաքացիներից 68 հազար ռուբլի կաշառք են շորթել՝ նրանց ազգանունը կոոպերատիվ տների փայատերերի ցուցակում մտցնելու համար: Ցավոք, թվարկած օրինակները եզակի չեն:

Վ. Ի. Լենինը քանիցս մատնանշել է կաշառակերության վիթխարի հասարակական վտանգը: Եթե կա այնպիսի երևույթ, ինչպիսին կաշառքն է, ասել է առաջնորդը, եթե դա հնարավոր է, ապա քաղաքականության մասին խոսք չի կարող լինել: Իսկ քաղաքականությունը անպայման հարկավոր է: Կուսակցական և պետական կարգապահության, զգոնության ուժեղացման, պահանջկոտության, կոլեկտիվի պատասխանատվության քաղաքականություն, այնպիսի բարոյական մթնոլորտի քաղաքականություն, որը նպաստի օրինականության ու իրավակարգի պահպանմանը: Եվ հանրապետության կուսակցական, սովետական ու վարչական մարմինները վերջին ժամանակներս կաշառակերության և դրամաշորթության դեմ պայքարի մեծ ու բեղմնավոր աշխատանք են ծավալել: Այդ խայտառակ և հասարակականորեն վտանգավոր երևույթներին իսկական բացահայտ ճակատամարտ է տրվում:

Անցել են այն ժամանակները, երբ կաշառքի մասին խոսում էին կիսաբերան կամ ընդհանրապես ոչինչ չէին խոսում, իսկ կաշառակերությունը կրում էր տարածված բնույթ առևտրում, կոմունալ, բուժական և ուրիշ հիմնարկություններում: Նույնիսկ ուսումնական հաստատություններում: Անցած տարվա օգոստոսին կաշառակերության մեջ մերկացվել են Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի հաշվապահական հաշվառման և վերլուծության ամբիոնի վարիչ Ռ. Զոբանյանը, նրա եղբայրը, այդ ամբիոնի ասիստենտ Ֆ. Զոբանյանը, Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստրության ավագ մեթոդիստ Պ. Պետանյանը և Երևանի № 182 միջնակարգ դպրոցի մաթեմատիկայի ուսուցիչ Գ. Հարությունյանը: Հանցագործները ենթարկվեցին քրեական պատասխանատվության և ստացան արժանի պատիժ: Այդպիսի փաստերը տեղ էին գտել մեր կյանքում: Դրանց մասին գիտեին, և դրանք առաջացրել էին օրինական զայրույթ և տագնապ: Տագնապ նրա համար, որ կաշառքը խախտում է հավատը արդարության, օրենքի ուժի նկատմամբ, ըստ էության դա ոտնձգություն է սովետական քաղաքացիների սահմանադրական իրավունքների նկատմամբ:



Ի կատարումն ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հուլիսի 2-ի որոշման՝ մշակվել և իրականացվում են միջոցառումներ խմբակային, քողարկված հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու, հափշտակությունների և այլ չարաշահումների, ժողովրդական բարիքը վատնելու ուղիները փակելու համար: Անցկացվում են խոշոր հափշտակիչների, գործամոլների, անաշխատ եկամուտներով ապրող անձանց բացահայտման նպատակային օպերատիվ միջոցառումներ: Հանրապետության առևտրի մինիստրության համակարգում ընթացիկ տարում բացահայտվել են օրինախախտումների մի շարք դեպքեր, որոնցից ութը՝ խոշոր և հատկապես խոշոր չափերի, կաշառակերության երեք դեպք՝ կատարված մի խումբ անձանց կողմից: Այդ նույն բնագավառում մեկ շաբաթվա ընթացքում Երևան քաղաքի 30 ստուգված օբյեկտներից 15-ում բացահայտվել են 53 հազար ռուբլու բարձր պահանջարկի ապրանքների վաճառքը թաքցնելու, գնորդներին խաբելու բազմաթիվ փաստեր:

Պայքարի ակտիվություն չի նկատվում որսորդության և ձկնորսության կանոնների խախտումների դեմ: Չնայած ձեռնարկված միջոցներին, Սևանա լճի ավազանում ստեղծված իրավիճակը լուրջ մտահոգություն է առաջացնում: Դրա պատճառը որսագողության չդադարող դեպքերն են Սևանի, Կամոյի անվան, Վարդենիսի և Մարտունու շրջանների տարածքներում: Միայն ընթացիկ տարվա մայիսին Սևանա լճի մոտ բռնվել են տասը որսագողեր: Նրանցից բռնագրավվել են 1.200 կգ սիգ ձուկ, երեք լողամիջոց, որոնք իբրև թե դուրս են գրվել և ոչնչացվել դեռևս 1985 թ. հունիսին: Ստեղծված վիճակի պատճառներից մեկը, անշուշտ, իրավապահպան մարմինների անգործունությունն է:

Հարբեցողության դեմ պայքարի ուժեղացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացումը մեծապես նպաստեց ալկոհոլի չարաշահման, գինեհումքի հափշտակումների ու սպեկուլյացիայի, գինեօղիային ապրանքների կեղծման, հարբած վիճակում տրանսպորտային միջոցները վարելու դեպքերի կանխարգելմանը:

Շատ են պետական և հասարակական ունեցվածքի գողության դեպքերը. դեռևս 1979 թ. հանրապետության Մինիստրների խորհուրդը հատուկ որոշմամբ պարտավորեցրել է մինիստրություններին ու գերատեսչություններին, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմներին՝ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել ժողովրդատնտեսական օբյեկտներում դրամական միջոցների պահպանությունն ապահովելու համար և անպայմանորեն կատարել պետական, կոոպերատիվ ու հասարակական ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների հետ դրամարկղային գործառնություններ անցկացնելու վերաբերյալ հրահանգի պահանջները: Սակայն, ինչպես ցույց տվեցին առևտրի, բնակչության կենցաղային սպասարկման, լուսավորության, կուլտուրայի, նախկին գյուղատնտեսության մինիստրություններին և Հայկոոպին ենթակա օբյեկտներում վերջին տարիներին կատարված ուսումնասիրություններն ու ստուգումները, դեռևս լուրջ թերություններ կան հնարավոր հանցավոր ոտնձգություններից պետական և հասարակական ունեցվածքի պահպանության ապահովման գործում: Միաժամանակ ստուգվել է պետբանկի բաժանմունքներից խոշոր գումարներ ստացող գանձապահների ապահովվածությունը ուղեկցողներով և հատուկ առանձնացված ավտոտրանսպորտով: Այս առումով գործերի վիճակը հատկապես անբավարար է պետաշխնայդրամարկղների վարչության համակարգում: Այսպես, հանցագործները մուտք էին գործել Էջմիածին քաղաքի խնայդրամարկղը, տեխնիկական միջոցների գործադրմամբ բացել պահոցը և գողացել 13 հազար ռուբլի դրամ և արժեթղթեր: Հանցագործությունը բացահայտվեց, մեղավորները կանգնեցին դատարանի առջև: Բայց դա կարող էր չլինել, եթե հիմնարկության ադմինիստրացիան ժամանակին հոգ տաներ օբյեկտի պահպանության կազմակերպման մասին, անհրաժեշտ ձևով արձագանքեր միլիցիայի շրջբաժնի բազմաթիվ ահազանգերին:

Լուրջ մտահոգություն է առաջացնում պետական և հասարակական ունեցվածքի պահպանության վիճակը երկաթուղային տրանսպորտով տեղափոխելիս: Չնայած ձեռնարկված միջոցներին, այստեղ բեռների պահպանությունը դեռևս չի համապատասխանում աճող պահանջներին: Փոխադրվող բեռների հափշտակությունների մեծ մասը (65 տոկոսը) կատարվում է շարժական կազմից: Պատճառը դրանց անբավարար պահպանությունն է: Բեռների, առանձնապես հատուկ ռեժիմային, ավտոտրակտորային տեխնիկայի և այլ բեռների մեծ մասը, որը ենթակա է ուղեկցման, ռազ-

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆԻ ԱԿՏԻՎԱՑՈՒՄԸ՝ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԳԼԽԱՎՈՐ ԱՂԲՅՈՒՐ

**Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
**Ռ. ԱՂԱԲԱԲՈՎ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

**ՍՄԿԿ** XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՓԱՍՏԱԹՂԹԵՐՈՒՄ տրված է մեր երկրի զարգացման ձեռք բերված մակարդակի իրատեսական գնահատականը, առաջադրված են սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտների կատարելագործման վիթխարի խնդիրները: ՍՍՀՄ-ի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու՝ կուսակցության կուրսը, վերջին հաշվով, նպատակաուղղված է ժողովրդի կյանքի որակապես նոր մակարդակի հասնելուն, ներդաշնակորեն զարգացած, հասարակականորեն ակտիվ անհատի ձևավորմանը: Սրանում վառ կերպով դրսևորվում է սոցիալիզմի ռեալ հումանիզմը, սոցիալիզմ, որի դրոշին գրված է՝ «Ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար»:

Սոցիալիզմի օրոք մարդն է բարձրագույն արժեքը, հասարակական արտադրությունը ենթարկված է նրա խելամիտ պահանջմունքների բավարարմանը, ծառայում է «...հասարակության բոլոր անդամների **լիակատար** բարեկեցությունը և ազատ **համակողմանի** զարգացումն ապահովելու համար» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 6, էջ 293):

Մասնավոր սեփականության և շահագործման վրա հիմնված բուրժուական հասարակությունում ծաղկում է եսասիրությունը, անհատապաշտությունը, մարդու օտարացումը: Միայն սոցիալիզմն է հաստատում մարդկանց միջև իրոք մարդասիրական հարաբերություններ, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության մթնոլորտ:

Մարդու մասին մարքս-լենինյան ըմբռնումը ելնում է անհատի ձևավորման գործում սոցիալական միջավայրի վճռորոշ դերի ընդունումից: Արտադրական, սոցիալական, քաղաքական, հոգևոր և այլ հարաբերությունները վճռականորեն ազդում են մարդու էության վրա, որը դրսևորվում է նրա գործունեությունում: «...Մարդու էությունը,— շեշտում էր Կ. Մարքսը,— առանձին անհատին հատուկ վերացություն չէ: Իր իրականությամբ այդ էությունը հասարակական հարաբերությունների ամբողջությունն է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր**, հ. II, «Հայպետհրատ», 1950, էջ 519):

Կապիտալիզմի վերացման և սոցիալիստական հասարակական հարաբերությունների հաստատման հետևանքով այդ հարաբերություններն ավելի ու ավելի են պայմանավորում սոցիալիստական տիպի անհատի էությունը: Նրան հատուկ են խոր հավատը կոմունիզմի իդեալների նկատմամբ, կոլեկտիվիզմը, քաղաքացիականությունը, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը: Աշխատանքի մարդը դարձել է իր երկրի և սեփական բախտի տերը:

Համաձայն պատմության մատերիալիստական ըմբռնման, մարդը, լինելով հասարակական հարաբերությունների օբյեկտ, դրա հետ մեկտեղ ակտիվ հեղափոխական-վերափոխող դեր է խաղում, հանդես է գալիս որպես նոր հասարակական հարաբերությունների սուբյեկտ, արարող: «Հանգամանքները նույն չափով են ստեղծում մարդկանց,— նշել է Կ. Մարքսը,— ինչ չափով որ մարդիկ են ստեղծում հանգամանքները» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, с. 37): Ակտիվորեն գործող անհատը ամեն մի սոցիալական փոփոխության նախապայմանն է: Նրա աշխատանքա-



յին հասարակականորեն օգտակար գործունեությունը աղբյուրն է այն նյութական և հոգևոր արժեքների, որոնք ունի և կարող է ունենալ մարդկային հասարակությունը:

Հասարակության զարգացման հիմքում ընկած է նյութական բարիքների արտադրության և վերարտադրության եղանակը, իսկ գլխավոր արտադրուժը մարդն է, որն ստեղծում է անհրաժեշտ արժեքներ, կատարելագործում արտադրամիջոցները, իրականացնում կանխագծված նպատակները: Կապիտալիզմի օրոք աշխատանքը հարկադրական բնույթ է կրում, բանվորներն աշխատում են կապիտալիստների համար: Առաջին անգամ մարդիկ սոցիալիստական հասարակությունում են սկսում աշխատել հասարակության բարօրության, իրենց իսկ համար, որը նրանց մեջ խթանում է ստեղծագործական և նորարարական մոտեցում գործի նկատմամբ: Այդ իսկ պատճառով սոցիալիստական հասարակության առաջընթացի գլխավոր աղբյուրը Վ. Ի. Լենինը համարում էր ժողովրդի կենդանի ստեղծագործությունը:

Այսպիսով, սոցիալիստական հասարակությունում մարդու մասին մարքս-լենինյան ուսմունքի էությունը հանգում է նրա վճռական դերի ընդունմանը հասարակության առաջընթացում, որի նպատակը նույն ինքը մարդն է: Ընդ որում հարկ է շեշտել, որ մարդու դերը օրինաչափորեն մեծանում է հասարակության առջև նոր խնդիրներ ու պրոբլեմներ ծառանալու համեմատ: Միևնույն ժամանակ անհրաժեշտ է ի նկատի ունենալ, որ մարդկանց աշխատանքային ու քաղաքական գործունեությունը միտում է կոնկրետ պատմական սոցիալ-տնտեսական ծրագրերի իրականացմանը:

Մարդու դերի վերաբերյալ մարքս-լենինյան կոնցեպցիան խորապես զարգացվեց կուսակցության XXVII համագումարի նյութերում: Դրանցում սոցիալիզմի կատարելագործման խնդիրները սերտորեն շաղկապվում են մարդկային գործոնի դերի բարձրացման հետ: ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Նախատեսված խնդիրների հաջող լուծումը կուսակցությունը կապում է **մարդկային գործոնի դերի բարձրացման հետ**: Սոցիալիստական հասարակությունը չի կարող արդյունավետորեն գործել, չգտնելով կյանքի բոլոր ոլորտներում մասսաների ստեղծագործական գործունեության զարգացման նոր ուղիներ: Որքան մասշտաբային են պատմական նպատակները, այնքան կարևոր է տնտեսատիրոջ նման միլիոնավոր մարդկանց շահագրգռված, պատասխանատու, գիտակից և ակտիվ մասնակցությունը դրանց իրագործմանը» (**ՍՄԿԿ ծրագիրը**, «Հայաստան» հրատ., 1986, էջ 33):

Հենց աշխատավորների ստեղծագործական ակտիվության շնորհիվ է մեր երկիրը հասել պատմական հաղթանակների: ՍՍՀՄ-ը պատկառազդու հաջողություններ է ձեռք բերել, մասնավորապես, վերջին քառորդ դարում: Այս ժամանակաշրջանում ազգային եկամուտը մեծացել է գրեթե 4 անգամ, արդյունաբերական արտադրությունը՝ 5, գյուղատնտեսականը՝ 1,7 անգամ: Նկատելիորեն բարձրացել է մարդկանց բարեկեցության մակարդակը: Այսպես, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտն աճել է 2,6 անգամ, սպառման հանրային ֆոնդերը՝ ավելի քան 5 անգամ, կառուցվել է 54 միլիոն բնակարան:

Դրա հետ մեկտեղ առկա են նաև զգալի դժվարություններ, որոնք ծագել են ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ պատճառներով: Իրենց զգացնել են տվել անբարենպաստ եղանակները, միջազգային իրադրության վատթարացումը: Բայց գլխավոր պատճառն այն է, շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում, որ տնտեսական իրավիճակի փոփոխման գնահատականը ժամանակին չի տրվել, չի գիտակցվել տնտեսությունը ինտենսիվացման ուղի փոխադրելու սրությունն ու հրատապությունը: Կառավարման համակարգը տասնամյակներ շարունակ մնացել է անփոփոխ: Թերագնահատվել է գիտատեխնիկական առաջընթացի դերը: Թեպետև այս մասին խոսակցություններ քիչ չեն եղել, սակայն չի ապահովվել խոսքի և գործի միասնությունը: Լիովին չեն իրականացվել ծրագրված սոցիալական միջոցառումները, մի հանգամանք, որը չէր կարող բացասաբար չանդրադառնալ մարդկանց սոցիալական ակտիվության վրա:

Մեր երկիրն այժմ ապրում է սոցիալիստական հասարակության որակական վերափոխման փուլ, երբ անհրաժեշտ է կարճ ժամկետում հաղթահարել լճացման երևույթները և երկրի սոցիալ-տնտեսական զարգացումը հաղորդել համապատասխան արագացում: ՍՄԿԿ XXVII համագումարը նշեց, որ արագացումը նախ և առաջ տնտեսական աճի տեմպերի բարձրացում է, որը նշանակում է գիտատեխնիկական

առաջընթացի հիման վրա համակողմանիորեն ինտենսիվացնել արտադրությունը, անցկացնել ակտիվ սոցիալական քաղաքականություն, նորացնել քաղաքական և գաղափարախոսական ինստիտուտների աշխատանքի ձևերն ու մեթոդները, խորացնել սոցիալիստական դեմոկրատիան, վերացնել այն ամենը, ինչ արգելակում է հասարակական առաջընթացը:

Կուսակցության ստրատեգիական կուրսի հաջող իրականացումը պահանջում է առավելագույնս օգտագործել բոլոր եղած ռեզերվները և ամենից առաջ ակտիվացնել մարդկային գործոնը: ՍՄԿԿ XXVII համագումարը ոչ միայն հրատապ համարեց մարդկային գործոնի ակտիվացման հարցը, այլև մատնանշեց առաջադրված նպատակին հասնելու ուղիները: Դա խորապես կշռադատված տնտեսական ստրատեգիայի, ուժեղ սոցիալական քաղաքականության և նպատակաուղղված գաղափարադաստիարակչական աշխատանքի անքակտելի միասնությունն է:

ՍՍՀՄ՝ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում նախատեսված է դարավերջին ազգային եկամուտը մեծացնել գրեթե 2 անգամ, հասարակական աշխատանքի արտադրողականությունը՝ 2,3—2,5, արդյունաբերական արտադրանքի թողարկումը՝ ոչ պակաս, քան երկու անգամ: Առաջիկա տասնհինգ տարիների համար նախատեսված խնդիրների իրականացման գործում մեծ է տասներկուերորդ հնգամյակի դերը, որը կոչված է դառնալու բեկումնային՝ արագացման բոլոր ուղղություններում: Նախատեսվում է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 20—23, իսկ ազգային եկամուտը՝ 19—22 տոկոսով, որի ամբողջ հավելաճը կապահովվի առանց լրացուցիչ աշխատուժ ներգրավելու:

Տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարումը հնարավորություն կընձեռի էապես բարձրացնելու ժողովրդի բարեկեցության մակարդակը: Սակայն կարևոր է ի նկատի ունենալ, որ ժողովրդական տնտեսության ինտենսիվացումը, գիտության և տեխնիկայի արդի նվաճումների հիման վրա նրա տեխնիկական վերազինումը պետք է ուղեկցվեն տնտեսության զարգացման տեմպերի արագացմամբ: Դրա համար պետք է դիմել խոշոր ծախսումներ չպահանջող գործոնների, որոնց մեջ, անշուշտ, առաջին տեղում է մարդկային գործոնը: Իսկ դա նշանակում է, որ մեր օրերում մարդկային գործոնի դերը, նրա ակտիվացման անհրաժեշտությունը ձեռք են բերում բացառիկ կարևոր նշանակություն:

Կուսակցությունը ելնում է այն բանից, որ մարդկային գործոնը լիովին ակտիվացնելն անհնարին է առանց տնտեսության կառավարումը կատարելագործելու: Ընդ որում խոսքը ոչ թե մասնակի միջոցների, այլ արմատական ռեֆորմի մասին է: «Նրա իմաստն այն է,— նշվեց կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ,— որ մեր ամբողջ արտադրությունը գործնականորեն ենթարկենք հասարակական պահանջմունքներին, մարդկանց կարիքների բավարարմանը, կառավարումը նպատակամղենք արդյունավետության և որակի բարձրացմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր օղակում և առաջին հերթին աշխատավորական կոլեկտիվներում աշխատանքի արդյունքներով՝ աշխատողների շահագրգռվածության, նախաձեռնության ու սոցիալիստական ձեռներեցության զարգացմանը»:

Սոցիալիստական հասարակության կատարելագործման պրոցեսում պետք է ներգրավել բնակչության լայն խավերին, յուրաքանչյուր մարդու: Կարևոր է հասնել այնպիսի վիճակի, երբ յուրաքանչյուր կոլեկտիվ և աշխատող իրեն զգա երկրի տերը, իսկ դա անհնարին կլինի, եթե նրան չդնել տիրոջ վիճակում իր գործարանում կամ տնտեսությունում, արտադրամասում կամ ֆերմայում: Այդ ամենը կբարձրացնի մարդկանց շահագրգռվածությունը աշխատանքի վերջնական արդյունքի նկատմամբ, նպաստի նրանց սոցիալական ակտիվության աճին: Ընդսմին, կարևոր է աշխատավորներին սովորեցնել մտածելու պետականորեն, որպեսզի նրանք ավելի շատ հոգ տանեն երկրի հարստությունը բազմապատկելու մասին:

Որպես մեր կյանքի օրինաչափ երևույթ հանդես է գալիս սոցիալիստական մրցությունը՝ աշխատավորների ստեղծագործական ակտիվության ծավալման կարևոր ոլորտը, անհատի ինքնահաստատման և հասարակական ճանաչման միջոցներից մեկը: Կյանքը լիովին հաստատեց Լենինի միտքն այն մասին, որ սոցիալիզմը



լայն ասպարեզ է բացում մասսայական մրցության համար, որում աշխատավորները կարող են դրսևորել իրենց, սեփական ունակություններն ու տաղանդը (տե՛ս **ԵԼԺ**, հ. 35, էջ 228—229):

Սոցիալիստական մրցությունը մեր երկրում իրոք համաժողովրդական բնույթ է կրում: Սոցիալիստական մրցությանը մասնակցող աշխատավորների թիվը, առ 1-ը հունվարի 1985 թ., հանրապետությունում կազմել է 1.178,1 հազար մարդ: Համամիութենական սոցիալիստական մրցությունում ձեռք բերած հաջողությունների համար, 1985 թ. կատարած աշխատանքի արդյունքներին համապատասխան, Հայկական ՍՍՀ-ն պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Հանրապետության աշխատավորները տասներկուերորդ հնգամյակի առաջին տարում սոցիալիստական բարձր պարտավորություններ են ստանձնել: Նախատեսված է արդյունաբերական արտադրանքի թողարկման ծավալի աճը ապահովել 4,6 տոկոսով՝ պլանով նախատեսված 4,1 տոկոսի դիմաց:

«Անդրկովկասկաբել» ա/մ Երևանի կաբելի գործարանի, Չարենցավանի «Կենտրոնաձույլ» մետաղաձուլական գործարանի «Սապֆիր» ա/մ և մի շարք այլ ձեռնարկությունների աշխատավորական կոլեկտիվները, ի պատասխան ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների, լրացուցիչ սոցիալիստական պարտավորություններ են ստանձնել՝ հնգամյակի երկու տարվա առաջադրանքները Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակի օրը կատարելու վերաբերյալ: Այդ հայրենասիրական նախաձեռնությանը հավանություն տվեց և պաշտպանեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմը: Իր որոշմամբ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին, սովետական ու արհմիութենական կազմակերպություններին, մինիստրություններին ու գերատեսչություններին առաջարկեց պաշտպանել և լայնորեն ծավալել սոցիալիստական մրցություն՝ նշանավոր տարեթիվը արժանավայել կերպով դիմավորելու համար:

Սոցիալիստական մրցության մասսայականությունը, հայրենասիրական նախաձեռնությունները լիովին ապացուցում են բուրժուական այն հերյուրանքների սնանկությունը, որ իբր ՍՍՀՄ-ում անհատը «պասսիվ է», որ իբր սոցիալիզմն «անտարբեր է» նրա նկատմամբ: Բայց դա սոցիալիզմը վարկաբեկելու նպատակով մեր գաղափարական հակառակորդների հորինած սուտն է: Մինչդեռ ոչ թե կապիտալիզմի, այլ սոցիալիզմի օրոք է հասարակությունը խիստ շահագրգռված բարձրացնելու մարդու սոցիալական ակտիվությունը, զարգացնելու նրա ստեղծագործական ուժերը:

Կուսակցության սոցիալական քաղաքականությունը մարդու նկատմամբ հոգատարության քաղաքականություն է: **«Հենց այդ ոլորտում են,—** ասված է Քաղաքական զեկուցման մեջ,— **իրացվում աշխատավորների կենսական շահերը շոշափող տնտեսական գործունեության արդյունքները, մարմնավորվում սոցիալիզմի բարձրագույն նպատակները: Հենց այստեղ է առավել լայնորեն ու ակնբախորեն դրսևորվում սոցիալիստական հասարակարգի մարդասիրական բնույթը, նրա որակական տարբերությունը կապիտալիզմից»** (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը..., էջ 72):

Կուսակցությունը խնդիր է դրել որակապես նոր աստիճանի բարձրացնել սովետական ժողովրդի բարեկեցությունը: Ընթացիկ հնգամյակում այդ կարիքների համար նախատեսված միջոցները կրկնապատկվելու են: Սպառման հանրային ֆոնդերը կաճեն մոտավորապես երկու անգամ: Մինչև 2000 թվականը յուրաքանչյուր սովետական ընտանիք կապահովվի առանձին բնակարանով կամ տնով: Տասներկուերորդ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում ավելի քան երկու անգամ կկրճատվի ձեռքի աշխատանքի բաժինը, ցածր որակավորման աշխատանքից կազատվի ավելի քան 20 միլիոն մարդ: Առաջադրված խնդիրների լուծումը հնարավորություն կընձեռի խոշոր քայլ կատարելու աշխատանքը առաջին կենսական պահանջմունք դարձնելու ճանապարհին: Այս պլանների իրականացման համար անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր մարդ լարված ու արդյունավետ աշխատի իր տեղում:

Մարդկային գործոնի ակտիվացման բազմաթիվ միջոցների ու պայմանների թվում հատուկ տեղ է պատկանում սոցիալական արդարության սկզբունքի իրականացմանը, որը սոցիալիզմի օրոք դրսևորվում է արտադրամիջոցների նկատմամբ

վերաբերմունքում, ռեալ ժողովրդապետության և օրենքի առջև բոլոր մարդկանց հավասարության, ազգերի և ազգությունների իրավական ու փաստական հավասարության առկայությամբ, անձի նկատմամբ հարգանքի, նրա համակողմանի զարգացման համար պայմաններ ստեղծելու մեջ: Աշխատավորները հավասար իրավունքներ ունեն աշխատանքի, կրթության, բժշկական սպասարկման, բնակարանի նկատմամբ: Հասարակությունը երաշխավորում է հոգատարությունը զառամյալների, մոր ու մանկան հանդեպ:

Ձգտելով նսեմացնել սոցիալիզմի սոցիալական նվաճումները, նրա առինքնող ուժը՝ բուրժուական գաղափարախոսները ջանում են ապացուցել, թե ցանկացած հասարակությունում սոցիալական արդարությունն ու սոցիալական հավասարությունն սկզբունքորեն անհասանելի իդեալներ են: Դա բացահայտ կեղծիք է, որի նպատակն է կապիտալի աշխարհի արատները տարածել սոցիալիստական ապրելակերպի վրա: Մարդու կողմից մարդու շահագործման վրա հենվող կապիտալիստական հասարակությունը, ինչ խոսք, ի վիճակի չէ ապահովելու սոցիալական արդարություն և հավասարություն:

Սոցիալիզմը միտում է ապագային, ուստի և չի կարող սահմանափակվել ձեռք բերածով: Դեռևս շատ բան է պետք սոցիալական արդարության սկզբունքն առավել լիովին իրականացնելու համար: Այստեղ առաջին պլան է մղվում «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի անխախտ պահպանումը, մի սկզբունք, որն իր մեջ ամփոփում է նոր հասարակարգի սոցիալական արդարության էությունը: Մոտ անցյալում թույլ էին տրվում հավասարարության տարրեր, տեղ էին գտնում թերություններ աշխատանքի նորմավորման և աշխատավարձի չափը որոշելու հարցերում, որն իջեցնում էր աշխատավարձի խթանիչ դերը և բացասաբար էր անդրադառնում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի վրա:

Կոմունիստական կուսակցությունը սկզբունքային նշանակություն է տալիս անաշխատ եկամուտների դեմ մղվող պայքարին: Եկամուտների և բարիքների վերաբաշխման այլանդակ ձևերը, կաշառակերությունը, սպեկուլյացիան, պորտաբուծությունը հանգեցնում են սոցիալական պասսիվության, բարոյական մեծ վնաս են հասցնում հասարակությանը, բոլոր ազնիվ մարդկանց: Անաշխատ եկամուտները տեղ չպետք է ունենան մեր հասարակությունում: Կուսակցությունը անհաշտ պայքար է մղում սոցիալիստական ապրելակերպին անհարիր բացասական երևույթների դեմ:

Հարկ է այսուհետ ևս ամրապնդել նյութական շահագրգռության սկզբունքը, կատարելագործել բաշխման հարաբերությունների համակարգը, որպեսզի այն առավել լիովին համապատասխանի ըստ աշխատանքի քանակի ու որակի վճարման սկզբունքին, խրախուսի ստեղծագործական ակտիվության, աշխատավորների որակավորման բարձրացումը, նպաստի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը:

Մարդկային գործոնն ակտիվացնելու նպատակով խրախուսման նյութական ձևերից բացի անհրաժեշտ է մեծ ուշադրություն դարձնել խրախուսման բարոյական ձևերի դերի բարձրացմանը: Բանվոր մարդու, առաջավոր աշխատավորների ու նորարարների համար բարոյական խթանը երբեմն ավելի կարևոր է նյութականից: Հասարակության կողմից աշխատանքի մարդու վաստակի ճանաչումը թևավորում ու ոգևորում է նոր սխրանքների: Կառավարական պարգևները, պատվոգրերը, պատվո տախտակները և բարոյական խթանման մյուս միջոցները բարձրացնում են բարեխիղճ ու բարձրարդյունավետ աշխատանքի հասարակական վարկը, առաջավորների նկատմամբ ստեղծում են համընդհանուր հարգանքի մթնոլորտ, որը, իր հերթին, ձգտում է առաջացնում հավասարվելու լավագույններին:

Մարդկային գործոնի ակտիվացումն աներևակայելի է առանց ժողովրդի սոցիալիստական հասարակական ինքնակառավարման գործում լայն դեմոկրատիայի զարգացման: Սոցիալիզմը հիրավի հեղաշրջում առաջացրեց դեմոկրատիայի վերաբերյալ մարդկանց պատկերացումներում: Մարդկանց նկատմամբ իշխանության գործիքից այն վերածվում է մարդկանց իշխանության գործիքի, նրա խորքային էությունը ժողովրդի կառավարումն է բուն ժողովրդի միջոցով: Դեմոկրատիայի զարգացումն ստեղծում է այն անհրաժեշտ մթնոլորտը, որի պայմաններում լիովին բացահայտվում են անհատի ստեղծարար հնարավորությունները: Ելնելով դրանից, կուսակցությունը հասարակության զարգացման ստրատեգիական գիծը արդի փուլում տեսնում է սովետական դեմոկրատիայի կատարելագործման, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումն առավել լրիվ իրականացնելու մեջ: Պետք է հասնել այնպիսի վիճակի, որպեսզի աշխատավորները, նրանց կոլեկտիվներն ու կազմակերպությունները ավելի ակտիվ ու գործնականորեն մասնակցեն պետական ու հասարակական կյանքի հարցերի լուծմանը:

Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման առաջատար ուժն ու գլխավոր երաշխիքը կոմունիստական կուսակցությունն է: Լինելով սովետական հասարակության քաղաքական սիստեմի միջուկը, ՍՄԿԿ-ն իրականացնում է ղեկավարությունը բոլոր պետական և հասարակական կազմակերպությունների նկատմամբ, ուղղություն է տալիս սոցիալիստական ինքնակառավարման պրոցեսին:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը նպաստում է մարդկային գործոնի ակտիվացմանը, մարդկանց ստեղծարար աշխատանքում ներգրավելուն. ՍՄԿԿ-ն առաջիկայում ևս միջոցներ կձեռնարկի քաղաքացիների սոցիալ-տնտեսական, քաղաքական ու անձնական իրավունքներն ու ազատությունները ընդլայնելու համար: Սակայն սոցիալիզմի էությունն այն է, որ մարդու իրավունքներն ու ազատությունները չեն կարող գոյություն ունենալ առանց պարտականությունների: Դա սոցիալիստական հասարակության անխախտ սկզբունքն է:

Մարդկային գործոնի ակտիվացմանն է նպատակաուղղված կուսակցության ողջ գաղափարախոսական աշխատանքը, որի նպատակն է ներդաշնակորեն զարգացած, հասարակականորեն ակտիվ անհատի ձևավորումը, որն իր մեջ համատեղում է հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունն ու ֆիզիկական կատարելությունը:

Գիտական աշխարհայացքի ձևավորումը, նոր մարդու դաստիարակությունը տեղի են ունենում սոցիալիստական ու բուրժուական գաղափարախոսությունների սուր հակամարտության պայմաններում: Վերջինս նպատակ է հետապնդում ամեն եղանակով գունազարդել կապիտալիզմը, պարտադրել կյանքի ու մշակույթի իր ստանդարտները, բոլոր միջոցներով սևացնել սոցիալիզմը: Իմպերիալիզմի սանձազերծած «հոգեբանական պատերազմը» հակաիրավական է իր բնույթով, ոտնահարում է մյուս երկրների սուվերենությունը: Այն նախատեսված է գլխավորապես մասսայական գիտակցությունը «մշակելու» համար, պայքար է մղում մարդկանց մտքի, աշխարհընկալման, կենսական կողմնորոշիչների համար:

Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է աշխատավորների շրջանում դաստիարակել բարձր քաղաքական գիտակցություն և զգոնություն, տեղի ունեցող իրադարձությունները բանվոր դասակարգի հստակ դիրքերից գնահատելու հմտություն: Բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարը պետք է վարել հարձակողաբար: Մեր պրոպագանդայի հարձակողականությունը միայն բուրժուական գաղափարախոսական առասպելների ու նմանակների քննադատության մեջ չէ: Դա, ամենից առաջ, մեր իդեալների, հասարակական կյանքի սոցիալիստական նորմերի հաստատումն է, ՍՄԿԿ-ի խաղաղասիրական արտաքին քաղաքականության եռանդուն պրոպագանդումը, կուսակցական սկզբունքայնությունն ու գործնականությունը: Տվյալ բնագավառում համառ ու հետևողական աշխատանքը հնարավորություն է ընձեռում սովետական մարդկանց շրջանում ներարկելու կայուն իմունիտետ թշնամական գաղափարախոսության նկատմամբ, բազմապատկելու ժողովրդի ստեղծարար եռանդը:

Այսպիսով, մարդկային գործոնի ակտիվացումը ժամանակի հրամայական պահանջն է, որ պայմանավորված է երկրի սոցիալ-տնտեսական արագացման ստրատեգիայով: Մարդկային գործոնը կարելի է ակտիվացնել միայն սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտների կատարելագործման հիման վրա: Միևնույն ժամանակ անհնարին է հասնել անհրաժեշտ արագացման՝ առանց ողջ սովետական ժողովրդի անձնուրաց աշխատանքի: Այն ամենը, ինչ կատարվում է մեր երկրում, արվում է մարդու բարօրության համար: Մարդը հասարակության առաջընթացի վճռական գործոնն է, դրա վերջնական նպատակը: Հաջողությամբ լուծելով երկրի առջև ծառացած խնդիրները՝ սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նվաճում է սոցիալ-տնտեսական առաջընթացի նոր բարձունքներ:

---

### Կուսակցական աշխատանքի պրակտիկա

# ՂԵԿԱՎԱՐԻ ԿԱՊԸ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ

**Ծ. ԴԱՎԹՅԱՆ**
**ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար**

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ձևերի ու մեթոդների կատարելագործմանը մեծապես նպաստեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը, կուսակցության XXVII համագումարը: «Հասարակությունը շրջել դեպի նոր խնդիրներ, դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը՝ այսպիսին է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ամենաառաջին պայմանը»— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ:

Վերջին տարիներին մեր շրջանում մասսաների հետ ղեկավար աշխատողների կապերի ամրապնդման բավականաչափ փորձ է կուտակվել: Ավանդույթ են դարձել աշխատավորական կոլեկտիվների հետ ղեկավարների մշտական հանդիպումները, որոնց ընթացքում կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս ղեկավարները հաշիվ են տալիս իրենց գլխավորած հիմնարկ-ձեռնարկությունների, տնտեսությունների գործունեության մասին: Իսկ կուսակցական հաշվետու-ընտրական և վերադաս կուսակցական կոմիտեների որոշումների քննարկումներին նվիրված ժողովներին մասնակցած մեր ներկայացուցիչները ինֆորմացիա են տալիս կոմունիստներին կուսշրջկոմի գործունեության, շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման հիմնական միտումների, հրատապ խնդիրների, ծրագրերի, դժվարությունների ու թերությունների վերաբերյալ: Վերջին երկու տարիներին, շրջանի ակտիվից բացի, կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներին մասնակցել են նաև ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական և գյուղատնտեսական բաժինների պատասխանատու աշխատողներ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարներ, հանրապետության ղեկավար մարմինների աշխատողներ: Մայրաքաղաքից ներկայացուցիչներ են լինում բոլոր միասնական քաղօրերին:

Անցած տարվա հունվարին ՀԿԿ Կենտկոմի բյուրոն հավանություն տվեց մեր շրջանային կուսակցական կազմակերպությունում ծնունդ առած մի կարևոր նախաձեռնության: Շրջանում ամեն ամսվա վերջին շաբաթ օրը հայտարարվում է դպրոցի օր: Դպրոցներ են մեկնում շրջանի բոլոր ղեկավար աշխատողները: Օրվա ընթացքում նրանք դասեր են անցկացնում՝ շեշտը դնելով հատկապես հանրակրթական դպրոցի ռեֆորմի լույսի ներքո սովորողների պրոֆեսիոնալ կողմնորոշման հարցերի վրա, տեղում վճռում են դպրոցին հուզող հարցերը, ստուգում շեֆական կազմակերպությունների պարտավորությունների կատարումը, ընթացք տալիս ուսուցիչների առաջադրած բազմաբնույթ հարցերին: Եվ, որ ամենակարևորն է, ձգտում են սովորողներին դաստիարակել բարձր քաղաքացիականության, հայրենի բնօրրանի նկատմամբ ջերմ հայրենասիրության ոգով:

Մասսաների հետ կապի լավագույն միջոցներից են մեր երկրի պրոֆեսիոնալ տոների առթիվ կուսշրջկոմում և շրջսովետի գործկոմում կազմակերպվող հանդիպումները, որոնց ընթացքում տվյալ բնագավառի ներկայացուցիչները զեկույց են տալիս իրենց գործունեության մասին, զրուցում չլուծված պրոբլեմների, դրանց հաղթահարման ուղիների շուրջ: Այդ օրը առաջավորներին հանձնվում են պատվոգրեր, հուշանվերներ: Հանդիպումները ցույց են տալիս, թե որքա՜ն կարևոր է անկեղծ զրույցը շարքային աշխատողների հետ, որոնց ձեռներեցությամբ, ստեղծագործական ակտիվությամբ է պայմանավորված մեր պլանների բախտը:

Անշուշտ, մասսաների հետ կապի կարևոր միջոց են նաև քաղաքական ուսուցման համակարգը, աշխատավորների նամակները, նրանց ընդունելությունը շրջանային մարմիններում և տեղերում, արտագնա միջոցառումները և այլն:

Սակայն մասսաների հետ կապի ուժեղացումն ամենից առաջ ենթադրում է սիստեմավորված աշխատանք բուն աշխատավորական կոլեկտիվներում, որտեղ վճռվում են արտադրական, քաղաքական ու սոցիալական բազմապիսի խնդիրներ: Այդ իմաստով շատ կարևոր ու օգտակար են մեր կողմից տեղերում արտադրական կոլեկտիվների տնտեսական գործունեության ամենամյա շերտավորված ուսումնասիրությունները, ինչպես նաև շրջանի բոլոր գյուղերում պարբերաբար անցկացվող սոցիոլոգիական հետազոտությունները, գյուղական ապրելակերպի մանրազնին վերլուծությունները: Այս հարցերի մասին կուզեի ավելի հանգամանորեն խոսել:

Արտադրական կոլեկտիվների տնտեսական գործունեության ամենամյա շերտավորված ուսումնասիրությունները հնարավորություն են տալիս մեզ՝ լրիվ չափով պատկերացում կազմել գործերի ռեալ վիճակի մասին, բացահայտել թաքնված տնտեսական ռեզերվները և հնարավորությունները, գործնական միջոցառումներ մշակել տնտեսության առաջընթացի ապահովման համար: Ուսումնասիրությունները, որպես օրենք, տարվում են թե՛ խորությամբ և թե լայնությամբ՝ սկսած առանձին աշխատողներից, բրիգադներից, արտադրամասերից մինչև արտադրական ձեռնարկությունների ղեկավարների աշխատանքի ձևերն ու ոճը:

Ընդամենը մի քանի տարի առաջ մեզ անհանգստացնում էր Գորայքի սովխոզում տիրող իրավիճակը: Երբեմնի առաջավոր տնտեսությունը, ապահովված լինելով գյուղատնտեսական արտադրության ժամանակակից միջոցներով, նահանջ էր ապրել և աշխատում էր մեծ վնասով: Մանրակրկիտ ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ տնտեսության հիմնական աշխատուժի տարիքն անցնում էր 50-ից: Երիտասարդությունը խուսափում էր գյուղում աշխատելուց: Հարկ եղավ գործնական միջամտություն ցույց տալ: Գյուղում բացվեց արդյունաբերական ձեռնարկության մասնաճյուղ, երիտասարդ ընտանիքների համար կառուցվեցին հարմարավետ բնակելի տներ: Եվ գործերի վիճակն աստիճանաբար բարելավվեց: Այժմ արդեն Գորայքի սովխոզը գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի ցուցանիշներով համարվում է շրջանի առաջավոր տնտեսություններից մեկը:

Ցավոք, դրան հակառակ պրոցեսը կատարվեց Վաղուդիի կոլտնտեսությունում, որտեղ մի քանի տարի առաջ աշխատուժը հիմնականում երիտասարդ էր, տնտեսության արտադրական ցուցանիշները վատ չէին: Տնտեսությունում կադրերի որոշ տեղաշարժը տվեց իր բացասական արդյունքը: Ղեկավարներն սկսեցին կտրվել մասսաներից, չապրել նրանց հոգսերով: Հետևանքը եղավ այն, որ երիտասարդության զգալի մասը աշխատանքի անցավ գյուղից դուրս: Գյուղում միայն ծնունդների թիվը 1981 թ. համեմատությամբ 1985 թ. նվազեց 12-ով: Աշխատողների միջին տարիքը անցնում է 50-ից: Հակառակ Գորայքի սովխոզի, ընթացիկ տարում Վաղուդիի կոլտնտեսությունում զգալիորեն վատացել են գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի ցուցանիշները:

Յուրաքանչյուր տարի կուսշրջկոմն անցկացնում է նաև սոցիոլոգիական ուսումնասիրություններ, ինչպես շրջանի, այնպես էլ առանձին գյուղերի մասշտաբով: Դրա հիմնական նպատակն է պարզաբանել արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխման և գյուղում կատարվող սոցիալական տեղաշարժերի վիճակը: Ըստ բնակավայրերի հաշվի են առնվում բնակչության աճը, ծնունդը, ամուսնությունը, ամուսնալուծությունը, մահացությունը: Հետազոտությունների ժամանակ ճշտվում են նաև շրջանավարտների, բանակ մեկնողների և բանակից զորացրվող երիտասարդների թիվը:

Հետազոտությունները հնարավորություն են ընձեռում մեզ՝ ժամանակին պարզել առանձին գյուղերում աշխատուժի ավելցուկը, որը հաշվի է առնվում այդ բնակավայրերում արտադրական ձեռնարկությունների մասնաճյուղերի հեռանկարային պլա-

նավորման ժամանակ: Հենց նմանատիպ հետազոտություններից հետո անցած հնգամյակում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր ստեղծվեցին շրջանի ինը գյուղերում:

Միայն անցյալ տարի Ծաղաթում կատարված սոցիոլոգիական ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ 1985 թ. 1984 թ. համեմատությամբ գյուղում ընտանիքների թիվն ավելացել է 20-ով, բնակչությունը՝ 17-ով: Կոլտնտեսությունում աշխատողների 70 տոկոսը կոմերիտականներ ու երիտասարդներ են: Վերջին հինգ տարիներին միջնակարգ դպրոցի 84 շրջանավարտներից 72-ը մնացել և աշխատում են գյուղում, մնացածները ուսումը շարունակում են բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում, ութ հոգի առանց արտադրությունից կտրվելու սովորում են գյուղատնտեսական բուհերում: Բանակից զորացրվածների 90 տոկոսը վերադառնում է հայրենի բնօրրան:

Ուսումնասիրությունների արդյունքները մենք հաշվի ենք առնում գյուղերում լրացուցիչ բնակշինարարության, արտադրական ձեռնարկության մասնաճյուղի ստեղծման և այլ սոցիալական հարցերի լուծման ժամանակ:

Եվ մյուս խնդիրը՝ գյուղական ապրելակերպի ուսումնասիրությունը: Վերջերս Հացավան գյուղում ստեղծված անառողջ մթնոլորտը մեզ ստիպեց մանրամասն վերլուծել գյուղի ազգաբնակչության ապրելակերպը: Պարզվեց, որ այստեղ առկա 61 ընտանիքներից 34-ը ոչ մի մասնակցություն չունի սովխոզի աշխատանքներում: Աշխատունակ 84 բնակչից 32-ն են ընդգրկված հանրային արտադրությունում, 10 հոգի աշխատում են կուլտլուսհիմնարկներում, խանութում, կապի բաժանմունքում, գյուղական սովետում և այլն: Սիսիան քաղաքում բնակվող հացավանցի յոթ ընտանիքներ գյուղում ունեն անձնական տներ և տնամերձ: Միայն 11 ընտանիքներ զբաղեցնում են սահմանված չափերից ավելի տնամերձ (1000—1500 քմ), պահում 7—8 խոշոր և 25—30 մանր եղջերավոր անասուն: Նրանք հիմնականում զբաղվում են սեփական տնտեսության վարմամբ, չեն մասնակցում սովխոզի աշխատանքներին:

Նման իրավիճակի պատճառով գյուղում ստեղծվել էր անառողջ բարոյահոգեբանական մթնոլորտ, որի նորմալացման նպատակով ձեռնարկվել են համապատասխան միջոցներ:

Հանրահայտ է, որ լեռնային շրջաններում, այդ թվում նաև Սիսիանում բնակչության արտահոսքը և մյուս տեղաշարժերը հետևանք էին հենց տնտեսական ու սոցիալական բնույթի մի շարք բացասական երևույթների: Շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները հիմնավորապես չէին ուսումնասիրել, հաշվի առել կամ լուծել այդ հարցերը: Եվ չի կարելի ասել, թե նրանց ղեկավարները տեղերում չէին լինում կամ աշխատավորների հետ չէին հանդիպում: Ո՛չ, պարզապես սոսկ բացատրական աշխատանքով այլևս հնարավոր չէր մարդկանց համոզել գյուղում մնալ: Անհրաժեշտ էր գործնական քայլերի դիմել արտահոսքը կանխելու համար: Իսկ ինչպե՞ս: Եվ հենց այդ հարցի պատասխանը ընդգրկող գործնական ծրագիրը չէր մշակվել: Չէր մշակվել մի շարք գյուղերի աշխատավորական կոլեկտիվներում առաջացած ներքին, խորքային փոփոխությունները չընկալելու հետևանքով: Ստացվել էր այնպես, որ բնակչության տեղաշարժն այլևս վերևից չէր կարգավորվում, իսկ տարերային, այսպես կոչված, ինքնակարգավորումը աղավաղում էր ոչ միայն բուն տեղաշարժի պրոցեսը, այլև շրջանի էկոնոմիկայի բնութագիրը:

Այս ամենը հաշվի առնելով՝ մենք մեծ աշխատանք ծավալեցինք գյուղերում զբաղվածության պրոբլեմի լուծման, արտադրության կատարելագործման և աշխատանքի կուլտուրայի բարձրացման, գյուղական բնակավայրերում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի ստեղծման նպատակով: Անհրաժեշտ եղավ պայքարել մասնագիտացման անվան տակ գյուղերում անասնապահության առանձին ճյուղերի (թռչնաբուծություն, խոզաբուծություն, ոչխարաբուծություն) կրճատման կամ վերացման միտումների դեմ: Պարզվեց նաև, որ հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը բարձրացնելու ճանապարհով համարյա ամբողջությամբ կրճատվել են հաճարի, ոսպի, կտավատի, տեղական ոլոռի ցանքատարածությունները: Կոլտնտեսությունները, անցնելով դրամական վարձատրության, դադարեցրել էին բնամթերքի բաշխումը արտելականներին, իսկ դա չէր կարող իր բացասական հետևանքները չունենալ:

Բարեբախտաբար, այս ամենն այժմ հաղթահարվել է: Վերջին տարիներին Հա-



յաստանի կոմկուսի Կենտկոմի և կառավարության օգնությամբ առանձնացվեցին նախկինում մեկ տնտեսության մեջ միավորված գյուղերը և դրանց հենքի վրա ստեղծվեցին նոր պետական տնտեսություններ, միջտնտեսային ձեռնարկություններ, համալիրներ, փորձակայաններ: Չէ՞ որ գյուղը համայնք է, հանրություն, որ ձևավորվել է դարերի ընթացքում և նրան ներքին կյանքով ապրելու հնարավորությունից զրկելը չի կարող տնտեսական ու սոցիալական անցանկալի հետևանքների պատճառ չդառնալ:

Այսօր մեզ հետաքրքրում են ոչ միայն այդ, այլ նաև գյուղում ապրող երիտասարդ ընտանիքների, բուհերի նպատակային ընդունելության, ամուսնությունների ու ծնունդների և սոցիալական բնույթի այլ հարցեր, որոնց լուծումը զուգակցվում է լայն ճակատով բնակարանաշինության, գյուղեր տանող ճանապարհների կառուցման, հեռախոսային ու կապի մյուս միջոցների ընդլայնման և հողի հետ մարդկանց կապելու բազմապիսի խնդիրների հետ:

Մասսաների հետ ղեկավարների կապի ամրապնդման գործում շատ կարևոր է նրանց հեղինակության բարձրացումը: Միայն հեղինակավոր ղեկավարը կարող է մասսաների հետ վճռել կոլեկտիվի առջև ծառացած խնդիրները: Ահա բազմաթիվ օրինակներից մեկը: Արդեն 25 տարի է, որ Ծաղաթի կոլտնտեսությունը ղեկավարում է կոմունիստ Ս. Խաչատրյանը: Այդ տարիներին տնտեսությունը մեծապես առաջադիմել է, գյուղն ապրում է լիարյուն կյանքով: Եվ պատահական չէ, որ հենց այստեղ՝ շրջանում առաջինը ծնունդ առավ ամբողջ դասարանով գյուղում մնալու դպրոցի շրջանավարտների նախաձեռնությունը: Ծաղաթը, կարելի է ասել, մի ամբողջություն է, աշխատավորության և տնտեսության ղեկավարության բարոյահոգեբանական ամուր կապի ձուլվածք:

Ս. Խաչատրյանն այդ կապը իրականացնում է մարդկանց, աշխատավորների նկատմամբ անհատական, շերտավորված մոտեցմամբ ու վերաբերմունքով: Նրա ղեկավարած կոլեկտիվը դարձել է անհատի և հասարակության փոխհարաբերությունները միջնորդավորող, նրանց շահերը ներդաշնակող մի օղակ: Այստեղ աշխատավորական կոլեկտիվի ամրապնդումը, համերաշխությունը, համախմբվածությունը դրականորեն են ազդում նաև ղեկավարի անձնավորության բարձր պատասխանատվության ձևավորման ընթացքի վրա: Ֆերմաներում, բրիգադներում, մեքենատրակտորային հավաքակայանում նրա հաճախակի անցկացրած կոլեկտիվ և անհատական զրույցները ճանապարհ են հարթում դեպի հողագործի սիրտը, հասկանալի են դառնում նրանց ցանկությունները ու հոգսերը, դրանց ընդառաջումն ու թեթևացումը ղեկավարի համար դառնում է նպատակային: Հատկապես ամուր է կապը ղեկավարի և գյուղում գտնվող ու աշխատող երիտասարդ ընտանիքների միջև: Նախագահին հաճախակի կարելի է տեսնել այդպիսի ընտանիքների տուն տանող ճանապարհին: Եվ սրտաբաց զրույցների ու հանդիպումների ժամանակ են լուծվում գյուղական ապրելակերպին հատուկ կարևորագույն հարցերը՝ բնակշինարարությունը և գյուղում երիտասարդության ամրապնդումը:

Այսօր Ծաղաթի տնտեսության արտադրական կայուն ցուցանիշների և աշխատանքի արտադրողականության աճի հիմնական գաղտնիքը միջին օղակի ղեկավար կադրերի երիտասարդացման, նրանց ճիշտ ընտրության ու տեղաբաշխման մեջ է: Նրանք, ընդօրինակելով նախագահին, ամուր, սրտամոտ կապեր են ստեղծում իրենց ղեկավարած կոլեկտիվների անդամների հետ, ապրում նրանց հոգսերով:

Կուսակցական, կոմերիտական, կոլեկտիվի ժողովներում ավելի մեծ պահանջկոտություն է ցուցաբերվում ղեկավար աշխատողների գործունեության նկատմամբ: Հատկապես մեծ նշանակություն ունեն կոլեկտիվի ղեկավարի անձնական հատկանիշները, նրա սեփական կարգապահական վարքը, համեստությունը, մարդկանց նկատմամբ հարգալից վերաբերմունքը, կազմակերպչական ունակությունները, սկզբունքային պահանջկոտությունը:

Երբ կոմերիտմիության շրջկոմի 27-ամյա քարտուղարին կուսշրջկոմի բյուրոն երաշխավորեց հայրենի Դարբաս գյուղի կոլտնտեսության նախագահ, թվում էր, թե երկար ժամանակ կպահանջվի, որպեսզի սերտ կապեր ստեղծվեն ղեկավարի ու կոլեկտիվի միջև: Բայց կոմունիստ նախագահը կարողացավ ջանասեր աշխատանքով, խելամիտ գործունեությամբ անմիջապես նվաճել համագյուղացիների համակ-

յանքը։ Եվ արդեն մեկ տասնամյակից ավելի է, որ Ե. Աղաջանյանը բազմապատկում է հայրենի գյուղի փառքը՝ արժանանալով կառավարական բարձր պարգևների։

Անցած հնգամյակի բոլոր տարիներին Սիսիանի շրջանը կատարեց շինարարության պլանները՝ տարեկան իրացնելով մոտ 30 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։ Եվ դա արվեց շինարարությունում կարգ ու կանոն ստեղծելու միջոցով, «Գյուղշին» № 6 տրեստի, Սպանդարյանհէկի շինվարչության, «Հայգլխջրշին» վարչության Սիսիանի տեղամասի կոմունիստ ղեկավարների ջանքերով։ Կոլեկտիվի ուժերը մոբիլիզացնելու, մարդկային գործոնն ըստ ամենայնի ակտիվացնելու շնորհիվ միայն հնարավոր եղավ ժամանակին շահագործման հանձնել շրջանի 150-ից ավելի շինարարական օբյեկտները։

Ցավոք, մենք ունենք նաև հակառակ բնույթի օրինակներ։ Վերջերս կուսշրջկոմի բյուրոն աշխատանքից ազատեց Գետաթաղի կոլտնտեսության նախագահ Ն. Ստեփանյանին և Աշոտավանի միջտնտեսային ձեռնարկության դիրեկտոր Ս. Սահակյանին։ Ո՛չ, նրանք արտադրությունը չէին ձախողել։ Նրանց մոտ պարզապես ուշանում էր նոր պահանջներին համապատասխան ինքնավերակառուցումը։ Գյուղի ղեկավարը նաև շրջանային կազմակերպություններին ու աշխատավորական մասսային իրար կապող օղակն է։ Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ կուսշրջկոմի որոշումների և հանձնարարականների մասին այդ գյուղերում հստակ պատկերացում չունեն, որովհետև դրանց ղեկավարների խոսքը տեղ չի հասնում։ Լավագույն դեպքում նրանք կրկնում են վերևից տրված դիրեկտիվը՝ այն չամրապնդելով կազմակերպական ու քաղաքական միջոցառումներով։

Լինում է նաև այլ կերպ։ Շրջանի ամենամեծ գյուղի՝ Բռնակոթի կոլտնտեսությունը երկար տարիներ ղեկավարում էր Մ. Հովհաննիսյանը։ Նա շքանշաններ է ստացել, վայելում էր տնտեսության մարդկանց ու շրջանի ակտիվի հարգանքը, բայց աստիճանաբար սկսեց կտրվել մասսայից, մեծամտանալ, ավելի շատ շրջկենտրոնում երևալ, քան գյուղում, Երևանում բնակարան ձեռք բերեց և ընտանիքը տեղափոխեց այնտեղ։ Զգալով ղեկավարի ամենօրյա ներկայությունը՝ կոլտնտեսականները, բնականաբար, կորցրին աշխատանքի ռիթմը, տնտեսությունը մի շարք ցուցանիշներում սկսեց նահանջել, և նախագահը ստիպված իր տեղը զիջեց ավելի հեղինակավոր ղեկավարի։

Հաճախ մեր ղեկավար կադրերին թվում է, թե մարդկանց հետ աշխատանքի սահերին զրուցելը, ինչ-որ անձնական պահանջներ լսելն ու դրանք բավարարելը, տարեց մարդկանց հանդիպելն արդեն իսկ մասսայի հետ կապի ապահովումն է։ Մինչդեռ իրականում «ժողովրդականություն» խաղացող այդ ղեկավարները չեն ուզում հասկանալ, որ իրենց աշխատանքը հասարակությունը տեսնում է խոշորամասշտաբ խնդիրների լուծման մեջ, այնպիսի արմատական փոփոխությունների մեջ, որոնք իրենցով նոր որակ են նշանավորում տվյալ կոլեկտիվի կյանքում։ Այդ դեպքում մարդիկ գնահատում և հավատում են ղեկավարին, պատրաստ են գնալու նրա ետևից։ Ցավոք, հենց մասշտաբայնության պակասի, մանրախնդրության պատճառով էլ մենք հաճախ ստիպված ենք լինում հրաժարվել այս կամ այն պատասխանատու անձից։ Վերջին մի քանի տարիների ընթացքում ղեկավարին հատուկ պատասխանատվություն չդրսևորելու համար կուսշրջկոմի բյուրոն աշխատանքից ազատել է Անգեղակոթի կոլտնտեսության նախագահ Լ. Մնացականյանին, Ախլաթյանի սովխոզի դիրեկտոր Ռ. Հարությունյանին, կոմունալ ձեռնարկությունների և բարեկարգման կոմբինատի դիրեկտոր Ս. Մկրտումյանին, ճանշինտեղամասի պետ Ի. Առուստամյանին և ուրիշների։ Աշխատանքից ազատվել և կուսակցական պատասխանատվության են ենթարկվել նաև Դաստակերտի բուժտեխնիկայի գործարանի դիրեկտոր Շ. Սահակյանն ու գլխավոր ինժեներ Շ. Խաչատրյանը, պրոֆտեխուսումնարանի դիրեկտոր Կ. Ղուկասյանը, ինչպես նաև ներքին գործերի բաժնի մի խումբ աշխատողներ, որոնք կատարել էին զանազան չարաշահումներ։

Որպես կանոն, ղեկավարի կապը մասսայի հետ ընդհատվում է, երբ նրա մոտ սկսվում են դրսևորվել ընչաքաղցության երևույթներ, օրինականության խախտումներ։ Եվ զարմանալին այն է, որ այդպիսի ղեկավարին թվում է, թե մարդիկ նրա արարքները չեն տեսնում ու դատապարտում, որովհետև այդ մասին բացեիբաց չեն արտահայտվում։



Մեր աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ կոլեկտիվի ու ղեկավարի կապի խզման պատճառ է դառնում նաև վերջինիս իներտությունը։ «Լավ մարդ» երևալու հակում ունեցող որոշ ղեկավարների լիբերալությունը, իրենց անձի և ենթակաների նկատմամբ պահանջկոտության բացակայությունը հսկայական վնաս են հասցնում գործին։ Հենց այդ դեպքում է, որ արտաքինից խաղաղ թվացող կոլեկտիվում հանկարծ ներքին ցնցումներ են բռնկվում՝ զարմացնելով և՛ կոլեկտիվի ղեկավարին, և՛ վերադաս կազմակերպությունների կադրային հարցերով զբաղվող աշխատողներին։ Վերջին ժամանակներս այս հարցի առթիվ կուսշրջկոմում քննարկումներ են տեղի ունեցել և առանձին զրույցներ անցկացվել Շաքիի կոլտնտեսության նախագահ Ջ. Ստեփանյանի, Թասիկի սովխոզի դիրեկտոր Ս. Դանիելյանի, շինանյութերի կոմբինատի դիրեկտոր Ռ. Թումանյանի, № 20 ՇՄՇ-ի պետ Ա. Հովհաննիսյանի, շրջսովետի կուլտուրայի բաժնի վարիչ Մ. Հովակիմյանի և ուրիշների հետ, որոնք ինչպես հարկն է չեն աշխատում մարդկանց հետ, արտադրական և սոցիալական ոլորտում նկատելի հետք չեն թողնում։

Կուսակցական աշխատանքում մենք ապավինում ենք քննադատության և ինքնաքննադատության՝ իրենց արդարացրած միջոցներին։ Սակայն վերջին ժամանակներս ընդունած որոշումների քննարկման և այլ առիթներով առանձին կոմունիստներ քննադատության անվան տակ առաջ են քաշում տնտեսական ու սոցիալական բնույթի այնպիսի պահանջներ, որոնց իրականացման համար առայժմ պայմաններ չկան։ Վերը նշվեց, օրինակ, որ անցած հնգամյակում գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները շրջանում կազմել են մի քանի տասնյակ միլիոն ռուբլի։ Կարծելով, թե այդ բոլորը առատության եղջյուրից է թափվում, մարդիկ պահանջում են նոր միջոցներ՝ չմտածելով դրանց փոխհատուցման մասին։

Շրջանի Լեռնաշեն, Սալվարդ, Շաքի, Անգեղակոթ, Գորայք, Ախլաթյան, Նորավան, Հացավան և էլի մի քանի գյուղերում հնգամյակում կառուցվել են անասնապահական համալիրներ, սակայն մթերքների արտադրությունն այդ տնտեսություններում չի աճել։ Պատճառն այն է, որ կոլտնտեսականներն ու բանվորները ըստ էության կարծում են, թե համալիրները կառուցվում են հիմնականում իրենց աշխատանքի պայմանները բարելավելու նպատակով։ Եվ քանի որ տնտեսությունների ղեկավարներն այդպես չեն կարծում, ուստի մթերքների արտադրության ցածր մակարդակը բացատրում են «օբյեկտիվ» պատճառներով կամ հանդես գալիս այսպես ասած կեղծ ինքնախարազանմամբ, որը վերջին ժամանակներս շատ է տարածվել՝ ինքնաքննադատության փոխարեն։ Չէ՞ որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը ամենից առաջ մարդկանց օգնում են՝ ընդունելու և վերացնելու իրենց աշխատանքում տեղ գտած թերությունները։ Եվ եթե այս սկզբունքներն աղավաղվում են, ապա ղեկավարի ու մասսայի կապի մեջ առաջանում են կեղծ երանգներ, ձևականության դրսևորումներ, որոնք աստիճանաբար հանգեցնում են նրանց կապերի խզման։ Այդպես է եղել վերը նշված տնտեսություններում։ Այս երևույթը առավելապես շեշտվեց մի քանի կուսկազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում «Անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման քննարկման ընթացքում։ Կոմունիստները նշում էին, որ անաշխատ եկամուտները մարդուն վանում են արտադրությունից, նրան դուրս թողնում կոլեկտիվից, մասսայից, բնականաբար նաև՝ ղեկավարի ազդեցությունից։ Այլ խոսքով, խզում, վիհ են առաջանում ղեկավարի և մասսայի միջև։ Շրջանի կուսկազմակերպությունը ակտիվորեն պայքարում է անաշխատ եկամուտ փնտրող, պորտաբուծությամբ զբաղվող մարդկանց և այլ բացասական երևույթների դեմ։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1986 թ.) պլենումում վերլուծելով երկրի ետհամագումարյան զարգացման հիմնական դասերն ու հետևությունները՝ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Կենտրոնական կոմիտեն յուրաքանչյուր սովետական աշխատավորի կոչ է անում կանգնել մրցության մասնակիցների շարքերում, լինել հնգամյակի աշխատանքային ճակատի ակտիվ մարտիկ, իր աշխատատեղում ծանրակշիռ անձնական ավանդ ներդնել ընդհանուր գործում»։ Իսկ այս խնդիրն իրականացնելու համար մեզ անհրաժեշտ է ըստ ամենայնի ամրապնդել մասսայի և ղեկավարի կապը։

---

4. «Լենինյան ուղիով», № 9

# ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՀԱՐՁԱԿՈՂԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

Օ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
ՀԿԿ Լենինյան շրջկոմի քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՇՐՋԱՆԱՅԻՆ կազմակերպությունը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներով, գաղափարախոսական աշխատանքի հարցերը մշտապես պահում է իր ուշադրության կենտրոնում, ձգտում է պրակտիկայում խորությամբ ներդնել աշխատավորների քաղաքական դաստիարակության նկատմամբ գիտական մոտեցումը, որը հենվում է մարքս-լենինյան տեսության ամուր հիմքի, իրադրության ստույգ իմացության, գործողության մտածված պլանի վրա։ Կուտակվել է նաև հակապրոպագանդիստական աշխատանքի կազմակերպման և ղեկավարման զգալի փորձ։

Շրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպություններն իրենց գլխավոր խնդիրներից են համարում նաև բուրժուական ստահոդ պրոպագանդայի մերկացումը։ Գաղափարախոսական ակտիվը նպատակասլացորեն պրոպագանդում է սովետական ապրելակերպը, աշխատավորներին դաստիարակում գաղափարական համոզվածությամբ ու կայունությամբ, հակառակորդի պրոպագանդիստական դիվերսիային դիմակայելու հմտությամբ։ Մեզ համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ XXVII համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի արտահայտած այն միտքը, որ բուրժուական պրոպագանդիստների հնարագիտությանն ու անսկզբունքայնությանը պետք է հակադրվեն մեր գաղափարախոսական աշխատողների բարձր պրոֆեսիոնալիզմը, սոցիալիստական հասարակության բարոյականությունը, նրա կուլտուրան, ինֆորմացիայի բացահայտությունը, մեր պրոպագանդայի համարձակ ու ստեղծագործական բնույթը։ Հարկավոր է հարձակողականություն թե՛ այն բանում, ինչը վերաբերում է գաղափարախոսական դիվերսիաների մերկացմանը, և թե սոցիալիզմի ռեալ նվաճումների, սոցիալիստական ապրելակերպի մասին ճշմարտացի ինֆորմացիան տեղ հասցնելում։

Բազմազան են դարձել հակապրոպագանդիստական աշխատանքի ձևերը, որոնք օգնում են աշխատավորներին դաստիարակելու հասարակական կյանքի երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցման, խորթ գաղափարախոսության ու բարոյականության հանդեպ անհաշտելիության ոգով։ Այդ գործում հսկայական դեր է հատկացվում կուսակցական ու կոմերիտական քաղաքական ուսուցման և աշխատավորության տնտեսագիտական կրթության համակարգին։ Շրջանի մասսայական քաղաքական ուսուցման օղակներում ներգրավված են ավելի քան 100 հազար աշխատավորներ, որոնցից 83 հազարն զբաղված է նյութական արտադրության ոլորտում։ Շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները կատարելագործում են նրանց քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կառուցվածքը, բարձրացնում պարապմունքների գաղափարատեսական և մեթոդական մակարդակը։

Հանրահայտ է, որ քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կենտրոնական դեմքը պրոպագանդիստական կադրերն են։ Նրանց ակտիվ ու խելամիտ գործունեությամբ, պարապմունքները վարելու հմտությամբ են պայմանավորված այդ համակարգի հաջողությունը, հակապրոպագանդիստական աշխատանքի հարձակողականությունը։ Հաշվի առնելով այդ իրողությունը՝ մենք անչափ կարևորում ենք պրոպագանդիստական կադրերի որակական կազմի բարելավումը։ Հասարակական-քաղաքական ատեստացիայի անցկացումը օգնում է մեզ ճիշտ ընտրություն կատարել և պրոպագանդիստական հույժ կարևոր գործում ներգրավել առավել պատրաստված, գաղափարապես կոփված, քաղաքականապես հասուն, մարդկային լավ հատկանիշներով օժտված ընկերների։ Վերջին ատեստացիայի հիման վրա որպես պրոպագանդիստ ենք հաստատել 3.173 մարդու, որոնց 66,5 տոկոսը ՍՄԿԿ անդամ է, 97,4 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, 53 տոկոսը՝ տասը տարուց ավելի պրոպագանդիստական աշխատանքի ստաժ, 746-ը ավարտել է ՀԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի համալսարանը։

Ուշագրավ է ևս մեկ որակական փոփոխություն։ Վերջին տարիներին պրոպագանդիստական աշխատանքում սկսել ենք ավելի լայնորեն ներգրավել շրջանի տնտեսական ղեկավարներին։ Նրանցից շատերը կուտակել են պարապմունքները վարելու հարուստ փորձ, որի ուսումնասիրման, ընդհանրացման ու տարածման գործը սկզբնական կուսկազմակերպությունները համարում են իրենց առաջնահերթ խնդիրներից մեկը։ Այդպիսի ուշադրության է արժանացել Ստ. Շահումյանի անվան կաշվի ու «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումների գլխավոր դիրեկտորներ Ա. Հակոբյանի և Պ. Մանվելյանի, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման գլխավոր դիրեկտորի տեղակալ Գ. Մարտիրոսյանի աշխատանքը։ Նրանք ապահովում են պարապմունքների հակապրոպագանդիստական ուղղվածությունն ու հարձակողական բնույթը, կոնկրետ օրինակներով ցույց տալիս սոցիալիստական հասարակարգի առավելությունները, կապիտալիզմի հակաժողովրդական էությունը, բուրժուական գաղափարախոսության սնանկությունը։

Կուսշրջկոմն իր տեսադաշտում է պահում պրոպագանդիստական կադրերի ուսուցման ու դաստիարակության գործը։ Յուրաքանչյուր ուսումնական տարվա սկզբին նրանց համար կազմակերպում ենք գիտագործնական կոնֆերանս, շրջկոմի և կուսկոմիտեների քաբինետներին առընթեր ստեղծվել են մշտական գործող սեմինարներ՝ քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության բոլոր օղակների պրոպագանդիստների համար։ Պարապմունքներում համակողմանիորեն արծարծվում են ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերի պրոպագանդման հրատապ հարցերը։ Առանձնակի տեղ է հատկացվում նաև հակապրոպագանդիստական աշխատանքի արդյունավետ կազմակերպմանը։ Այդ ամենը մեծապես նպաստում է կուսակցական ու կոմերիտական քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության համակարգի պարապմունքներում համագումարի նյութերի խոր ուսումնասիրությանը։ Ընդ որում պրոպագանդիստները կուսակցության ծրագրային փաստաթղթերի ուսումնասիրությունը սերտորեն առնչում են աշխատավորական կոլեկտիվների առջև ծառացած ընթացիկ և հեռանկարային խնդիրների լուծման հետ։

Բուրժուական գաղափարախոսության դեմ արդյունավետ պայքար կազմակերպելու նպատակով կուսշրջկոմի քաբինետում և գրադարանում ստեղծվել են հակապրոպագանդիստական անկյուններ, ուր կան այդ թեմային վերաբերող բազմաբնույթ ու բազմազան նյութեր։ Դրանք որպես աղբյուր են ծառայում գաղափարախոսական կադրերի հակապրոպագանդիստական աշխատանքի համար։

Ակտիվ գործունեություն է ծավալում հակապրոպագանդայի շրջանային հանձնաժողովը, որը հաստատվել է կուսշրջկոմի բյուրոյում։ Նրա կազմում ներգրավվել են կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, մամուլի, ժողովրդական կրթության ու առողջապահության ներկայացուցիչներ։ Այն գլխավորում է կուսշրջկոմի քարտուղարը։ Հանձնաժողովը կազմել է հակապրոպագանդայի ծավալման պլան, որին համապատասխան ամեն ամիս կազմակերպվում են դասախոսություններ ու զեկուցումներ, անցկացվում նիստեր, տրվում կոլեկտիվներում տարվելիք հակա-

պրոպագանդիստական աշխատանքի հանձնարարականներ։ Հանձնաժողովն իր նիստերում պարբերաբար քննարկում է կոլեկտիվներում տարվող հակապրոպագանդիստական աշխատանքի դրվածքը, ընդհանրացնում ու տարածում այդ ասպարեզում կուտակված առաջավոր փորձը։ Արդյունավետ են եղել հատկապես գաղափարախոսական աշխատանքի հակապրոպագանդիստական ուղղվածության և ներգործունության ուժեղացման նպատակով «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման, նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատի կուսկոմիտեների և բազմատպաքանակ թերթերի ծավալած գործունեության վերաբերյալ քննարկումները։ Լսվել են նաև «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեի հաշվետվությունը հակապրոպագանդայի հանձնաժողովի և «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության՝ հակապրոպագանդիստական դասախոսական աշխատանքի ուժեղացման մասին։ Գաղափարախոսական աշխատանքի հրատապ հարցերը կանոնավոր կերպով քննարկվում են նաև շրջանի խոշոր սկզբնական կուսկազմակերպություններում ստեղծված հակապրոպագանդայի հանձնաժողովներում, պրոպագանդիստների, դասախոսների, քաղինֆորմատորների և ագիտատորների սեմինար-պարապմունքներում։

Կուսշրջկոմը հակապրոպագանդիստական աշխատանքում մշտական օգնություն է ցույց տալիս սկզբնական կուսկազմակերպություններին։ Այդ նպատակով եռամսյակը մեկ հրավիրում է նրանց քարտուղարների գաղափարախոսական աշխատանքի գծով տեղակալների սեմինար-պարապմունք։ Ընդ որում պարապմունքները կազմակերպվում են շրջանի խոշոր կուսկազմակերպություններում։ Դրանց ուսումնական պլաններում նախատեսվում են գաղափարախոսական պայքարին, միջազգային հարաբերություններին, աթեիստական դաստիարակությանը վերաբերող հրատապ ու կարևոր թեմաներ։ Պարապմունքներն անցկացնում են առավել պատրաստված դասախոսները, գիտնականներ, մասնագետներ, կուսակցական պատասխանատու աշխատողներ։

Իրականացված միջոցառումների շնորհիվ բարձրանում են դասախոսական պրոպագանդայի որակն ու արդյունավետությունը։ Դրան մեծապես նպաստում է կոլեկտիվներում կարդացվող դասախոսությունների տարեկան պլան-գրաֆիկների ներդրման պրակտիկան, որոնք հնարավորություն են ընձեռում սիստեմավորված և տարբերակված կազմակերպել ողջ աշխատանքը։ Դասախոսությունների հիմնական բովանդակությունը վերաբերում է ՍՄԿԿ XXVII համագումարի և Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի պահանջներից բխող երկրի ներքին և միջազգային կյանքի հրատապ պրոբլեմներին։

Դասախոսական պրոպագանդայի բարելավման, կարդացվող դասախոսությունների որակի և արդյունավետության բարձրացման հարցերով ակտիվորեն է զբաղվում «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպությունը։ Կուսշրջկոմը գործնական միջոցառումներ է իրականացնում դասախոսական պրոպագանդայի կուսակցական ղեկավարությունն ուժեղացնելու, նրա կազմակերպումը կատարելագործելու, դասախոսների որակական կազմը բարելավելու համար։ Այդ ամենն ուղղված է դասախոսությունների որակի ու արդյունավետության բարձրացմանը։ Կուսկոմիտեների դասախոսական խմբերը ամրապնդվել են արտահաստիքային որակյալ դասախոսներով, որոնց թիվը հասնում է 672 մարդու։ Հոգ է տարվում նաև նրանց ուսուցման և որակավորման մասին։ Այսպես, 1985 թ.դասախոսների համար անցկացվել են վեց սեմինար-պարապմունք, լսվել և գրախոսվել 5.500 դասախոսություն, գաղափարախոսական կադրերին օգնելու նպատակով պատրաստվել ավելի քան 50 նյութ։

Հակապրոպագանդիստական գործունեության հարցերին մեծ ուշադրություն է նվիրում «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեն։ Կուսկոմիտեին առընթեր գաղափարախոսական հանձնաժողովի կազմում ստեղծվել է հակապրոպագանդայի խորհուրդ, որը տնօրինում է հակապրոպագանդայի կաբինետի աշխատանքը։ Այդ կաբինետում կենտրոնացված է ան-



հրաժեշտ գրականություն, կազմակերպվում է ակտիվի ուսուցումը, անցկացվում են ինֆորմացիոն-մեթոդական սեմինարներ։ Կաբինետի բազայի վրա կուսակցական ակտիվի համար կազմակերպվել է մշտական գործող սեմինար, որն զբաղվում է հակապրոպագանդայի հարցերով։ Հակապրոպագանդայի պրոբլեմներով զբաղվող գաղափարախոսական ակտիվի և կադրերի պատրաստման նպատակով անցկացվում են մեթոդական պարապմունքներ, կոնսուլտացիաներ, կողմնորոշիչ դասախոսություններ։

Միավորումում ընդլայնվել է գաղափարախոսական պայքարի հարցերի ուսումնասիրությունը քաղաքական ուսուցման բոլոր ձևերում։ Տնտեսագիտական կրթության համակարգում յուրաքանչյուր ուսումնասիրվող կուրսում նախատեսված են հակապրոպագանդայի պրոբլեմներին նվիրված հատուկ թեմաներ կամ հարցեր։ Կուսակցական ուսուցման համակարգում, գիտական կոմունիզմի դպրոցներում ուսումնասիրվում են միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի և ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը։ Կոմերիտական քաղաքական ուսուցման համակարգում պատանիների ու աղջիկների մոտ հատուկ հետաքրքրություն է առաջացնում «Գաղափարախոսական պայքարը և երիտասարդությունը» կուրսի ուսումնասիրությունը։ Կուսակցական ուսուցման բնագավառում ընդլայնվել է գաղափարախոսական պայքարի ուսումնասիրությունը, իսկ տնտեսագիտական կրթության համակարգում գործնականում յուրաքանչյուր ուսումնասիրվող կուրսի համար նախատեսված են հակապրոպագանդայի պրոբլեմներին նվիրված հատուկ թեմաներ կամ առանձին հարցեր։ Գաղափարախոսական պայքարի նպատակով տարվող պրոպագանդիստական աշխատանքի կարևոր տեղամասերում միավորման կուսկոմիտեն առաջադրում է առավել հեղինակավոր մարդկանց։ Նրանց թվում են միավորման գլխավոր դիրեկտոր Պ. Մանվելյանը, ավտոմատացման և մեքենայացման բաժնի պետ Վ. Ներսիսյանը, գլխավոր մետալուրգ Է. Սաֆարյանը և ուրիշ պրոպագանդիստներ։

Լավագույն պրոպագանդիստների բնութագրական հատկանիշն այն է, որ նրանք ուժեղացնում են յուրաքանչյուր պարապմունքի հակապրոպագանդիստական ուղղվածությունը, օգտագործում են բոլոր հնարավորությունները՝ իմպերիալիստական պրոպագանդայի հերյուրանքներին հակահարված տալու համար։

Հետաքրքրական, յուրահատուկ ձևով է անցկացնում պարապմունքները պրոպագանդիստ Վ. Ներսիսյանը։ Նրան բնորոշ է հասարակական կյանքի երևույթները դասակարգային դիրքերից վերլուծելու, պրոբլեմները ինքնուրույն գնահատելու հմտությունը։

Միավորման կուսկոմիտեի ծավալած հակապրոպագանդիստական գործունեությունը հենվում է մարդկային ճակատագրերի միջոցով մեր կարգերի առավելությունները ցույց տվող փաստերի վրա, լայնորեն օգտագործվում են բազմատպաքանակ թերթի և ռադիոհանգույցի հնարավորությունները, կազմակերպվում են կոլեկտիվի անդամների հանդիպումները լրագրողների, գիտության ու կուլտուրայի գործիչների, արտասահմանյան շրջագայությունից վերադարձած տուրիստների հետ։ Կապիտալի երկրներ այցելած տուրիստները կոնկրետ օրինակներով, իրենց անձնական դիտումների հիման վրա մարդկանց պատմում են ճշմարտությունը, մերկացնում մեր գաղափարական հակառակորդների, զանազան ռադիոձայների կեղծիքը։ Խոշոր էլեկտրամեքենաների արտադրությունում անցկացրած ագիտացիոն զրույցներից մեկի ժամանակ ելույթ ունեցավ ագիտատոր Ա. Պողոսյանը, որը եղել էր Բեյրութում, հարազատների մոտ։ «Ես տեսա,— ասաց նա,— թե ինչպես են ոչնչանում մարդիկ, թե որքան են նրանց հարկավոր խաղաղությունն ու արդարությունը։ Տեսա աղքատների կարիքներն ու հարուստների շքեղությունը։ Անձամբ համոզվեցի այն բանում, թե ինչպես են ճնշվում հայերը օտարության մեջ։ Ինչպիսի աննկարագրելի հակադրություն է այն մեր սոցիալիստական իրականության համեմատությամբ»։

«Աշխատանքային դինաստիա», «Վարպետ-դաստիարակ», «Բանվորական

բարձունք», «Կորեկ հացը օտարության մեջ», «Սխալվեցի, բայց մարդիկ ճիշտ հասկացան» և ուրիշ այլ խորագրերի ներքո բազմատպաքանակը լուսաբանում է կոլեկտիվի բովանդակալի գործունեությունը, պատմում նրա լավագույն անդամների մասին, վառ կերպով բացահայտում նրանց կերպարը, հոգեկան աշխարհը, քաղաքացիական դիրքորոշումը տարբեր պրոբլեմների նկատմամբ։

«Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում կոմունիստների քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության համակարգում մտցվել է գաղափարախոսական պայքարի և հակապրոպագանդայի հրատապ պրոբլեմների ուսումնական կուրս։ Քաղդպրոցների տեսական սեմինարների ծրագրերում նախատեսված են այնպիսի թեմաներ, ինչպիսիք են «Բուրժուական գաղափարախոսության քննադատության հրատապ պրոբլեմները ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո», «Պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը և գաղափարախոսական պայքարը», «Սոցիալիստական ապրելակերպի էության և հեռանկարների վերաբերյալ բուրժուական ու ռևիզիոնիստական հայացքների քննադատությունը»։

Գաղափարախոսական հանձնաժողովի նախաձեռնությամբ միավորման կուլտուրայի պալատում երիտասարդության համար ստեղծվել է «Աշխարհը մեր շուրջը» հասարակական-քաղաքական ակումբ, որտեղ անցկացվում են հանդիպումներ կուսակցության վետերանների հետ, զրույցներ, բանավեճեր՝ նվիրված արդի գաղափարախոսական պայքարի պրոբլեմներին, կազմակերպվում են կինոնկարների դիտումներ ու քննարկումներ, թեմատիկ դասախոսություններ, հանգստի երեկոներ։ Հաշվի առնելով, որ միավորման ներկայացուցիչները հաճախ են լինում արտասահմանյան ծառայողական գործուղումներում՝ հակապրոպագանդայի հանձնաժողովը կազմակերպում է նրանց հանդիպումները միավորման աշխատողների հետ։

Արդի միջազգային բարդ իրադրության պայմաններում շրջանի սկզբնական կուսակցական կազմակերպություններում սիստեմատիկաբար և խորությամբ բացատրվում են ՍՄԿԿ և սովետական կառավարության արտաքին քաղաքական գործունեությունը, սպառազինությունների սահմանափակման, փոխշահավետ համագործակցության զարգացման, աշխարհում հուսալի խաղաղություն ապահովելու վերաբերյալ կոնստրուկտիվ և իրատեսական խաղաղ առաջարկությունների էությունն ու կարևորությունը։

Հայտնի է, որ ժամանակակից իրականությունը աննախադեպ է երկու հակադիր բևեռներով աշխարհհայացքների, երկու տարբեր սիստեմների միջև մղվող պայքարի ինտենսիվությամբ ու բարդությամբ։ Պայքար է մղվում երկրագնդի միլիոնավոր մարդկանց մտքի և սրտի համար։ Եվ մարդկության ապագան ոչ քիչ չափով պայմանավորված է այդ պայքարի ելքով։ Մեզ համար գործողության ծրագիր են նաև այդ հարցերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի պահանջները։ Համագումարը խնդիր դրեց ակտիվացնել հակապրոպագանդիստական աշխատանքը, պրոպագանդել սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում հայ ժողովրդի ձեռք բերած պատմական նվաճումները, Սովետական Միության արտաքին քաղաքականության արդար նպատակները, մեր սոցիալիստական հասարակության առաջընթացը, կոմունիստական կուսակցության ազգային ճշմարիտ քաղաքականությունը, հետևողականորեն մերկացնել դաշնակցության, բոլոր ռեակցիոն ու պահպանողական ուժերի թշնամական հերյուրանքներն ու բարբաջանքը և վճռական հակահարված տալ դրանց։

---



# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԱՆՄԻՋԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺ

**Վ. ՄԱՆՈՒԿՅԱՆ**

ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՐԱՃՈՒՆ ԴԵՐ Է ԽԱՂՈՒՄ արտադրողական ուժերի զարգացման և հասարակական հարաբերությունների կատարելագործման, տեխնիկայի ու տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների ստեղծման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, երկրի ընդերքի, օվկիանոսի, տիեզերքի յուրացման, շրջակա միջավայրի պահպանության և բարելավման գործում։ ՍՄԿԿ XXVII համագումարը որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման գլխավոր օղակ առաջադրեց գիտության և տեխնիկայի զարգացման արմատական արագացումը, նոր սերունդների տեխնոլոգիայի լայն արմատավորումը։ Համագումարը առաջնային համարեց գիտական ամենաարդիական նվաճումների հիման վրա ժողովրդական տնտեսության խոր վերակառուցում իրականացնելու խնդիրը։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ապահովել գիտության շրջադարձը դեպի էկոնոմիկայի տեխնիկական վերազինման կարիքները, այն ավելի սերտորեն զուգակցել արտադրության հետ։ Խնդիր է դրված այդ նպատակով օգտագործել ինտեգրացման և փոխգործողության նոր, իրենց արդարացրած ձևերը, արագացնել հետազոտությունների արդյունքների ներդրումը պրակտիկայում։

«Կուսակցությունն ըստ ամենայնի կնպաստի երկրի գիտատեխնիկական պոտենցիալի հետագա մեծացմանը և արդյունավետ օգտագործմանը, էկոնոմիկայի ինտենսիվացման գործում խոշոր, հեղափոխական տեղաշարժերի նոր հնարավորություններ բացող գիտական հետազոտությունների ծավալմանը։ Ամենուրեք պետք է ապահովվի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրումը արտադրության, կառավարման մեջ, սպասարկման ու կենցաղի ոլորտում։ Գիտությունը լրիվ չափով կդառնա անմիջական արտադրողական ուժ» (**ՍՄԿԿ ծրագիրը**, 1986, էջ 36)։

Գիտությունը արտադրողական ուժի վերածվելու պրոբլեմը ինչպես տեսական, այնպես էլ գործնական մեծ նշանակություն ունեցող խնդիր է։ Հասարակական մասշտաբի այդ պրոցեսի արմատների սկզբնավորման և հարաճուն ընթացքի գիտական վերլուծությունն այսօր մեզ օգնում է՝ ճիշտ ըմբռնելու վերջին հարյուրամյակում մարդկային հասարակության որակական թռիչքի բուն էությունը։ Գիտության, տեխնիկայի և արտադրության փոխհարաբերության պրոբլեմը տեսական իմաստավորման կարիք է զգում։

Արտադրությունը հասարակության կյանքի հիմքն է, ինչպես և հենց իր՝ արտադրության ընդերքում կատարվող փոփոխությունների և վերջին հաշվով՝ ամբողջ հասարակական կառուցվածքի հիմքը։

Եթե մարդկության զարգացման սկզբնական փուլերում արտադրությունը փոխվում էր տարերայնորեն և գիտությունն ըստ էության դիտվում էր շատ նեղ առումով, հասարակության սոցիալ-տնտեսական համակարգից դուրս, ապա սկսած նոր ժամանակներից՝ տեխնիկայի և տեխնոլոգիայի լայն կիրառմամբ սկսեց մեծ դեր խաղալ գիտությունը։

Կ. Մարքսը գտավ, որ գիտությունը համընդհանուր պատմական զարգացման պրոցեսի արդյունք է և միաժամանակ «պատմության հզոր լծակ», «հեղափոխական ուժ՝ բառիս ամենաբարձր իմաստով» (К. Маркс, Ф. Энгельс, т. 19, стр. 348—349): Գիտությունը, ըստ Մարքսի, որպես ինքնուրույն գործունեություն և գիտելիքի ուրույն ձև, առանձնանում է սոցիալական զարգացման այնպիսի փուլում, երբ առանց դրա անհնար է դառնում հասարակության արտադրողական ուժերի հետագա զարգացումը: Գիտատեխնիկական առաջընթացը որակական փոփոխություններ է հարուցում արտադրողական ուժերի մեջ՝ ընդգրկելով տեխնիկան, աշխատանքի առարկաները և մարդու բուն աշխատանքային գործունեությունը:

Իհարկե, քաղաքակրթության արշալույսին մարդիկ բնությունն իրենց նպատակներին ծառայեցնելու, իրենց պահանջմունքները բավարարելու համար դիմում էին նախորդ սերունդների կուտակած զուտ էմպիրիկ բնույթի գիտելիքներին: Նրանք, ոռոգման ջրանցքներ, քարե շենքեր կառուցելիս, բույսերից բուժանյութեր ստանալիս, պողպատը կոփելիս, մագնիսական սլաքն օգտագործելիս իրենց համար անհրաժեշտ արդյունքներն ստանում էին երկրաչափության, քիմիայի, ֆիզիկայի առաջացումից դեռ շատ առաջ:

Մարքսն արտադրողական ուժերի զարգացումը չէր նույնացնում գիտության առաջընթացի հետ: Դրանք երկար ժամանակ զարգանում էին «ինքնուրույնաբար», բայց նա գիտությունը համարում էր այն ձևերից մեկը, որոնցում հանդես է գալիս արտադրողական ուժերի զարգացումը: Ընդ որում գիտության երևան գալն ու նրա վերածումն արտադրողական ուժի Մարքսը սերտորեն կապակցում էր հասարակության սոցիալական կառուցվածքի փոփոխության հետ, որոշակի արտադրահարաբերությունների ու դասակարգերի երևան գալու հետ:

«Առավել հզոր արտադրողական ուժը դա ինքը՝ հեղափոխական դասակարգն է», մատնանշում էր Մարքսը (նույն տեղը, հ. 4, էջ 184): «Արտադրության կապիտալիստական եղանակն է միայն,— գրում էր նա,— որ բնական գիտություններն առաջին անգամ ծառայեցնում է արտադրության անմիջական պրոցեսին, մինչդեռ, ընդհակառակը՝ արտադրության զարգացումը միջոցներ է ընձեռում բնությունը տեսականորեն նվաճելու համար: «Գիտությունն ստանում է հարստության արտադրության միջոց, հարստացման միջոց լինելու կոչում» (նույն տեղը, հ. 47, էջ 554):

Ինչպես հայտնի է, մարքսիզմի կլասիկները բարձր էին գնահատում կապիտալիզմի պատմական դերը, որը նախորդ ֆորմացիաների համեմատությամբ, տվել է արտադրողական ուժերի բացառիկ աճ, բայց միաժամանակ մատնանշում էին այդ ուժերի զարգացման ծայրահեղ հակասական բնույթը կապիտալիզմի անհաղթահարելի հակամարտությունների շրջանակներում: Եվ նույնքան էլ հակասական է գիտության զարգացումը բուրժուական հասարակության մեջ: Մարքսն ընդգծում էր, որ կապիտալիզմի օրոք տեղի է ունենում գիտության, մարդկության տեսական առաջընթացի շահագործում: Կապիտալը գիտությունը յուրացնում է իր շահերի, արտադրության պրոցեսի կարիքների համար:

Հասարակության զարգացման վրա գիտության վիթխարի ներգործության նշանակությունը բազմիցս ընդգծել է Վ. Ի. Լենինը: Նա գտնում էր, որ սեփականության հանրային ձևի տիրապետության հասարակական նոր պայմաններում գիտության զարգացման համար վերանում են սոցիալական խոչընդոտները և անհրաժեշտ է դառնում լիովին օգտագործել գիտությունն ու տեխնիկան:

Սխալ կլիներ կարծել, թե տնտեսավարման ու կառավարման սոցիալիստական սկզբունքների հաղթանակով ինքնին լուծվում է արտադրության մեջ գիտական հայտնագործությունների ներդրման պրոբլեմը: Դրա լուծումը պահանջում է դինամիկորեն իրականացնել գիտաարտադրական կոմպլեքսի կատարելագործումը, գիտություն—արտադրություն շղթայի ամրապնդումը:

Գիտությունը վաղուց է դարձել շատ բարդ կազմակերպված գործունեություն՝ մեծ քանակությամբ ենթահամակարգերի ու մակարդակների լայն ցանցով: Քաջ հայտնի է, որ հարաբերականության տեսությունը կամ քվանտային մեխանիկան փոխեցին դասական հայացքները բնության կառուցվածքի մասին: Իրենց զարգացման վաղ փուլերում, օրինակ, մեխանիզմների ու մեքենաների տեսությունը, ինչպես և էլեկտրատեխնիկան սոսկ կիրառական բնագավառներ էին. հետագայում նրանք դառնում են հատուկ տեխնիկական գիտություններ, որոնց միջոցով էլ տեղի է ունենում հիմնարար ու կիրառական հետազոտություններում ստացված տեսական գիտելիքների նյութականացումը:



Այժմ առաջացել են բնագիտության այնպիսի կիրառական բնագավառներ, որոնք տեխնիկական գիտության ոլորտին չեն դասվում, թեև փորձն այդ բնագավառներում դարձել է արդյունաբերության մի ամբողջ ճյուղ, օրինակ, ջերմամիջուկային էներգիայի բնագավառում կառավարվող կիրառական հետազոտությունները: Եվ, ընդհակառակը, ժամանակակից տեխնիկական այնպիսի գիտություններ, ինչպիսիք են տեսական ռադիոտեխնիկան կամ մեխանիզմների ու մեքենաների տեսությունը, դրանք տեսական դիսցիպլիններ են, թեև նախատեսված են կոնկրետ ինժեներական գործունեությունն սպասարկելու համար: Ուստի տեխնիկական դիսցիպլիններում հարկավոր է տարբերակել դրանցում եղած ֆունդամենտալ ու կիրառական հետազոտությունները, ճիշտ այնպես, ինչպես այդ տարբերությունը կար օրինակ ֆիզիկայում:

Գիտությունը հասարակական գիտակցության ձևերից մեկն է և ինքնին չի կարող վերածվել արտադրողական ուժի: Ըստ Մարքսի՝ արտադրողական ուժերին են դասվում աշխատանքի կատարման պրոցեսում գործող մարդիկ, աշխատանքի միջոցները, աշխատանքի առարկան և արտադրության կազմակերպումն ու տեխնոլոգիան: Եվ, այնուամենայնիվ, նրա այն միտքը, թե մեքենայական արտադրության, «մարդ—մեքենա» համակարգի երևան գալու հետ գիտությունը դառնում է անմիջական արտադրողական ուժ, արտահայտում է չափազանց խորը իմաստ:

Բանն այն է, որ արտադրության համակարգում աշխատող մարդիկ, հանդիսանալով հասարակության գլխավոր արտադրողական ուժ, գործում են՝ օգտվելով իրենց գիտելիքներից և պատահական չէ, որ Մարքսը նրանց աշխատանքի արդյունքն անվանել է «գիտելիքների իրայնացված ուժ»: Հենց մեքենայական արտադրության երևան գալու հետ միասին մարդկանց գիտելիքները, որոնցից օգտվում են աշխատողներն իրենց արտադրողական գործունեության մեջ, սկսել են ձեռք բերել գիտական ձև: Իսկ եթե այդպես է, ապա հասարակության մեջ պահանջ է առաջացել՝ ունենալու տեխնիկական գիտություններ յուրացրած ավելի ու ավելի մեծ քանակությամբ մասնագետներ:

Քաջ հայտնի է Մարքսի այն միտքը, որ արտադրողական ուժերի մեջ տեղի ունեցող փոփոխություններն սկսվում են աշխատանքի գործիքներից, այսինքն՝ այն օրգանից, որ մարդը դնում է իր և բնության միջև, որով նա անմիջականորեն ներգործում է աշխատանքի առարկայի վրա՝ նպատակ ունենալով փոփոխել այն: Տեխնիկական վերափոխումները սկսվում են նյութի հետ, աշխատանքի առարկայի հետ բանող օրգանի շփման գոտուց, այսինքն՝ մեքենայի առաջին օղակից: Շատ հեղինակներ իրավացիորեն պաշտպանում են հենց այս տեսակետը: Նրանք փաստարկված ձևով պնդում են, որ ԳՏՀ-ի բովանդակությունն է կազմում ոչ մեխանիկական տեխնոլոգիան՝ արտադրության ավտոմատացման հետ զուգակցված: Ընդ որում կոմպլեքսային ավտոմատացումն արդեն հանդես է գալիս որպես ժամանակակից արտադրության զարգացման անհրաժեշտ հիմք ու պայման:

Իրոք, քանի որ տեխնոլոգիայի ոչ մեխանիկական ձևերը (մոլեկուլյար, ատոմային և ենթաատոմային մակարդակով) անմիջականորեն ենթակա չեն մարդու զգայարաններին, ապա դրանց օգտագործումը հնարավոր է միայն աշխատողի կողմից նատարվող կառավարման նախորդ ֆունկցիաները տեխնիկական միջոցներին հաղորդելու պայմանով:

Այսպիսով, մեխանիկական տեխնոլոգիայից անցումը ոչ մեխանիկականին և դրան զուգակցված ավտոմատացումն ու ԷՀՄ-ը կազմում են գիտատեխնիկական հեղափոխության բովանդակությունը: Արտադրական փորձը վկայում է, որ սկզբունքորեն ոչ մեխանիկական տեխնոլոգիային են դասվում աշխատանքի առարկայի մշակման էլեկտրաքիմիական, էլեկտրաֆիզիկական, էլեկտրոնային-ճառագայթային ուլտրաձայնային, կենսաբանական և ուրիշ շատ նոր եղանակներ: Այս տեխնոլոգիաներում ֆիզիկական, քիմիական, միջուկային էներգիան անմիջականորեն ներգործում է մշակվող նյութի վրա, ի դեպ, ոչ մեխանիկական գործողության տեղակայումները չեն պահանջում պարբերաբար փոխել գործիքը և «իրենց բնույթով» կապված են արտադրության անընդմեջության հետ: Դրանց կիրառումը կտրուկ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը:

Նոր տեխնոլոգիայի ներդրումն առավել ցայտուն օրինակներ է տալիս արդյունահանող արդյունաբերության մեջ: Օրինակ, ածխի ջրողողման և ջրափոխադրման դեպքում արտադրողականությունն աճում է յոթ անգամ, իսկ դրա ստորգետնյա գազիֆիկացման ժամանակ՝ է՛լ ավելի շատ: Օգտակար հանածոների արդյունահանման սկզբունքորեն նոր, ոչ մեխանիկական եղանակը (գազիֆիկացումը) հայտնագործել է դեռ XX դարի սկզբին անգլիացի քիմիկոս Վ. Ռամսեյը: Պատահական չէ, որ Վ. Ի. Լենինը դա անվանել է «Վիթխարի տեխնիկական հեղափոխություն» (ԵԼԺ, հ. 23, էջ 111), քանի որ այստեղ արմատապես փոխվում են և՛ արտադրության տեխնոլոգիան, և՛ մարդու արտադրական ֆունկցիաները՝ արտադրողականության շեշտակի բարձրացման և բանվորների աշխատանքի պայմանների բարելավման հետ զուգընթաց: Այժմ արդյունաբերական մասշտաբներով փորձեր են կատարվում բակտերիաների օգնությամբ հանքաքարից պղինձ ստանալու, այրվող պլազմայից, առանց ավանդական պտտվող ռոտորների, մագնիսահիդրոդինամիկ գեներատորների օգնության, էլեկտրաէներգիա ստանալու համար: Եվ, իհարկե, տեխնոլոգիայի ու նոր տեխնիկայի բոլոր այս եղանակները հայտնագործված չէին լինի՝ առանց նախնական գիտական հետազոտությունների:

«Ֆունդամենտալ տեսական հետազոտություններ—կիրառական գիտություն—տեխնիկական գիտական դիսցիպլին» շղթան, որը նոր տեխնիկայում և տեխնոլոգիայում ավարտվում է որպես «իրայնացված գիտելիք», լավագույն ձևով կարելի է ցույց տալ ժամանակակից արտադրության մեջ լազերների օգտագործման օրինակով: Լազերային ճառագայթը բնության օբյեկտների հետ մարդու փոխգործողության տիպիկ, ոչ մեխանիկական եղանակ է: Եվ այդ եղանակը, վերջին հաշվով, հնարավոր դարձավ քվանտային մեխանիկայի, քվանտային էլեկտրադինամիկայի, կոհերենտ ճառագայթման տեսության առաջացման, կիրառական բնագավառներում ու բյուրեղային ցանցերի հատկությունների ուսումնասիրման և, վերջապես, իմպուլսային տեխնիկայի նման ինժեներական դիսցիպլինների շնորհիվ:

Ակնհայտ է նաև, որ եթե, օրինակ, առաջին արդյունաբերական հեղափոխության ժամանակ շոգեմեքենաների կատարելագործումը ինչ-որ ժամանակ առաջ էր անցել տեսությունից, ապա մեր ժամանակներում սկզբունքորեն անհնար է կառավարվող ջերմամիջուկային ռեակտոր ստեղծել՝ առանց նախնական ֆունդամենտալ հետազոտությունների ու կիրառական մշակումների, իսկ դրա արդյունաբերական օգտագործման համար դեռ անհրաժեշտ կլինի ստեղծել նոր, դեռևս գոյություն չունեցող գիտություն ջերմամիջուկային ռեակտորների նախագծման ու շահագործման մասին:

Փոխվել է նաև գիտական աշխատանքի կազմակերպական կառուցվածքը: Դիտելով արտադրության կառուցվածքի համեմատ գիտության կազմակերպման պատմական փոփոխությունները՝ կարելի է նկատել հետևյալ առանձնահատկությունը. գիտությունն իր կազմակերպական ձևերում կրկնում է արտադրության կազմակերպումը՝ թեպետև որոշ չափով ետ մնալով նրանից: Այսպես, երբ արտադրությունն ուներ մանուֆակտուրայի ձև, գիտական աշխատանքը կառուցվում էր արհեստավորական արտադրության սկզբունքով՝ յուրաքանչյուր գիտնական անհատապես կատարում էր հետազոտություն, հաճախ ինքն էլ իր համար պատրաստում անհրաժեշտ սարքերը: «Մարդ—մեքենայական տեխնիկա» համակարգի, այսինքն՝ աշխատանքի գործարանային կազմակերպման պայմաններում գիտությունը ձեռք բերեց համքարային կազմակերպության ձև՝ «գիտական մանուֆակտուրաների» նման մի բան, ապա երևան եկան գիտական ինստիտուտներ և լաբորատորիաներ:

Այժմ, արտադրության ավտոմատացված ձևերի ժամանակաշրջանում, գիտությունը ստացել է գործարանային կազմակերպության ձև, ստեղծվել են գիտաարտադրական միավորումներ՝ գիտական աշխատանքի բաժանմամբ և հետազոտությունների մասնագիտացմամբ, «գիտությունը դարձել է որոշակի խմբերի՝ գիտաշխատողների կողմից իրականացվող հոգևոր ինդուստրիայի յուրահատուկ տեսակ» («Философские науки», № 6, 1984, стр. 65): Գիտության կազմակերպման ժամանակակից այդ առանձնահատկությունը սուր կերպով դնում է երկրի մասշտաբով հետազոտությունները կոորդինացնելու պրոբլեմը:



Գիտական հետազոտությունների ողջ համակարգը պետք է լինի ավելի ճկուն: Այժմ մեծ գիտության ջանքերը՝ տեսական պրոբլեմների մշակման հետ մեկտեղ կապելով պրակտիկայի և փորձառական կիրառման հետ, ավելի մեծ չափով են կենտրոնացվում ժողովրդատնտեսական արմատական հարցերի լուծման վրա, այնպիսի հայտնագործությունների վրա, որոնք կարող են արմատական փոփոխություններ մտցնել արտադրության մեջ:

Գիտնականների առավելագույն ուշադրությունը պահանջող գործնական խնդիրների ձևավորումը կենտրոնական պլանավորող և տնտեսական մարմինների գործն է: Դրա հետ մեկտեղ գիտությունն ինքն էլ պետք է մշտապես լինի «հանգրվանության խռովիչ», ցույց տալով, թե ո՞ր տեղամասերում է նկատվել լճացում և որո՞նք են ետ մնացել, թե որտեղ կարելի է առաջ շարժվել ավելի արագ: Այդ աշխատանքը կառավարման մեխանիզմի անբաժանելի մասն է:

Ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղություններում հատուկ բաժին է հատկացված գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը և գիտության զարգացմանը: Այստեղ անհրաժեշտ է համարվում ապահովել քաղաքական ու տնտեսական վճռական խնդրի լուծումը՝ ըստ ամենայնի արագացնել գիտատեխնիկական առաջադիմությունը, վճռականորեն բարձրացնել գիտության ու տեխնիկայի դերը արտադրողական ուժերի որակական վերակառուցման մեջ:

Մեր հանրապետությունում մշտական ուշադրություն է նվիրվում գիտության զարգացմանը, արտադրության հետ նրա կապերի ամրապնդմանը: Մի շարք գիտական հետազոտությունների արդյունքները ներդրվել են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում:

Վերլուծելով գիտական հաստատությունների կատարած բեղմնավոր աշխատանքը՝ ՀԿԿ XXVIII համագումարը միաժամանակ նշեց, որ հանրապետության գիտությունների ակադեմիայի ինստիտուտների, ճյուղային գիտահետազոտական հիմնարկների ու բուհերի գործունեության մեջ մենք դեռևս լուրջ վերափոխումների չենք հասել: Հանրապետության գիտական պոտենցիալի օգտագործումը տակավին ցածր է նրա ունեցած հնարավորություններից:

Շատ անելիքներ կան հիմնարար գիտությունների հետագա զարգացման գործում: Գիտական հիմնարկներն առայժմ հարկ եղածին պես չեն ազդում հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման վրա: Այդ կապակցությամբ համագումարը ուշադրություն հրավիրեց հիմնարար և կիրառական հետազոտությունների մի շարք կարևորագույն ուղղություններում, այդ թվում՝ հանքային հումքի կոմպլեքսային օգտագործման, էներգիայի վերականգնվող աղբյուրների, տեսական կիբեռնետիկայի ու ռոբոտատեխնիկայի, գիտական սարքաշինության, անթափոն և ռեսուրսախնայող տեխնոլոգիաների, կենսատեխնոլոգիայի տընտեսագիտական հետազոտություններում մաթեմատիկական մեթոդների կիրառման, սոցիոլոգիայի բնագավառներում նկատվող հապաղման վրա:

Գիտատեխնիկական առաջընթացի հանգուցային ուղղություններից է ինֆորմատիկայի և հաշվողական տեխնիկայի զարգացումը: Մենք գիտաարտադրական զարգացած բազա ունեցող հանրապետություն ենք, սակայն այդ բազան օգտագործվում է ոչ բավարար չափով, ոչ ռացիոնալ և ոչ կոմպլեքսայնորեն: Նույն պահանջներն են առաջադրվում նվազ էներգատար և նվազ նյութատար տեխնոլոգիաների ստեղծման համար էներգիայի, ռեսուրսների կորուստների բացառման նպատակով կատարվող հետազոտություններին:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման առաջավոր գիծն անցնում է գիտության միջով, որն այսօր դիտվում է որպես տնտեսական ստրատեգիայի գլխավոր ուղղություն, որպես ինտենսիվացման հիմնական լծակ:

Գիտական նվաճումների իրականացումն ապահովում է ազգային եկամտի հավելաճի կեսից ավելին և աշխատանքի արտադրողականության աճի մոտավորապես երկու երրորդը: Ահա թե ինչու կուսակցությունն ուժեղացրել է գիտությանը ներկայացվող պահանջները տեխնիկայի, տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների տեսական հիմքերի ստեղծման համար: Այդ են պահանջում մեր ժողովրդական տընտեսության շահերը, և այդպիսի խնդիր է առաջադրված ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից:

---

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԽԹԱՆՈՒՄԸ ՈՉ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ

**Կ. ԱՌՈՒՍՏԱՄՈՎԱ**

ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արագացման ստրատեգիական կուրսը խթանում է սովետական մարդկանց աշխատանքային գործունեության հետագա ակտիվացումը: Այդ գործոնի իրացման հարցում հսկայական նշանակություն ունեն բաշխման հարաբերությունները, ամենից առաջ՝ ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի հետևողական իրականացումը, դրա խթանիչ դերի ուժեղացումը, որի օբյեկտիվ անհրաժեշտությունը լիովին պահպանվում է սոցիալիստական հասարակարգի համակողմանի կատարելագործման պայմաններում:

Դրա հետ մեկտեղ, վերջին տարիներին, այդ կենսական ոլորտում կուտակվել են մի շարք չլուծված պրոբլեմներ, որոնք հանգեցնում են նյութական խթանների գործունեության նվազեցման, համահավասարեցման տարրերի ուժեղացման, աշխատանքի արտադրողականության աճի դանդաղեցման: Ահա թե ինչու, ՍՄԿԿ XXVII համագումարն այդ կարևոր ասպարեզում նյութական խթանման վճռական բարելավումը համարեց սոցիալ-տնտեսական մեծ նշանակություն ունեցող խնդիր: Համագումարի առաջադրած բարդ և համակողմանի ծրագիրն ընդգրկում է ժողովրդական տնտեսության ինչպես արտադրական, այնպես էլ ոչ արտադրական ոլորտները:

Ոչ արտադրական ճյուղերում նյութական խթանման կատարելագործման հարցերի վերլուծությունը, գիտական գրականության մեջ նշված պրոբլեմների մշակվածությունը, մեր կարծիքով, լիովին չեն բավարարում այդ ոլորտի գործնական պահանջները և ակնհայտորեն զիջում են նյութական արտադրության ճյուղերում կատարվող համանման հետազոտություններին:

Բաշխման հարաբերությունները, ինչպես հայտնի է, առավել սերտորեն են շաղկապվում մարդկանց շահերի, նրանց նյութական շահագրգռվածության հետ: Սոցիալիզմի օրոք, անմիջական հասարակական աշխատանքի սոցիալ-տնտեսական անհամասեռության պայմաններում, նյութական շահագրգռվածությունը կապակցում է մարդկանց աշխատանքի արդյունքները և պահանջմունքների բավարարման աստիճանը՝ դրանով իսկ հանդես գալով նրանց աշխատանքային ակտիվության խթանողի դերում: Աշխատավարձի բարձրացման նկատմամբ աշխատողի շահագրգռվածությունը, իր հերթին, հարուցում է ոչ միայն անձնական, այլև կոլեկտիվ, հասարակական նյութական շահերի իրացում, ծառայում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, հասարակական արտադրության արդյունավետության աճին:

Աշխատավորների նյութական շահագրգռվածությանը, նրանց աշխատանքի խթանմանը մեծ նշանակություն է տվել Վ. Ի. Լենինը: «Առանց անձնական շահագրգռվածության ոչինչ չի ստացվի: Պետք է **կարողանալ** շահագրգռել» (**ԵԼԺ**, հ. 53, էջ 319): Շահագրգռության պրոբլեմը քննարկելով հետևողական մատերիալիստական դիրքերից՝ Վ. Ի. Լենինը նախազգուշացնում է. «Բավական չէ գյուղացիներին և բանվորներին ասել՝ ուժեղացրե՛ք աշխատանքային կարգապահությունը: Բացի դրանից, հարկավոր է օգնել նրանց, հարկավոր է վարձատրել այնպիսիներին, որոնք անհուն թշվառություններից հետո շարունակում են աշխատանքի ճակատում հերոսություն ցուցաբերել» (**ԵԼԺ**, հ. 42, էջ 187): Նա ընդգծել է, որ «...պետությունը ոչ



միայն համոզում է, այլև լավ աշխատողներին վարձատրում է կյանքի լավագույն պայմաններով» (նույն տեղը):

Նյութական շահագրգռվածության խթանման ելակետը աշխատանքի քանակի և որակի համաձայն նյութական ու հոգևոր բարիքների հիմնական զանգվածի բաշխումն է, որը արտադրական ինտենսիվ գործունեության, շահերի և խթանների ամրապնդման կարևորագույն միջոց է: Միաժամանակ անհրաժեշտ է նկատի ունենալ, որ, չնայած շահերի և խթանների հետ ունեցած սերտ կապին, ըստ աշխատանքի բաշխման օրենքը համարժեք չէ դրանց: Այլ կերպ ասած՝ այդ օրենքի օբյեկտիվ պահանջները դեռևս չեն ապահովում մարդկանց լավ աշխատելու շահագրգռվածությունը: Ըստ աշխատանքի բաշխման օրենքը գործել է սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում, սակայն նյութական շահագրգռվածությունը ոչ միշտ է լիովին ապահովվել:

Շահագրգռվածության առանձնահատկությունն այն է, որ նրա ծագումը և դինամիկան դետերմինացվում են ոչ միայն օբյեկտիվ պայմաններով, այլև այնպիսի սուբյեկտիվ գործոններով, ինչպիսիք են նյութական խթանման ձևերի ու մեթոդների կատարելագործման արդյունավետ միջոցառումների ժամանակին մշակումը, դրանց նպատակամղումը յուրաքանչյուր աշխատողի և ամբողջությամբ վերցրած կոլեկտիվի աշխատանքային հատույցի մեծացմանը, վերջնական արդյունքների նկատմամբ նրանց շահագրգռության ուժեղացմանը: Ընդ որում խթանման ամբողջ համակարգի գործունեության բարձրացումն անմիջականորեն պայմանավորված է այն բանով, թե որքանով են վարձատրության մեջ արտացոլվում աշխատանքի արդյունքները, նրա քանակը և որակը:

Նյութական խթանման պրոբլեմների մշակման ակտիվացումը վերջին տարիներին մեծապես նպաստել է այն բանին, որ աշխատանքի վարձատրությունն ավելի լրիվ է համապատասխանեցվում սոցիալիստական բաշխման տնտեսական օրենքի պահանջներին: Այդ առումով որոշակի փորձ է կուտակվել նյութական արտադրության ոլորտում, հատկապես այն տնտհաշվարկային բրիգադներում ու ձեռնարկություններում, որտեղ կիրառվում են աշխատանքի կազմակերպման ու վարձատրման նոր ձևերը:

Ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի արդյունավետ կիրառման դժվարությունները մեծապես պայմանավորված են տեսական մի շարք հարցերի անբավարար մշակվածությամբ: Մասնավորապես դա վերաբերում է անհատական աշխատանքի քանակի, որակի ու բարդության, ինչպես նաև նմանատիպ գործունեության մեջ աշխատանքային ոչ համադրելի ծախսումների գնահատման՝ գիտական հատուկ չափանիշների բացակայությանը, որը լրջորեն խոչընդոտում է աշխատանքի արդյունքների և վարձատրության միասնության ապահովումը: Նույնիսկ արտադրական ճյուղերում, այդ թվում նաև արդյունաբերության մեջ, որտեղ առկա է ծախսված աշխատանքի այնպիսի ստույգ ցուցանիշ, ինչպիսին պատրաստի արտադրանքն է, փաստորեն չկա բանվորների, ինժեներների, տեխնիկների աշխատանքի քանակի և որակի գնահատման միասնական չափանիշ: Դրա հետևանքով առհասարակ չի նորմավորվում արդյունաբերական-արտադրական անձնակազմի աշխատողների 22,5 տոկոսի աշխատանքը: Նորմավորման մեջ չի ընդգրկվում ինժեներատեխնիկական աշխատողների մոտ 50 տոկոսը (Е. Л. Маневич, Вопросы труда в СССР, М., Наука, 1980, с. 40—41): Հասկանալի է, որ ոչ արտադրական ոլորտում, որտեղ կիրառվող աշխատանքի ոչ բոլոր ձևերը կարող են բնութագրվել քանակական ու որակական չափանիշներով, վերոհիշյալ պրոբլեմի լուծումը աչքի է ընկնում մեծ բարդությամբ:

Այդ առանձնահատկությունն ընդգծել է դեռևս Կ. Մարքսը՝ նշելով, որ «...ոչ արտադրական ոլորտում որոշակի արդյունքի ստացման համար պահանջվող աշխատանքի քանակի որոշումը նույնքան գուշակելի է, որքան ինքը՝ արդյունքը» (К. Маркс и Ф. Энгельс, т. 26, с. 260):

Իրոք, ոչ արտադրական ոլորտում աշխատանքի յուրահատկությունը, լինի դա առողջապահության մեջ, արվեստում, լուսավորության բնագավառում կամ էլ բնակարանային տնտեսությունում, հնարավորություն չի տալիս այնպիսի հստակությամբ սահմանելու դրա վարձատրությունը, ինչպես արտադրության մեջ, որտեղ անհամեմատ հեշտ է կատարել աշխատանքի արդյունքների հաշվառում: Տվյալ հանգամանքն իր կնիքն է դնում ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործողության

այն առանձնահատկության վրա, որը դրսևորվում է ոչ արտադրական և արտադրական ոլորտներում աշխատանքի վարձատրության սկզբունքների ու մեթոդաբանական հիմունքների էական տարբերությունների մեջ:

Ժողովրդական տնտեսության վիթխարի համակարգը, որն ընդգրկում է երկրի ինքնագործ բնակչության 27 տոկոսը և միավորվում «ոչ արտադրական ոլորտ» անվանումով, ունի մեկ ընդհանուր հատկանիշ՝ նյութական բարիքների ստեղծման բացակայությունը: Այդ ոլորտում զբաղվածների աշխատանքի վարձատրման նկատմամբ կիրառելի է հետևյալ սկզբունքը՝ վարձատրության մեծությունը պայմանավորված է որակավորման աստիճանով: Դա միշտ չէ, որ համապատասխանում է արտադրության մեջ կիրառվող սկզբունքին, ըստ որի վարձատրության մեծությունը կախված է աշխատանքի արդյունքից:

Սակայն այդ ընդհանուր սկզբունքն էլ ոչ արտադրական ոլորտի յուրաքանչյուր կոնկրետ տեղամասում դրսևորվում է յուրովի, որն այստեղ զբաղված մարդկանց աշխատանքի առանձնահատկությունների արմատական տարբերությունների հետևանք է: Այսպես, ստեղծագործական աշխատողների վարձատրությունը կատարվում է ոչ թե ըստ որակավորման, այլ՝ ուղղակի ցուցանիշի-աշխատանքի արդյունքի հիման վրա: Սակայն մինչև օրս ժողովրդական կրթության, առողջապահության, կառավարման մարմինների և մի շարք այլ բնագավառների աշխատողների աշխատավարձի մակարդակի չափանիշը հիմնվում է երկու գործոնի վրա՝ որակավորման (կրթությունը և ստաժը) և զբաղեցրած պաշտոնի: Դրան համապատասխան, ոչ արտադրական ոլորտում վարձատրությունը որոշվում է ըստ որակավորման խմբի կամ ծառայողական սանդղակի:

Ակնհայտ է, որ բավականաչափ արդյունավետ լինելու համար նյութական խրթանման ցանկացած համակարգը պետք է առաջին հերթին հիմնվի աշխատանքի արդյունքների որակական տարբերակման վրա: Այդպիսի տարբերակում պահանջվում է աշխատանքի ամեն մի տեսակի, յուրաքանչյուր մասնագիտության շրջանակներում՝ հաշվի առնելով աշխատողի՝ ու գործի նկատմամբ բարեխիղճ, ստեղծագործական վերաբերմունքը, որակավորումն ու վարպետությունը: Գաղտնիք չէ, որ հաճախ աշխատողները, ունենալով միևնույն կրթական մակարդակը և ըստ մասնագիտության աշխատանքի ստաժը, կարող են զգալիորեն տարբերվել իրենց իրական, այլ ոչ թե ձևական, որակավորման աստիճանով, աշխատանքի արդյունքներով, որը և պետք է հաշվի առնվի վարձատրության չափը որոշելիս: Սակայն իրականում դրան խոչընդոտում է աշխատանքի վարձատրության մակարդակի յուրատեսակ կարգավորումը, որը բացառում է լրացուցիչ եռանդի և ստացված առավել բարձր արդյունքների համար էական հավելում վճարելու հնարավորությունը: Եվ այսօր ոչ արտադրական ոլորտի ճյուղերում վարձատրությունը կարող է բարձրանալ ոչ թե վաստացի ներդրման և աշխատանքի արդյունքներին համապատասխան, այլ միայն պաշտոնական սանդղակով առաջխաղացմամբ:

Որպեսզի աշխատողը առավել որակյալ կատարի իր պարտականությունները, նրա աշխատանքի վարձատրությունը չպետք է բացառապես կախված լինի նրա զբաղեցրած պաշտոնից: Աշխատողների եկամուտների տարբերակումը միայն այն ժամանակ խթանող դեր կխաղա, երբ այն չի հիմնվում միայն ու միայն ըստ պաշտոնի և ըստ վարձատրման խմբերի աշխատողների բաշխման սանդղակի վրա, որտեղ մեկ աստիճանից մյուսին անցնելը կապված է բարդությունների հետ:

Իհարկե, մեր հասարակությունը ձգտում է այնպիսի պայմաններ ստեղծել, որ աշխատողները զանգվածաբար փոխադրվեն առավել բարձր վարձատրվող խմբեր՝ քանակական և որակական առումով իրենց աշխատանքային ավանդի մեծացման հիման վրա: Դրան են նպաստում մարդկանց հանրակրթական և որակական մակարդակի, ինչպես նաև ծառայողական աճի լայն պայմանները: Սակայն դեռևս անբավարար են աշխատողների նյութական խրախուսման հնարավորությունները՝ նույն որակավորման պայմաններում անձնական աշխատանքային ներդրումն ավելացնելու համար: Ըստ էության խոսքը վերաբերում է այն բանին, որ խիստ սահմանափակ է տարբեր քանակի և որակի աշխատանքների վարձատրման տարբերակումը, որը բնորոշ է ոչ արտադրական ոլորտի շատ ճյուղերի համար: Դա մղում է հավասարեցման ուժեղացմանը և հանգեցնում այնպիսի հոգեբանության, երբ մարդիկ մտածում են՝ միևնույն է, որքան էլ լավ աշխատես, ավելին չես ստանա:



Հավասարեցված բաշխման դեպքում լավ աշխատողի և անփույթ աշխատողի աշխատանքը վարձատրվում է միատեսակ: Դա ՍՄԿԿ XXVII համագումարում գնահատվեց որպես մեր սկզբունքների կոպիտ խախտում: Դա «անթույլատրելի խեղաթյուրումն է սոցիալիզմի հիմնական սկզբունքի՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի, որտեղ ամփոփված է նոր հասարակարգի սոցիալական արտադրության էությունը»:

Աշխատողների ստեղծագործական նախաձեռնության, աշխատանքի լավագույն արդյունքների համար նրանց շահագրգռվածության բարձրացմանը և դրա հետ մեկտեղ հավասարեցման տարրերի հաղթահարմանը կհամապատասխանի նյութական վարձատրության այնպիսի համակարգը, որի դեպքում զգալիորեն կտարբերակվեն միևնույն զբաղմունքի մարդկանց աշխատանքի վարձատրության չափերը, երբ տարբեր է նրանց աշխատանքային ներդրումը: Այստեղ միայն պարգևատրումներով, որքան էլ դրանց չափերը մեծ լինեն, խնդիրը չի լուծվի, քանի դեռ չի շոշափվել հիմնական աշխատավարձը՝ պաշտոնական դրույքը:

Ուստի նպատակահարմար է ոչ թե տարիֆային համակարգում սահմանել աշխատավարձի կայուն չափը՝ երկար ժամանակի համար, այլ ունենալ շարժական, փոփոխական ցանց՝ բավականին լայն ընդգրկումով, որի կիրառումը պայմանավորված կլինի աշխատանքի կոնկրետ արդյունքներով: Ընդ որում աշխատավարձերի վերանայումը, որպես կանոն, պետք է կատարվի ամեն տարի: Առավել սակավ վերանայումները նվազեցնում են խթանման՝ քննարկվող համակարգի արդյունավետությունը: Պարզ է, որ աշխատավարձերի տարբերակման կոնկրետ չափերը կարող են որոշվել միայն կոնկրետ պայմաններում:

Այդ ամենի հետևանքով, անշուշտ, կուժեղանա աշխատանքի վարձատրության տարբերակումը: Սակայն, որոշ տնտեսագետների կարծիքով, դա տեղի կունենա հիմնականում ոչ թե ժողովրդական տնտեսության մասշտաբով (այստեղ ծայրամասային խմբերի միջև եղած ճեղքվածքը ավելի շուտ կնվազի), այլ աշխատավորների ճյուղային և մասնագիտական խմբերի շրջանակներում (К. И. Микульский, Социально-экономическая политика в социалистическом обществе, М., 1978, с. 263):

Տարբերակման այդպիսի ուժեղացումը անհրաժեշտ է դիտել որպես ըստ աշխատանքի բաշխման պահանջների հետևողական կիրառման էական պայման: Միաժամանակ հրատապ է բաշխման առավել գործուն ուղիների և միջոցների մշակումը: Հայտնի է, որ աշխատավարձի վաստակը հաճախ ավելանում է ձեռնարկված ընդհանուր միջոցառումների հետևանքով՝ անկախ հասարակական արտադրության մեջ տվյալ պրոֆեսիոնալ խմբի կամ ճյուղի ներդրումից: Անշուշտ, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում զբաղված մարդկանց աշխատանքի վարձատրության ճիշտ համամասնություն սահմանելու հետ մեկտեղ, աշխատավարձի մասսայական բարձրացումներն ունեն սոցիալական խոշոր նշանակություն: Դրանք մեծապես նպաստում են աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը, նկատելիորեն խթանում աշխատանքի արտադրողականության աճը և այլն:

Դրա հետ մեկտեղ, աշխատանքի չափի և նրա վարձատրության փոխկապակցությունը մնում է չլուծված: Նպատակահարմար է այնպիսի ուղիների որոնումն ու գործնական կիրառումը, որոնք հնարավորություն կտային ուժեղացնել աշխատանքի վարձատրության կապը աշխատանքային հատույցի անհատական խթանման հետ՝ միաժամանակ ոչ արտադրական բոլոր ճյուղերում, ըստ աշխատանքի և նրա արդյունքների բարդության, պատասխանատվության աստիճանի և որակի: Այդ ոլորտի աշխատողների դրույքների և ռճիկների վերանայման խնդիրն անխզելիորեն առնչվում է այն պրոբլեմի հետազոտման հետ, թե տարբեր կատեգորիաների աշխատողների համար ռեալ աշխատավարձի ինչպիսի կոնկրետ աճը կարող է շոշափելի արդյունքներ տալ աշխատանքի արդյունքների բարելավման գործում: Այդպիսի հետազոտության ելակետը արդի ժամանակաշրջանում նյութական խթանների գործողության մեխանիզմում տեղի ունեցող փոփոխությունների հաշվառումն է: Ուշադրության արժանի է մասնավորապես այն փաստը, որ բնակչության նյութական ապահովվածության և կուլտուրայի ձեռք բերված մակարդակի պայմաններում աշխատողների եկամտի աճի և նրանց նյութական շահագրգռվածության բարձրացման փոխկախվածությունը նկատելիորեն բարդանում է: Շահագրգռվածության նկատելի աճ է

տալիս միայն եկամուտների էական ավելացումը: Տեղի է ունենում նյութական խրախուսման ձևերի շոշափելիության և գործունեության «մասշտաբի» յուրօրինակ աճ:

Երբ բնակչության հիմնական զանգվածի եկամուտները ապահովում են նրանց հիմնական պահանջմունքների բավարարումը, և սպառողների շահերը աստիճանաբար վերակողմնորոշվում են դեպի երկարատև օգտագործման թանկարժեք իրերի ձեռքբերումը, աշխատավարձի աննշան հավելաճն արդեն կորցնում է իր դերը: Այսպիսի տեսակետի են շատ տնտեսագետներ: Այդ առթիվ Ս. Կիրկեն գրում է. «Աշխատանքի և նյութական խթանման համապատասխանության սկզբունքը իր նպատակին հասնում է միայն այն ժամանակ, երբ խրախուսանքը բավականաչափ շոշափելի է: Հակառակ դեպքում նրա գործողությունը ձևական է և չի հատուցվում կոնկրետ արդյունքներով» («Правда», 15 мая 1985 г.): Յա. Կարկերը գտնում է, որ լարված, ստեղծագործ, պարզապես լավ աշխատանքի համար, որը հասարակական արժեք է ներկայացնում, հարկավոր է առատորեն վարձատրել: Այնպես առատ, որպեսզի հասարակության համար առավելագույն արդյունավետություն տված աշխատողը կարողանա ձեռք բերել ամեն անհրաժեշտը, սակայն ռեալ չափերով և միայն անձնական օգտագործման, ընտանիքի և հոգևոր կյանքի պահանջմունքների բավարարման համար» («Известия», 10 января 1986 г.):

Ոչ արտադրական ոլորտի աշխատողների նյութական խթանման կատարելագործման մյուս ուղղությունը աշխատանքային ստաժի գործոնի առավել լրիվ հաշվառումն է ռոճիկի հարանում ավելացման համար: Իրոք, դժվար է գերագնահատել ըստ մասնագիտության աշխատանքի ստաժի նշանակությունը աշխատողի որակավորման մակարդակի համար: Այլ հավասար պայմանների դեպքում, այսինքն՝ նույնանման կրթության, աշխատանքի պայմանների, առավել մեծ ստաժ ունեցող աշխատողը, անկասկած, ավելի փորձառու է և որակավորված: Առողջապահության բնագավառի աշխատողների նկատմամբ հաջողությամբ կիրառվող այս դրույթը լիովին հաշվի չի առնվում գիտահետազոտական կադրերի, բուհերի, տեխնիկումների դասախոսների, առևտրի, բնակելի տնտեսության և այլ ճյուղերում աշխատանքի վարձատրության մեջ: Այսպես, բարձրագույն դպրոցի մասնագետները, ունենալով միատեսակ կոչում և աստիճան, բայց աշխատանքային տարբեր ստաժ, վարձատրվում են նույն չափով:

Անհրաժեշտ է վերացնել ստաժային խմբերի աններդաշնակությունը, երբ աշխատողների մի կատեգորիայի համար (առողջապահության սիստեմ) նախատեսվում է աշխատավարձի հավելաճ մինչև 30 տարվա ստաժը, իսկ մյուս խմբերի համար ստաժի գործողությունը դադարեցվում է 10 տարվա աշխատանքից հետո (բուհերի դասախոսներ, ԳԱԻ գիտաշխատողներ և այլն): Այս և շատ այլ փաստեր վկայում են այն մասին, որ ոչ արտադրական ոլորտի շատ ճյուղերում հասունացել է աշխատողների նյութական խթանման կատարելագործման ոչ թե մասնակի, այլ կոմպլեքսային լուծման անհրաժեշտությունը:

Հիրավի, աշխատանքի վարձատրման մինչև այսօր կիրառվող սկզբունքները ձևավորվել են դեռևս 1931 թ. տարիֆային ռեֆորմի համաձայն: Դրանք, իհարկե, կատարելագործվել են, կոնկրետացվել, բայց իրենց հիմքով արդեն վաղուց ետ են մնացել ժամանակի պահանջներից, քանի որ անցած ժամանակաշրջանում մեծ փոփոխությունների են ենթարկվել ինչպես աշխատանքի բնույթը, այնպես էլ նրա բովանդակությունը, ընդհանուր առմամբ՝ երկրի արտադրողական ուժերը: Իսկ «մնացորդային հատկացումների» սկզբունքի պայմաններում, հատկապես վերջին երկու տասնամյակում, դա հանգեցրել է ոչ արտադրական ոլորտում աշխատանքի վարձատրության աճի էապես ետ մնալուն՝ ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության և մասնավորապես նյութական արտադրության մեջ զբաղվածների աշխատավարձի աճի համեմատ: Այսպես, եթե ժողովրդական տնտեսության մեջ միջին աշխատավարձը 1983 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, աճել է մոտ 2,3, իսկ նյութական արտադրության ոլորտում՝ ավելի քան 2,5 անգամ, ապա ոչ արտադրական ոլորտում՝ միայն 2 անգամ:

Պատկերն ավելի պարզ է դառնում, երբ այդ նույն ժամանակաշրջանի աշխատավարձները համեմատում ենք բացարձակ թվերով: Այսպես, եթե ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ այն միջին հաշվով ավելացել է 91,4 ռուբլով, այդ թվում՝ արդյունաբերության մեջ 108,4, տրանսպորտում՝ 127, իսկ շինարարության



մեջ՝ 132,6 ռուբլով, ապա առողջապահությունում՝ միայն 72,7, ժողովրդական կրթության համակարգում՝ 67,2, կուլտուրայի ցանցում՝ 66,3, գիտության և գիտական սպասարկման բնագավառում՝ 83,8 ռուբլով: Աճի այդպիսի տարբերության օրինակ է այնպիսի կարևորագույն բնագավառը, ինչպիսին գիտությունը և գիտական սպասարկումն է, որը աշխատավարձի մակարդակով 1940—60-ական թվականներին ժողովրդական տնտեսության մեջ առաջին տեղն էր գրավում, այժմ իջել է չորրորդ տեղը՝ զիջելով շինարարությանը, տրանսպորտին և արդյունաբերությանը: Կուլտուրան, ինչպես 40-ական թթ., շարունակում է մնալ վերջին տեղում՝ ժողովրդական տնտեսության 13 ճյուղերի մեջ: Հասկանալի է, որ ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության և հատկապես նյութական արտադրության ոլորտի համեմատությամբ ոչ արտադրական ոլորտի աշխատավարձի աճի ետ մնալը հավասարապես վերաբերում է նաև մեր հանրապետությանը:

Միանգամայն բնական է, որ սոցիալական այս հասունացած հարցերն իրենց արժանի արծարծումը գտան ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում: Խնդիր է դրված «Բարելավել աշխատավարձի չափերի հարաբերակցությունը ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի, ինչպես նաև ըստ աշխատավորների տարբեր կատեգորիաների՝ հաշվի առնելով կատարվող աշխատանքների բարդությունն ու պայմանները» (**ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 77):

Հաղթահարելով աշխատանքի վարձատրության հարցում ճյուղային տարբերակումը՝ կուսակցության սոցիալական նոր քաղաքականությունը կնպաստի այնպիսի մոտեցման վերանայմանը, ըստ որի սպասարկման ոլորտում աշխատանքը գնահատվել է ավելի ցածր, քան նյութական արտադրության հետ կապված ճյուղերում:

Արդի պայմաններում, երբ ոչ արտադրական ոլորտը զարգանում է արագ տեմպերով, բայց տակավին լիովին չի բավարարում սպասարկումների նկատմամբ անընդհատ աճող պահանջմունքները, այդպիսի տեսակետների պահպանումը չի համապատասխանում աշխատավորների իրական կարիքների ու պահանջների ռեալ հաշվառմանն ու բավարարմանը:

Ակնհայտ է, որ ոչ արտադրական ոլորտի աշխատողների նյութական խթանման համակարգի կատարելագործումը՝ նաև աշխատանքի վարձատրման և տնտեսական խրախուսման մյուս ձևերի կիրառման գործում առկա թերությունների հողի վրա ծագող սոցիալական անցանկալի շատ երևույթների վերացման անհրաժեշտ պայմանն է:

Բաշխման քաղաքականության ասպարեզում ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացումն անկասկած կնպաստի աշխատավարձի խթանող դերի բարձրացմանը, դրանով իսկ՝ մարդկային գործոնի ակտիվացմանը, աշխատավորների սոցիալ-տնտեսական ու աշխատանքային ակտիվության զարգացմանը:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՆՆԿՈՒՆ ՄԱՐՏԻԿԸ

## (Գ. Ն. ԿՈՐԳԱՆՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐԻ պայծառ համաստեղության մեջ իր արժանի տեղն ունի լենինյան կուսակցության գործին կյանքն անմնացորդ նվիրաբերած Գ. Ն. Կորգանովը՝ բոլշևիկների կուսակցության և Բաքվի հերոսական կոմունայի պետական և ռազմական ականավոր գործիչը, հայ ժողովրդի արժանավոր զավակը:

Գրիգոր Նիկոնի Կորգանովը (Ղորղանյան) ծնվել է 1886 թվականի հուլիսի 30-ին Թիֆլիսում, զինվորականի ընտանիքում: Քութայիսիի գիմնազիայում սովորելու տարիներին պատանի Կորգանովը ծանոթանում է մարքսիստական գրականությանը և ակտիվորեն մասնակցում երիտասարդական հեղափոխական խմբակների գործունեությանը: Ռուսաստանում սկսված առաջին ժողովրդական հեղափոխությունն իր ոլորտի մեջ է առնում նաև Անդրկովկասը: Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի, Բաթումի, Կարսի, Ալավերդու և այլ բանվորական կենտրոնների հետ մեկտեղ շարժումն ընդլայնվում ու խորանում է նաև Արևմտյան Վրաստանում: Ոտքի է կանգնում երկրամասի գյուղացիական ապստամբությունների գլխավոր օջախներից մեկը՝ Գուրիան: Շարժման մեջ են ներգրավվում նաև Քութայիսիի բանվորները, դեմոկրատական մտավորականությունը, սովորող երիտասարդությունը:

1905 թ. Գ. Ն. Կորգանովը ընդունվում է ՌՍԴԲԿ շարքերը: Քութայիսիի գիմնազիայի երիտասարդ մարքսիստները, որոնց թվում և Կարգանովը, ղեկավարվելով ՌՍԴԲԿ III համագումարի որոշումներով, ոգեշնչված մասնավորապես «Կովկասի իրադարձությունների առթիվ» նշանավոր բանաձևով, առաջադրում են ցարական ինքնակալության տապալման, բանվորական, գյուղացիական, ազգային հարցերի լուծման հետևողական, բոլշևիկյան պահանջներ, դնում ուսման դեմոկրատացման խնդիրներ: Ուսանողների ցույցին և դասադուլին ակտիվորեն մասնակցելու, բոլշևիկյան թռուցիկներ տարածելու համար Կորգանովը հեռացվում է գիմնազիայի 8-րդ դասարանից: 1906 թվականին նա մեկնում է Բաքու, ուր էքստեռն կարգով ավարտում է միջնակարգ դպրոցը:

Պրոլետարական Բաքուն անգնահատելի բարերար ազդեցություն է ունենում հեղափոխությանը նվիրված երիտասարդ բոլշևիկի վրա: Նա մասնակցում է բանվորական հզոր ցույցերին, լսում է ականավոր բոլշևիկ գործիչների՝ Ստ. Շահումյանի, Պ. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Ս. Սպանդարյանի, Ի. Ֆիոլետովի և այլոց ելույթները, ուժգնացող բանվորական գործադուլների մթնոլորտում անսահման վստահությամբ է համակվում դեպի պրոլետարիատը և նրա բարձրացող շարժումը: Սակայն հեղափոխության պարտությունից հետո վրա հասած ծանր ռեակցիան Բաքվի բոլշևիկներին ևս ստիպում է անցնել խոր ընդհատակ:

Բոլշևիկների դեմ սկսված վայրենի հալածանքի պայմաններում Կորգանովը հեռանում է Բաքվից և 1908 թվականին ընդունվում Մոսկվայի համալսարանի պատմագրական ֆակուլտետը, ուր այդ տարիներին սովորում էին անվանի բոլշևիկներ Ալեքսանդր Մյասնիկյանը, Հովսեփ Ղողոյանը, Սուրեն Հովսեփյանը, Գևորգ Աթարբեկյանը և ուրիշներ: Գ. Կորգանովը պատմություն, բանասիրություն, փիլիսոփայություն, տնտեսագիտություն, իրավագիտություն ուսումնասիրելուն զուգընթաց եռանդով ձեռնամուխ է լինում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների ուսումնասիրությանը, խորամուխ է լինում Ռուսաստանի սոցիալ-դասակարգային հարաբերությունների, սրվող դասակարգային հակասությունների, դրանց լուծման գիտական ուղիների բացահայտման մեջ: Երկրի առաջնակարգ բարձրագույն հաստատությունում ուսանելը մեծապես օգնում է Կորգանովին՝ դառնալու կիրթ, բազմակողմանիորեն զարգացած բոլշևիկ: Ռուսական դեմոկրատական միջավայրը ամրապնդում է նրա ինտերնացիոնալիստական խոր համոզմունքները: Համալսարանը դեռևս չավարտած՝ Կորգանովը 1911 թվականին զորակոչվում է բանակ, ծառայում հրետանային զորամասերում՝ իր մաշկի վրա զգալով ցարական բանակի խստագույն ռեժիմն ու դաժանությունը:

Վերադառնալով բանակից՝ նա 1914 թվականին հաջողությամբ ավարտում է համալսարանը, սակայն վրա հասած իմպերիալիստական պատերազմը նրան դարձյալ նետում է բանակ: Կորգանովը ծառայության է նշանակվում կովկասյան ռազմաճակատում: Սկսվում է բոլշևիկ գործչի հեղափոխական գործունեության նոր, կարևոր ժամանակաշրջանը: Խուլ, «մոռացված» ռազմաճակատը, ուր պատերազմի սկզբում իշխում էր կեղծ հայրենասիրությունը, մեծագույն ջանքեր էր պահանջում փոքրաթիվ բոլշևիկներից՝ հին բանակի քայքայման, էսէռականության հովերով ապրող բանակը հեղափոխության կազմակերպված ռազմական բռունցքի, դեմոկրատական և ապա սոցիալիստական հեղափոխության հարվածային ուժի, պրոլետարիատի հուսալի զինված դաշնակցի վերածելու մասին լենինյան պահանջների իրականացման համար:

Իմպերիալիստական պատերազմի ընկըզբից մինչև նրա ավարտը Կորգանովը ծառայում էր սկզբում Սարիղամիշի, այնուհետև Կովկասյան ռազմաճակատի՝ Ալաշկերտ—Խնուս—Մուշ գոտում գտնվող Կովկասյան 4-րդ կորպուսի հրետանային զորամասերում: Ռազմաճակատում գտնվող այլ ականավոր բոլշևիկների՝ Պ. Ջափարիձեի, Մ. Կեդրովի, Հ. Ղողոյանի, Ս. Հովսեփյանի, Մ. Օկուջավայի, Հ. Հովսեփյանի, Ֆ. Սոլնցևի, Պ. Արվելաձեի, Տ. Մուսիևի, Ա. Մետելևի և ուրիշների հետ մեկտեղ Գ. Կորգանովը ցարական հալածանքների և ռազմաճակատային կյանքի ծանր պայմաններում մինչև փետրվարյան հեղափոխությունը, հսկայական կազմակերպչական աշխատանք է տանում: Ստեղծվում էին զինվորական կուսակցական կազմակերպություններ, որոնք մերկացնում էին պատերազմի իմպերիալիստական բնույթը, զինվորական շինել հագած բանվորներին ու գյուղացիներին համախմբում բոլշևիկյան կուսակցության դրոշի շուրջը: Բոլշևիկների եռանդուն գործունեությունը Կովկասյան ռազմաճակատում, թիկունքային կայազորներում նրանց մեծ աշխատանքը հսկայական բարերար նշանակություն ունեցան: Առանց այդ աշխատանքի չի կարելի հասկանալ այն հեղափոխական հերոսականությունը, որը համակեց Կովկասյան բանակի զինվորներին 1917 թ. Փետրվարյան հեղափոխության շրջանում:

Ցարիզմի տապալումը նոր իրավիճակ ստեղծեց երկրում: Օգտվելով հեղափոխական մասսաների անփորձությունից, նրանց «բարեխղճորեն մոլորվածությունից» և «հեղափոխական պաշտպանողականությունից» (Վ. Ի. Լենին), բուրժուազիան զավթեց իշխանությունը և հնարավոր դարձավ մանրբուրժուական կուսակցությունների ժամանակավոր հաղթանակը սովետներում: Անդրկովկասում իր իշխանությունը հաստատեց Ժամանակավոր կառավարության դրածո ՕԶԱԿՈՄ-ը (Անդրկովկասյան հատուկ կոմիտե): Երկրամասում և ռազմաճակատում ստեղծված սովետներում, բանակային կոմիտեներում, չնչին բացառությամբ, տերուտնօրեն դար-

ձան էսէռները ու մենշևիկները, բուրժուազգայնական կուսակցությունները: Երկրամասի վարչական կենտրոն Թիֆլիսի բանվորների և զինվորների պատգամավորների սովետում գործի գլուխ կանգնեցին էսէռամենշևիկյան գործիչներ Ն. Ժորդանիան, Ե. Գեգեչկորին, Դ. Դոնսկոյը, Ս. Վերեշչակը, Դ. Պոպովը, Ն. Ռամիշվիլին և ուրիշներ, որոնք իրենց հետադեմ քաղաքականությամբ գերազանցեցին Պետրոգրադի, Մոսկվայի և երկրի այլ խոշորագույն կենտրոնների էսէռամենշևիկյան պարագլուխներին:

Ռազմաճակատում և թիկունքի զորամասերում ռեակցիոն հրամանատարության, ՕԶԱԿՈՄ-ի և էսէռների ու մենշևիկների ջանքերով հալածանք ծավալվեց բոլշևիկների դեմ: Բոլշևիկյան մամուլը, մասնավորապես «Պրավդան», «Կավկազսկի ռաբոչին» դժվարությամբ էին հասնում ռազմաճակատի զինվորներին: Այդպիսի իրադրության մեջ 1917 թվականի ապրիլի 23-ից մինչև մայիսի 24-ը Թիֆլիսում տեղի է ունենում Կովկասյան բանակի առաջին համագումարը, որում իշխում և իրենց կամքն էին թելադրում էսէռներն ու մենշևիկները: Համագումարի պատգամավորների թվում էին շուրջ 20 բոլշևիկներ՝ Ն. Կորգանովը, Ի. Մալիգինը, Ս. Քավթարաձեն, Ն. Կուզնեցովը, Մ. Կեդրովը, Ֆ. Մախարաձեն, Հ. Հովսեփյանը, Ս. Բոգդանովը, Ա. Մետելևը, Ս. Չեռնոմորդիկը (Լ. Լարինով), Հ. Պողոսյանը և ուրիշներ: Համագումարում Կորգանովը գլխավորում էր բոլշևիկյան ֆրակցիան: Ընթացիկ մոմենտի, ժամանակավոր կառավարության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի, ագրարային և այլ հարցերի կապակցությամբ նա բազմիցս հանդես եկավ էսէռների ու մենշևիկների պարագլուխներին, բուրժուական կառավարության գործիչներին մերկացնող ելույթներով՝ քայլ առ քայլ բոլշևիկների կողմը նվաճելով տատանվող շարքային պատգամավորների համակրանքը, իր դեմ հարուցելով համագումարում որպես «պատվավոր հյուր» ներկա գտնվող կովկասյան ռազմաճակատի հրամանատար Յուդենիչի, ինչպես նաև Ժորդանիայի, Դոնսկոյի և կեղծ սոցիալիզմի մյուս աջ գործիչների զայրույթը:

Կորգանովը համագումարում հանդես եկավ «Բանակային պրոֆեսիոնալ կազմակերպությունների մասին» զեկուցմամբ, ուր անողոք պարզորոշությամբ բացահայտեց շարունակվող պատերազմի թալանչիական բնույթը, ցույց տվեց կովկասյան ռազմաճակատի զինվորական մասսաների աննախանձելի դրությունը, նշեց ստեղծված իրադրությունից դուրս գալու ուղիները: Շուրջ երկու ժամ տևած այդ զեկուցման մեջ Կորգանովը մասնավորապես քննադատում էր ռազմական մինիստրներ Գուչկովի և ապա Կերենսկու ապրիլ-մայիսյան հրամանները՝ հեղափոխությունից ծնված բանակային կոմիտեների գործունեությունը սահմանափակելու, զինվորական մասսաների հեղափոխական ստեղծագործությունը մեռցնելու, վերջին հաշվով այդ կոմիտեները իմպերիալիստական բուրժուազիայի շահերին ծառայեցնելու հարցերում:

Կորգանովը վճռականորեն քննադատում էր նաև Գուչկով—Կերենսկու հրամանները «կարգապահական դատարանների» ստեղծման հարցում, հրամաններ, որոնք առաջ բերեցին զինվորական մասսաների զայրույթը: Ժամանակավոր կառավարությունը ցանկանում էր այդ դատարանների միջոցով զսպել քայքայվող բանակի հեղափոխական ոգին, կանխել մասսայական դասալքումը, բանակը նախապատրաստել նոր հարձակման համար: Վախենալով իրենց հեղինակության կորստից, համագումարի աջ գործիչները չհամարձակվեցին մերժել Կորգանովի զեկուցման հիմնական դրույթները, և արդյունքը ստացվեց փայլուն: Կորգանովի գլխավորած սեկցիայի մշակած կանոնադրության 35-րդ կետը ազդարարում էր, որ «վաշտերի և այլ կոմիտեների որոշումները պետերի սանկցիայի կարիքը չունեն»: Դրանով բացահայտորեն մերժվում էր Կերենսկու հրամանի ամենառեակցիոն պահանջը: Բացառիկ ուշադրության է արժանի համագումարի կցկտուր արձանագրություններում նշված այն միտքը, որ «բոլոր վիճելի կետերը ընդունվեցին զեկուցման ոգով և մի շարք բաժիններում չեն համընկնում Գուչկովի և Կերենսկու հրամանների հետ»:

Իրադարձությունների զարգացմամբ և բոլշևիկյան համարձակ ագիտացիայի ընկատելի ազդեցությամբ իր աշխատանքի ընթացքում դեպի ձախ թեքված համագումարը արդեն մերժում էր ոչ միայն օկտյաբրիստ Գուչկովին, այլև նոր միայն ռազմական մինիստր հռչակված «սոցիալիստ» Կերենսկուն, չնայած վերջինիս սին հեղինակությանը զինվորական լայն շրջաններում: Այդ նշանակում էր, որ հեղա-



փոխության բախտով իսկապես մտահոգված ուժերի համար արդեն կարևոր էին ոչ թե կուռքերը, այլ գործը:

Համագումարում բոլշևիկների փոքրաթիվ, բայց խիզախ խումբը Կորգանովի ղեկավարությամբ, ի լուր կովկասյան ռեակցիայի, բացահայտեց այն հերոսական աշխատանքը, որը լենինյան կուսակցության կովկասյան գործիչները ծավալում էին Տրապիզոնից ու Էրզրումից մինչև Մուշ ու Բիթլիս, Ճատախից մինչև Դիլման, Թավրիզ ու Ղազվին: Բոլշևիկները համագումարում համարձակորեն դնում էին իմպերիալիստական պատերազմին վերջ տալու, ժամանակավոր կառավարությանը չաջակցելու, իշխանությունը սովետներին հանձնելու, կալվածատիրական հողերը բռնագրավելու, սահմանադիր ժողովը շուտափույթ հրավիրելու և այլ արմատական պահանջներ:

Այսպիսով, չնայած բանակային առաջին համագումարում համաձայնողական բլոկի ունեցած ակնհայտ գերակշռությանը, բոլշևիկներն իրենց «հանդուգն» պայքարով բացահայտեցին գիտական սոցիալիզմի արմատական տարբերությունները կեղծ, մանրբուրժուական սոցիալիզմից: Պրոպագանդելով բոլշևիզմը՝ նրանք նպաստեցին հեղափոխական դեմոկրատիայի ներսում դասակարգային հարաբերությունների բյուրեղացմանը, կովկասյան բանակի աստիճանական բոլշևիկացման պրոցեսին: Դրանում էլ պետք է տեսնել երկրամասի կյանքում բանակային առաջին համագումարի և նրանում Գ. Ն. Կորգանովի գլխավորած բոլշևիկյան ֆրակցիայի գործունեության նշանակությունը:

Համագումարից հետո վերադառնալով ռազմաճակատ, Կորգանովը գլխավորեց բանակային բոլշևիկների գործունեությունը, որը համապատասխանում էր հեղափոխության խաղաղ զարգացման ժամանակաշրջանի լենինյան տակտիկային, «Ապրիլյան թեզիսներում» առաջադրված խնդիրներին: Նրա իսկ նախաձեռնությամբ զինվորական բազմաթիվ միտինգներում ընդունված բանաձևերում դատապարտվում էր բուրժուական ժամանակավոր կառավարության միլիտարիստական քաղաքականությունը, Արևմտյան ռազմաճակատում նոր հարձակում նախապատրաստելու նրա ձգտումը: Այդ բանաձևերի զգալի մասը լույս տեսավ կովկասյան բոլշևիկների մարտական օրգան «Կավկազսկի ռաբոչի» թերթում՝ նպաստելով ամբողջ ռազմաճակատի զինվորական մասսաների պրոլետարական գիտակցության ձևավորմանը:

Հունիսյան հարձակման ձախողումից հետո երկրում վրա հասան հուլիսյան իրադարձությունները: Էսէռների ու մենշևիկների բացահայտ դավաճանության պայմաններում ժամանակավոր կառավարությունը հարձակման անցավ բոլշևիկների, սովետների, բանակային կոմիտեների և հեղափոխությունից ծնված այլ դեմոկրատական կազմակերպությունների դեմ: Կովկասյան ռազմաճակատում ևս բոլշևիկների գործունեության համար ըստեղծվեց չափազանց դժվարին իրադրություն: Ռեակցիայի հարձակման այդ ծանր օրերին Կորգանովը մեկնեց Թիֆլիս, Մ. Ցխակայայի և այլ ականավոր բոլշևիկների հետ մեկտեղ գլխավորեց հուլիսի 5—7-ին տեղի ունեցած համաքաղաքային կոնֆերանսի աշխատանքը: Ընդունված բանաձևը պաշտպանում էր Պետրոգրադի պրոլետարիատի և կայազորի վճռական ելույթը, դատապարտում էր բոլշևիկների կուսակցությունը ջախջախելու և նրա առաջնորդներին ձերբակալելու քաղաքականությունը, պահանջում էր կապերը խզել բոլոր իմպերիալիստական երկրներից, դադարեցնել ռազմաճակատում սկսված հարձակումը: Կորգանովը և մյուս բոլշևիկները վճռականորեն դատապարտում էին բանակային երկրամասային էսէռական սովետի գործունեությունը, որը պաշտպանում էր ժամանակավոր կառավարությանը և հակահեղափոխության կողմն անցած այլ ուժերի հետ մեկտեղ ճանապարհ էր հարթում կոռնիլովյան միապետական դավադրության համար:

Պետրոգրադում, կիսալեգալ պայմաններում տեղի ունեցած բոլշևիկների կուսակցության VI համագումարը, ղեկավարվելով լենինյան ցուցումներով, պարզորոշություն մտցրեց հուլիսյան դեպքերից հետո բոլշևիկների տակտիկայի հարցերում: Հեղափոխության խաղաղ զարգացման ժամանակաշրջանն ավարտվեց: Իմպերիալիստական բուրժուազիային ու նրա կամակատարներին կարելի էր տապալել միայն զինված ապստամբության ճանապարհով: Կովկասի բոլշևիկները Ստ. Շահումյանի գլխավորությամբ անվերապահորեն պաշտպանեցին հեղափոխության զարգացման լենինյան նոր տակտիկան: «Կավկազսկի ռաբոչի» թերթում լույս տեսավ 4-րդ կովկասյան հրետանային բրիգադի

1-ին մարտկոցի զինվորական միտինգի բանաձևը, որն ընդունվել էր Կորգանովի ղեկավար մասնակցությամբ: Նրանում ամբողջ կովկասյան բանակի զինվորներին կոչ էր արվում վճռականորեն պաշտպանել բոլշևիկների կուսակցությանը, վերացնել նրա մամուլի վրա դրված արգելքը, կանխել միապետական հաստատող դավադրությունը (տե՛ս «Կավկազսկի ռաբոչի», № 160, 29 սեպտեմբերի 1917 թ.): Եվ եթե Կովկասում և ռազմաճակատում կոռնիլովյան խռովությունը համեմատաբար արագ հաղթահարվեց, ապա այդ հարցում անառարկելի է բոլշևիկների, այդ թվում և Կորգանովի ղեկավարությամբ բանակային բոլշևիկների եռանդուն գործունեության նշանակությունը:

Գ. Կորգանովը ակտիվորեն մասնակցեց կովկասյան բոլշևիկների առաջին համագումարին, որը հրավիրվեց Թիֆլիսում 1917 թ. հոկտեմբերի 2—7-ին: Համագումարի հանձնարարությամբ, նրա աշխատանքների հենց սկզբում նա մեկնեց Քութայիս և համագումարին ճիշտ ինֆորմացիա ներկայացրեց այնտեղ ծավալված բանվորական և զինվորական հեղափոխական շարժման վերաբերյալ: Կորգանովը համագումարում հանդես եկավ ագրարային հարցի քննարկման առթիվ, հարց, որը խորապես հուզում էր զինվորական շինել հագած գյուղացիական զանգվածներին: Նա նշեց, որ «մենք պատրանքներ չպետք է տածենք: Մեր խնդիրն է կազմակերպել այդ զինված գյուղացիական չքավորությանը, որպեսզի, ղեկավարելով այդ զանգվածին, իրագործենք հեղափոխության առաջադրած բոլոր արմատական հարցերը» («Կավկազսկի ռաբոչի», № 172, 13 հոկտեմբերի 1917 թ.):

Նա հարակից զեկուցմամբ հանդես եկավ նաև Սահմանադիր ժողովի վերաբերյալ հարցի քննարկման ժամանակ: Ստ. Շահումյանի և այլ անվանի բոլշևիկների հետ մեկտեղ Կորգանովը պաշտպանում էր այն ճիշտ տեսակետը, որ բանակը չի կարելի մոլորեցնել Սահմանադիր ժողովի վերաբերյալ էսէռա-մենշևիկյան սին պատրանքներով, որ նրա ընտրություններին պետք է մասնակցել ակտիվորեն, բայց հույսը Սահմանադիր ժողովի հետ կապել չէր կարելի: Նա ճիշտ էր կռահում, որ ռեակցիոն ուժերը կդիմեն «ընտրական կանոնների արմատական խախտումների», կկեղծեն ընտրությունների արդյունքները: Հետևաբար, ինչպես նշում էր նա, հույսը պետք էր կապել ոչ թե էսէռների, մենշևիկների և այլոց թըմբկահարած Սահմանադիր ժողովի հետ, այլ հեղափոխության, զինված ապստամբության հետ:

Ագրարային հարցի առթիվ Կորգանովի ելույթների հետ մեկտեղ նրա հիշյալ հարակից զեկուցումը բացառիկ կարևոր նշանակություն ունի կոռնիլովյան դավադրության ճնշումից հետո Կովկասյան ռազմաճակատում ստեղծված դրությունը հասկանալու, բանակում բոլշևիկների գործունեության դժվարությունները և նրանց առջև ծառացած նոր խնդիրները ըմբռնելու համար: Դա փաստորեն համագումարին տրված հաշվետվություն էր՝ կովկասյան բանակում բոլշևիկների բազմաբովանդակ գործունեության վերաբերյալ: Համագումարում Կորգանովը ծավալեց բանակային երկրամասային սովետի գործունեության սուր քննադատություն, նշեց, որ զորամասերն արդեն պահանջում են բանակային համագումարի հրավիրում: Նրանք բացահայտորեն չեն վստահում էսէռա-մենշևիկյան երկրամասային սովետին: Կորգանովը առաջարկում էր ուղղել առաջին համագումարում բոլշևիկների թույլ տված սխալը և զորամասերում ստեղծել ինքնուրույն մարտական բոլշևիկյան կազմակերպություններ, մի բան, որի իրականացման նպատակով նա շուտով եռանդուն գործունեություն ծավալեց:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը Պետրոգրադում ցնծությամբ ընդունեցին նաև Անդրկովկասի աշխատավորները, կովկասյան բանակի զինվորները, որոնք վճռականորեն հանդես եկան Անդրկովկասյան կոմիսարիատի հետադիմական քաղաքականության դեմ: Երկրամասում ստեղծվեց նոր իրադրություն՝ իշխանությունը բոլշևիկների կողմից նվաճելու ռեալ հնարավորության, սոցիալիստական հեղափոխության հաղթական երթի ժամանակաշրջանը: Պայքարի այս նոր փուլում Կորգանովը, ռազմաճակատային ու թիկունքային զորամասերում գործող բոլշևիկները վճռականորեն պաշտպանում էին Ստ. Շահումյանի և այլ ականավոր բոլշևիկների այն տակտիկան, որ Անդրկովկասում իշխանությունը կարելի է նվաճել ոչ թե խաղաղ, այլ զինված ապստամբության ճանապարհով, և որ այդ պայքարում որպես հեղափոխության հաղթանակի գլխավոր հարվածային ուժ պետք է հանդես գան երկրամասի աշխատավորների համակրանքը վայելող կովկասյան բանակի՝ բոլշևիկներին պաշտպանող զորամասերը, որոնք հատկապես տեղաբաշխված էին Թիֆլիսում, Ալեքսանդրապոլում, Սարիղամիշում, Կարսում և այլ վայրերում: Լենինյան այդ քաղաքականության կենսագործման հարցում բացառիկ կարևոր դեր էր պատկանում Կորգանովին:

Նշված տակտիկայի իրագործման ճանապարհին մեծ էր կովկասյան բանակի երկրորդ համագումարի դերը, որը Կորգանովի և մյուս բոլշևիկների ջանքերով հրավիրվեց Թիֆլիսում, 1917 թվականի դեկտեմբերին: Համագումարում բոլշևիկները, դաշնակցած ձախ ուժերի հետ, մեծամասնություն կազմեցին, մի բան, որը անառարկելիորեն վկայում էր կովկասյան բանակի զինվորների տրամադրությունների արմատական բեկումը դեպի բոլշևիզմ: Համագումարում ակնհայտ պարտություն կրեցին ինչպես էսէռներն ու մենշևիկները, այնպես էլ բուրժուաազգայնական կուսակցությունները: Համագումարը վճռականորեն դատապարտեց Անդրկովկասյան կոմիսարիատի հակահեղափոխական քաղաքականությունը, Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից անջատելու նրա դիվային վարքագիծը: Գլխավոր հարցի՝ ընթացիկ մոմենտի առթիվ ընդունվեց Ստ. Շահումյանի առաջարկած բանաձևը: Համագումարն անդրադարձավ նաև ռազմաճակատի մերկացման, Անդրկովկասի ժողովուրդներին թուրքական սպառնալիքից փրկելու օրհասական հարցին: Դաշնակցականները, որոնք պատեհ և անպատեհ առիթներով խոսում էին հայ ժողովրդի անունից, համագումարում հրաժարվեցին համագործակցել բոլշևիկների հետ, որոնք առաջարկում էին միավորել բոլշևիկյան ու ազգային զորամասերի ուժերը ընդդեմ թուրքական սպառնալիքի: Դա պատմական նոր ժամանակաշրջանում դաշնակցների կարճամիտ, անհեռատես քաղաքականության առավել վտանգավոր դրսևորումներից էր:

Համագումարը ընտրեց բանակային նոր երկրամասային սովետ, որում մեծամասնություն կազմեցին բոլշևիկներն ու նրանց պաշտպանող ուժերը: Այդ սովետի նախագահ ընտրվեց Գ. Կորգանովը: Նրա ղեկավարությամբ ընտրվեց նաև սովետի գործադիր մարմին՝ ռազմահեղափոխական կոմիտե, որը պետք է ապահովեր հասունացած չափազանց բարդ խնդիրների լուծումը:

Համագումարից հետո ստեղծված ներքին և միջազգային դժվարին իրադրության պայմաններում Կովկասի բոլշևիկներն իրենց ուշադրությունը կենտրոնացրին Բաքվի վրա, ուր շուտով տեղափոխվեցին կովկասյան գործերի արտակարգ կոմիսար Ստ. Շահումյանը, Կորգանովի գլխավորած ռազմահեղափոխական կոմիտեն: Պայքարելով հին բանակի փլատակների վրա նոր՝ կարմիր բանակ ստեղծելու համար, Կորգանովը շուտով՝ 1918 թըվականի մարտին նշանակվում է Բաքվի և նրա շրջանի հեղափոխական պաշտպանության կոմիտեի անդամ, գլխավորում է այդ կոմիտեի ռազմածովային բաժինը: Նրա ղեկավարությամբ ճնշվում է մուսավաթականների կազմակերպած հակահեղափոխական մարտյան խռովությունը:

1918 թվականի ապրիլին ստեղծվում է Բաքվի առաջին սովետական կառավարությունը: Կորգանովը նշանակվում է ռազմածովային ժողկոմ և հերոսական աշխատանք ծավալում հանուն Բաքվի կոմունայի ռազմական պաշտպանության: Ստ. Շահումյանի, Պ. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Ի. Ֆիոլետովի և մյուս կոմիսարների հետ մեկտեղ նա հակահեղափոխության դեմ պայքարի առաջին շարքում էր: Կորգանովը հատկապես փայլուն գործունեություն ծավալեց Բաքվի վրա գերմանա-թուրքական հարձակման շրջանում՝ ամրապնդելով ռազմաճակատը, բարձրացնելով սովետական զորքերի մարտունակությունը:

Սակայն դաժան պայքարում Բաքվի հերոսական կոմունան պարտվեց: 1918 թըվականի օգոստոսին հակահեղափոխության սև ուժերին հաջողվեց ձերբակալել Բաքվի 26 կոմիսարներին: Սեպտեմբերի 20-ին նրանք չարանենգորեն գնդակահարվեցին:

Ընդամենը 32 տարի ապրեց Գրիգորի Կորգանովը: Նրա գիտակցական կյանքը աննկուն և հերոսական, անմնացորդ պայքար էր հանուն աշխատավոր մարդու սոցիալական ու ազգային ազատագրության սրբազան գործի: Կոմունիստական հասարակարգ կառուցող երախտապարտ սերունդները սրբությամբ են պահպանում լենինյան գվարդիայի զինվորի հիշատակը:

**Հ. ՄԵԼԻՔՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԱՐԴԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

**Ս. ՊԱՊՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ**

Սովետական ժողովուրդը, ողջ առաջադեմ մարդկությունը մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական փաստաթղթերը, որոնք նոր ուղենիշ են հանդիսանում մեր երկրի զարգացման ինտենսիվացման ու արագացման համար: Համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ շեշտվեց, որ լենինյան կուսակցությունը այսուհետև էլ կվարի միջազգային կոմունիստական և բանվորական շարժման, արդիականության հեղափոխական առաջադիմական, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի միասնության, նրանց հետ պրոլետարական համերաշխության հետագա ամրապնդման կուրս: **ՍՄԿԿ-ն միջազգային կոմունիստական շարժման անկապտելի մասն է,**— նշեց Մ. Ս. Գորբաչովը:— Մենք՝ սովետական կոմունիստներս, լավ ենք հասկանում. սոցիալիստական շինարարության ասպարեզում մեր յուրաքանչյուր հաղթանակ նաև ամբողջ շարժման հաղթանակն է: Ուստի ՍՄԿԿ-ն իր գլխավոր ինտերնացիոնալ պարտքը համարում է մեր երկրի հաջող առաջընթացը Հոկտեմբերի բացած ու հարթած ուղիով» (**ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 122):

Մեծ Հոկտեմբերը նշանավորեց կոմունիստական շարքերի սրընթաց վերելքը: Մոտ յոթ տասնամյակ առաջ, երբ բոլշևիկները Լենինի գլխավորությամբ ժողովրդին գրոհի հանեցին կապիտալիզմի դեմ, աշխարհում ընդամենը 400 հազար կոմունիստ կար, որոնցից 240 հազարը՝ Ռուսաստանում: Այդ օրերին կոմունիստական կուսակցություն գոյություն ուներ միայն մեր երկրում, իսկ Գերմանիայում, Բուլղարիայում և մի քանի այլ երկրներում կային կոմունիստների խմբեր: Հոկտեմբերի հաղթանակից հետո առաջին շրջանում աշխարհում կար ընդամենը հինգ կոմունիստական կուսակցություն: Այդ ժամանակներից ի վեր միջազգային կոմունիստական շարժումն ընդգրկել է ամբողջ աշխարհը և վերածվել արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժի:

Չնայած սիստեմատիկ հետապնդումներին և կոմունիզմի դեմ գաղափարաքաղաքական դավերին, մարքսիստական-լենինյան կուսակցությունների շարքերը շարունակում են մշտապես աճել: Եթե 1928 թվականին կոմունիստների թիվն ամբողջ աշխարհում մոտենում էր 1,7 միլիոնի, ապա ներկայումս մոտ հարյուր կոմունիստական և բանվորական կուսակցությունների շարքերում ընդգրկված են ավելի քան 80 միլիոն կոմունիստներ:

Միջազգային հարաբերությունների զարգացման հիմնական միտումը, ինչպես շեշտվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, Սովետական Միության, սոցիալիզմի համաշխարհային ընկերակցության հեղինակության և ազդեցության անշեղ աճն է, իմպերիալիզմի և գաղութատիրության դեմ պայքարող երկրների ու ժողովուրդների նոր հաղթանակները, կապիտալիզմի երկրներում բանվոր դասակարգի պայքարի ակտիվացումը, համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման հետագա ուժգնացումը: Դրա հետ մեկտեղ շարունակվում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման պրոցեսը, աճել է նրա ագրեսիվությունը, որի հետևանքով լրջորեն



սրվել է միջազգային իրադրությունը: Պատմական զարգացման ամբողջ ընթացքը հստակորեն բացահայտում է մարդկության ճակատագրի որոշման հարցում համաշխարհային հեղափոխական պրոցեսի երեք հիմնական ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային բանվորական, կոմունիստական շարժման և ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման առաջատար դերը:

Կոմունիստական և բանվորական շարժման ուժն ու ազդեցությունը միայն նրա մասնակիցների թվով չի որոշվում: Կոմունիստների կողմից տարվող հեղափոխական աշխատանքի իսկական թափն ու արդյունավետությունը կարելի է ճիշտ գնահատել միայն համաշխարհային կոմունիստական շարժման մեջ տարբեր կուսակցությունների գործունեության բովանդակությանը ծանոթանալու դեպքում: Կոմունիստական կուսակցություններին, ելնելով նրանց առջև դրված խնդիրների բնույթից, կարելի է բաժանել երեք խմբի. **առաջին՝** սոցիալիստական 16 երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները, որոնք կազմում են համաշխարհային կոմունիզմի ամենահզոր ջոկատը: **Երկրորդ՝** զարգացած կապիտալիզմի մոտ երեք տասնյակ երկրների կոմունիստական կուսակցությունները, որոնք ղեկավարում են կապիտալիստական երկրների աշխատավորների պայքարն ընդդեմ մոնոպոլիստների գերիշխանության և հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի: **Երրորդ՝** ազգային անկախություն նվաճած կամ հանուն դրա պայքարող 50-ից ավելի կոմունիստական կուսակցությունները: Վերջին քառորդ դարում այս երկրներում առաջացել են կոմունիստական մոտ 30 նոր կուսակցություններ: Արդի կոմունիստական շարժման այս հիմնական ջոկատների կուսակցություններից յուրաքանչյուրը, մասնակցելով ամբողջ աշխարհի կոմունիստների ինտերնացիոնալ ընդհանուր պայքարին, միաժամանակ վճռում է իր ուրույն խնդիրները:

Կառավարող մարքսիստական-լենինյան կուսակցությունների հեղափոխական գործունեության հիմնական բովանդակությունը սոցիալիզմի և կոմունիզմի շինարարությունն է: Դրա համար էլ կոմունիստական շարժման այդ ջոկատի հաջողությունների չափանիշն են, առաջին հերթին, սոցիալիստական երկրների ժողովուրդների ստեղծագործ աշխատանքի արդյունքները:

ՍՄԿԿ XXVII համագումարը ցույց տվեց, որ մեր կուսակցությունը հետևողականորեն շարունակում է Մեծ Հոկտեմբերի գործը, վստահորեն ընթանում լենինյան կուրսով, արժանավայել կերպով կատարում բանվոր դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը:

Կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ նշվում է, որ մեր կուսակցության և պետության արտաքին քաղաքական ամբողջ բազմազան գործունեությունում հատկապես կարևոր տեղ է գրավում սոցիալիստական երկրների ընկերակցության հզորությունն ու համախմբվածությունն ամրապնդելու հոգսը:

Լենինյան պատգամներին հավատարիմ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ստեղծագործաբար է վճռում կոմունիստական շինարարության ծառացած հարցերը:

ՍՄԿԿ XXVII համագումարը որոշեց երկրի ժողովրդական տնտեսության զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական խնդիրները:

Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը մեր կուսակցությունը միշտ էլ դիտել և դիտում է որպես սովետական կոմունիստների ինտերնացիոնալ պարտքը հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի պայքարող բոլոր ժողովուրդների հանդեպ: Նա միշտ էլ երկրի ներսում սոցիալիստական վերափոխումների նպատակներն ու խնդիրները սերտորեն զուգակցել է միջազգային պրոլետարիատի շահերի և խնդիրների հետ:

Հոկտեմբերի անմահ գաղափարների ազդեցության ներքո սկսվեց մոլորակի սոցիալական դեմքի բուռն փոփոխումը: 1919 թ. կապիտալիստական խոշոր պետություններին և նրանց գաղութներին էր պատկանում երկրագնդի 44,4 և բնակչության 48,1 տոկոսը: Ներկայումս նրանք գրավում են աշխարհի տարածքի 9 տոկոսը, որտեղ ապրում է երկրագնդի բնակչության 13 տոկոսը: Սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերած հետագա հաջողությունները վիթխարի թափ հաղորդեցին ազգային-ազատագրական շարժմանը: Տապալվեցին գաղութային

կայսրությունները, որոնց ավերակների վրա ստեղծվեց ավելի քան 100 սուվերեն պետություն։ Հավատարիմ իր ինտերնացիոնալ պարտքին, Սովետական Միությունը եղբայրական օգնություն ցույց տվեց Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների ազատագրական հեղափոխություններին, օգնեց Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդներին։ Ներկայումս էլ նա բազմակողմանիորեն օժանդակում է առաջադիմական, հակաիմպերիալիստական շարժումներին։

Կյանքը լիովին հաստատեց մեծ Լենինի այն հետևությունը, որ ՍՍՀՄ-ի ամրապնդումը հարկավոր էր համաշխարհային պրոլետարիատին՝ պայքարելու համաշխարհային բուրժուազիայի դեմ և պաշտպանվելու նրա խարդավանքներից։ Այսօր սոցիալիզմի ընկերակցության երկրները, կոմունիստական և բանվորական կուսակցությունները, հեղափոխական-դեմոկրատական, առաջադիմական կազմակերպությունները, արհմիությունները, աշխատավորական ամենալայն խավերը բոլոր աշխարհամասերում մեզ հետ միասին ուրախանում են Սովետական Միության պատմական հաջողությունների համար։

Համաշխարհային երկու սիստեմների միջև մրցման արդի փուլում, ինչպես միշտ, հրատապ է մնում Լենինի դրույթն այն մասին, որ համաշխարհային հեղափոխության վրա սոցիալիզմի ներգործության գլխավոր լծակը նրա տնտեսական հաջողություններն են, տեխնիկատնտեսական բազայի ստեղծումը, որը կգերազանցի կապիտալիզմի արտադրողական ուժերը։ Մեր երկիրը արդյունաբերական արտադրանքի ծավալով աշխարհում երկրորդ տեղն է գրավում։ Եթե 1913 թ. մեր երկիրը տալիս էր աշխարհի արդյունաբերական արտադրանքի չորս տոկոսը, ապա այժմ նա արտադրում է ավելի քան 20 տոկոսը։

Միջազգային բոլոր պրոբլեմների մեջ ՍՄԿԿ-ն առանձնապես կարևորում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա համախմբումն ու զարգացումը։ Սովետական Միությունը հետևողականորեն կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը սոցիալիզմի եղբայրական երկրների նկատմամբ։ Անցած հինգ տարում սովետական տեխնիկական աջակցությամբ սոցիալիստական երկրներում կառուցվել կամ կառուցվում է ավելի քան 450 արդյունաբերական ու գյուղատնտեսական օբյեկտ։ ՍՍՀՄ-ը 70 տոկոսով բավարարում է ՏՓԽ-ի երկրների, ինչպես նաև ԿԺԴՀ-ի, Լաոսի պահանջմունքները հումքի ու վառելիքի մի շարք տեսակների նկատմամբ։ Միաժամանակ նա ՏՓԽ-ի երկրներից 54 քիմիական գործարանների համար անհրաժեշտ սարքավորում է ստացել։ Բացի դրանից, վերջին չորս տարիների ընթացքում սովետական նավատորմի համալրված ծովային նավերի տոննաժի ավելի քան 40 տոկոսը պատրաստված է եղբայրական սոցիալիստական երկրների նավաշինարաններում։

Մեր կուսակցությունը, սովետական ամբողջ ժողովուրդը XXVII համագումարում փաստորեն համաշխարհային պրոլետարիատի, աշխարհի բոլոր աշխատավորների առջև հաշվետու եղան իրենց գործունեության մասին։ Եվ դա բնական է, քանի որ ՍՄԿԿ-ն ելնում է ազգային և ինտերնացիոնալ խնդիրների միասնությունից ու անբաժանելիությունից։ Գիտակցելով իր ինտերնացիոնալ պարտքը, ՍՄԿԿ-ն այսուհետ ևս միջազգային գործերում կվարի այնպիսի գիծ, որը նպաստում է համաշխարհային հակաիմպերիալիստական պայքարի հետագա ակտիվացմանը։

Սովետական պետությունը միշտ իր պարտքն է համարել և համարում է մարքսիզմ-լենինիզմի հիման վրա սոցիալիստական երկրների ընկերակցության հետագա ամրապնդման համար ակտիվորեն պայքարելը։ Ոչ ոքի վզին չփաթաթելով սոցիալիզմի կառուցման իր փորձը, մեր կուսակցությունը այն սիրով հաղորդում է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մյուս ջոկատներին։ Ուսումնասիրելով մեր փորձը, եղբայրական երկրներն այն ստեղծագործորեն կիրառում են իրենց կոնկրետ պայմաններում։

«Քսաներորդ դարում,— նշվում է Քաղաքական զեկուցման առթիվ ընդունված բանաձևում,— առաջադիմությունը իրավացիորեն կապվում է սոցիալիզմի հետ։ Համաշխարհային սոցիալիզմը միջազգային հզոր կազմավորում է։ Նա հենվում է բարձր զարգացած էկոնոմիկայի, ժամանակակից գիտական բազայի, հուսալի ռազմաքաղաքական պոտենցիալի վրա։ Սոցիալիզմը մշտապես ցուցադրում է հասարակական պրոբլեմները սկզբունքորեն այլ՝ կոլեկտիվիստական հիման վրա լուծելու հնարավորությունները, այդ ուղիով ընթացող երկրներին դուրս է բերել զարգացման ավելի բարձր բնագծեր»։

ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը իրենց միջազգային քաղաքականության կոչումը տեսնում են խաղաղության ամրապնդման մեջ, որը մեզ հարկավոր է կոմունիզմ կառուցելու, աշխարհում դեմոկրատիայի և առաջադիմության հաղթանակի համար։ Ուստի մենք այսուհետ ևս կհակազդենք ագրեսիայի քաղաքականությանը և կնպաստենք ամբողջ աշխարհում այն պայմանների վերացմանը, որոնք ագրեսիվ պատերազմներ են ծնում։

Ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության բնագավառում Սովետական Միությունը հետևում է բոլոր ազգերի իրավահավասարության և ինքնորոշման իրավունքի հարգման լենինյան գաղափարներին։ Դրա հետ սերտորեն կապված է ուրիշ երկրների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքը։ Իհարկե, մենք համակրում ենք այն ամենը, ինչ դեմոկրատական է ուրիշ երկրներում, սակայն այդ համակրանքը, բարոյական, գաղափարական աջակցությունը ոչինչ ընդհանուր չունի հեղափոխություն արտահանելու կամ «պատվերով» հեղափոխություն կատարելու հետ։

Սովետական Միությունը միշտ էլ պաշտպանել է բոլոր երկրների միջև լայն տնտեսական կապերի հաստատման անհրաժեշտությունը։ Այժմ մեր երկիրը առևտուր է անում ավելի քան 130 պետությունների հետ՝ տարեցտարի ավելացնելով իր արտաքին առևտրի ծավալը, որը 1985 թ. կազմեց 141 **մլրդ** ռուբլի։

Ժողովուրդները ներկայումս մեծ հույսեր են կապում առաջիկայում նախատեսված սովետաամերիկյան նոր բանակցությունների հետ։ Շնորհիվ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հանուն խաղաղության և անվտանգության մղած ակտիվ պայքարի, լավատեսական հեռանկարներ են բացվում խաղաղ գոյակցության զարգացման համար։ Դրանով ավելի է աճում Սովետական Միության, սոցիալիզմի մյուս երկրների միջազգային հեղինակությունը։ Համաշխարհային քաղաքականության լայն ասպարեզ են դուրս եկել շատ նոր պետություններ, որոնք իրենց անկախությունը նվաճեցին իմպերիալիզմի դեմ մղած պայքարում։ Գաղութային ճնշման ծանր ժառանգությունը վերացնելու համար այդ երկրները խաղաղության կարիք ունեն։ Նրանք ջերմորեն պաշտպանում են Սովետական Միության խաղաղասիրական ջանքերը։

ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած արտաքին քաղաքական ծրագրի կենսագործման համար Սովետական Միության հետևողական և նպատակասլաց պայքարն ավելի ու ավելի շոշափելի արդյունքներ է տալիս, ընդլայնում խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների ու ժողովուրդների համագործակցության ոլորտը։ Եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորները, համաշխարհային առաջադեմ հասարակայնությունը խոր գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի վերջին ժամանակաշրջանում կատարած այցելությունների արդյունքները։

Սովետական մարդիկ, միահամուռ պաշտպանելով խաղաղ գոյակցության քաղաքականության իրականացման ասպարեզում մեր կուսակցության վարած սկզբունքային քաղաքականությունը, անձնվեր աշխատանքով բազմապատկում են սոցիալիստական հայրենիքի ուժն ու հզորությունը՝ դրանով իսկ ամրապնդելով ժողովուրդների կայուն խաղաղության ու անվտանգության հիմքերը։

Անշուշտ, այնպիսի բարդ գործում, ինչպիսին է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը, դժվարություններ ու թերություններ էլ կան։ Սակայն գլխավորն ակնառու է՝ յոթ տասնամյակից պակաս ժամանակամիջոցում սոցիալիզմը բանվոր դասակարգի բազմաթիվ սերունդների երազանքից վերածվեց համաշխարհային մեծ և անպարտելի ուժի։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ոչ մի ջանք չի խնայում սոցիալիզմի երկրների համախմբվածության ամրապնդման համար։ 1985 թ. տեղի ունեցան եղբայրական կուսակցությունների ղեկավարների երկկողմ ու բազմակողմ կարևոր հանդիպումներ։ Ավելի ու ավելի ինտենսիվ բնույթ է կրում քաղաքականության, էկոնոմիկայի ու գաղափարախոսության հրատապ հարցերի շուրջ կարծիքների փոխանակությունը։

Սոցիալիստական երկրների համագործակցությունը և փոխօգնությունը տնտեսական ու քաղաքական անհրաժեշտություն են: Նրանք շահագրգռված են միմյանց հետ սերտ կապեր հաստատել, քանի որ դրանք նրանց անկախության և ազգային սուվերենության ամրապնդման, արագ ու հաջող զարգացման երաշխիքն են, ստեղծում են ժողովրդի նյութական բարեկեցության անընդհատ աճ, ապահովում սոցիալ-տնտեսական ու մշակութային զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցում: Առանց սոցիալիստական պետությունների դաշինքի, առանց նրանց փոխօգնության անհնարին է լուծել սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բարդ խնդիրները, կազմակերպել յուրաքանչյուր սոցիալիստական երկրի և ամբողջ ընկերակցության հուսալի պաշտպանությունը: Որքան սերտ են համախմբված սոցիալիզմի երկրները, այնքան ավելի համաձայնեցված են նրանց գործողությունները, այնքան ավելի ուժեղ է նրանց ազդեցությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսի ընթացքի վրա:

Սոցիալիստական երկրների գոյությունն ու հաջողությունները լուրջ ազդեցություն են գործում սոցիալական ուժերի հարաբերակցության վրա նաև կապիտալիստական երկրներում, նրանց կառավարող շրջաններին ստիպում ավելի հաճախ զիջումներ անել աշխատավորությանը:

Արտադրության կապիտալիստական ձևին յուրահատուկ հակասությունների խորացմանը զուգընթաց, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման գործում հետզհետե ավելի կարևոր դեր են խաղում կապիտալի երկրների բանվոր դասակարգն ու նրա մարքս-լենինյան ավանգարդը՝ կոմունիստական և բանվորական կուսակցությունները: Կապիտալի երկրների կոմունիստական կուսակցությունները գլխավորում են մասսաների պայքարը մոնոպոլիաների դեմ, դասակարգային մարտերում կոփում են հեղափոխության քաղաքական բանակը: Այդ երկրներից շատերում այժմ կոմունիստական կուսակցությունները խորապես ազդում են ամբողջ ազգային կյանքի վրա: Կոմունիստների շրջանից դուրս են գալիս հասարակական և քաղաքական խոշոր գործիչներ, աշխատավորության գործի անձնուրաց մարտիկներ:

Չնայած բուրժուական գաղափարախոսների կողմից կոմունիստներին զրպարտելու, աշխատավոր մասսաներից նրանց մեկուսացնելու փորձերին, հետադիմությանը չի հաջողվում սասանել մարքս-լենինյան կուսակցությունների հեղինակությունը: Մի շարք զարգացած կապիտալիստական երկրներում, մասնավորապես Ֆրանսիայում, Իտալիայում, Պորտուգալիայում, Իսպանիայում, Ֆինլանդիայում, կոմունիստական կուսակցությունները դարձել են մասսայական և ազգային մասշտաբով մեծ ազդեցություն են գործում իրենց երկրների հասարակական-քաղաքական կյանքի վրա: Նրանք ոչ միայն իրենց հետևից են տանում միլիոնավոր բանվորների, այլև զգալի ազդեցություն ունեն աշխատավոր ժողովրդի բոլոր խավերի, մտավորականության առաջավոր մասի շրջանում:

Աշխատավոր մասսաների վրա իրենց ազդեցությունն ուժեղացրել են նաև Հունաստանի, Բելգիայի, Արգենտինայի, ԳՖՀ-ի, Ավստրիայի կոմունիստական կուսակցությունները:

Մասսաների հետ հետզհետե ամրապնդվող կապերի, կոմունիստների քաղաքական ուժի կարևորագույն գործոնն է նրանց հաջողությունը ընտրությունների ժամանակ: Օրինակ, Իտալիայում, Ֆրանսիայում, Ֆինլանդիայում կոմունիստների օգտին է քվեարկում յուրաքանչյուր չորրորդ-հինգերորդ ընտրող: Չնայած 1986 թ. մարտի 16-ին կայացած ընտրությունների ժամանակ կրած որոշ անհաջողությանը, Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը երկրի պառլամենտում պահպանում է իր ազդեցիկ դերը: Ֆրանսիայում համարյա 1.100 քաղաքագլուխ և 16 հազար մունիցիպալային խորհրդականներ կոմունիստներ են: Ֆրանսիայի կոմկուսը 1981 թվականից հետո աճել է 50 հազար մարդով: Նա ցուցաբերում է հաստատակամություն մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային դիրքերի պաշտպանման գործում, ինչպես նաև ստեղծագործական մոտեցում և ճկունություն՝ տեսության հարցերի և տակտիկական խնդիրների լուծման բնագավառում:

Լուրջ հաջողությունների է հասել Իտալիայի կոմունիստական կուսակցությունը: Պառլամենտական ընտրություններում նա որպես կանոն հավաքում է 11—12 մլն ձայն (ընտրողների 32—35 տոկոսը): Վերջերս իտալական կոմունիստները նոր խոշոր հաջողություն ձեռք բերին մունիցիպալային մասնակի ընտրություններում:



Ֆինլանդիայի պառլամենտի ամենախոշոր ֆրակցիան է հանդիսանում ժողովրդի դեմոկրատական միությունը (ՖԺԴՄ): Նրա գլխավոր ուժը կոմկուսն է, որի շարքերում ներկայումս կա մոտ 100 հազար անդամ: Հունաստանի, Պորտուգալիայի, Իսպանիայի, Բելգիայի, Իսլանդիայի, Լյուքսեմբուրգի, Շվեյցարիայի, Իսրայելի, Հնդկաստանի, Շրի Լանկայի, Ճապոնիայի, Պանամայի և այլ կոմունիստական կուսակցություններ ներկայացուցիչներ ունեն իրենց երկրների պառլամենտներում: 1984—1985 թվականներին տեղի ունեցած պառլամենտական ընտրությունների ժամանակ ոչ սոցիալիստական երկրների կոմունիստները ընդհանուր առմամբ հավաքել են 45 **մլն** ձայն:

Դժվարին ու փշոտ է կոմունիստների ճանապարհը կապիտալիստական երկրներում: Այստեղ կոմունիստական շարժման յուրաքանչյուր քայլը կատարվում է փորձված, նենգ ու դաժան հակառակորդի դեմ մղվող կատաղի պայքարում: Արդեն շատ տարիներ անլեգալ պայմաններում են գտնվում Պակիստանի, Թուրքիայի, Իրանի, Պարագվայի, Ուրուգվայի, Տաիլանդի, Ինդոնեզիայի, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և մի շարք այլ երկրների կոմունիստական կուսակցությունները: Դժվարին պայմաններում, դիմագրավելով բռնության ոստիկանական վիթխարի մեքենայի գրոհը, մշտապես հալածվելով բուրժուազիայի վարձկան հակակոմունիզմի գաղափարախոսներից, արիաբար մարտնչում է ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցությունը:

Մեծ Հոկտեմբերի ժամանակներից ի վեր և հատկապես սոցիալիստական սիստեմի ստեղծումից հետո համաշխարհային մասշտաբով ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունը անչափ թեթևացրեց ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ծավալման պայմանները Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի զարգացող երկրներում, որտեղ ապրում է մոտ երեք **մլրդ** մարդ: Այն հետզհետե ընդգրկում է ազգաբնակչության ավելի մեծ զանգվածներ և նրանում առավել ակտիվորեն է հանդես գալիս միջազգային պրոլետարիատի աճող ջոկատը՝ զարգացող երկրների բանվոր դասակարգը: Այս երկրներում վարձու աշխատանքի բանվորների ընդհանուր թիվը կազմում է ավելի քան 450 **մլն** մարդ: Եվ չնայած, որ բանվոր դասակարգը դեռևս բնակչության փոքր մասն է կազմում, այնուհանդերձ, ավելի ու ավելի նկատելի է դառնում նրա դերը որոշ երկրների սոցիալ-քաղաքական կյանքում և իմպերիալիստական ճնշման ու նեոգաղութատիրության դեմ մղվող պայքարում: Այդ շրջաններում ավելի լայնորեն են տարածվում կոմունիզմի գաղափարները: Ազգային անկախություն նվաճած կամ հանուն դրա պայքարող 50-ից ավելի երկրներում ներկայումս գործում են կոմունիստական կուսակցություններ:

Ազգային-ազատագրական շարժումը ամենից առաջ հակաիմպերիալիստական բնույթ է կրում: Մի շարք երկրներ, օրինակ, Եթովպիան, Հարավային Եմենը, Ալժիրը, Սիրիան, Գվինեան, Կոնգոն, Անգոլան, Մոզամբիկը, Մադագասկարը, Բենինը, Նիկարագուան և այլն, արդեն ձեռնամուխ են եղել սոցիալիստական վերափոխումների:

Հեղափոխական ուժերի բուռն աճ է տեղի ունենում նաև Լատինական Ամերիկայում: Արդեն միայն այն հանգամանքը, որ հենց համաշխարհային իմպերիալիզմի միջնաբերդի մոտ աճում և ուժ է առնում սոցիալիստական Կուբան, շատ բան է ասում: Կուբայի հեղափոխության անմահ ջահը լուսավորում է Լատինական Ամերիկայի բոլոր ժողովուրդների ուղին: Դեռ Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին կոմունիստական կուսակցությունները գործում էին Լատինական Ամերիկայի միայն 15 երկրներում, ըստ որում դրանք շատ փոքրաթիվ էին և իրենց շարքերում ընդհանուր առմամբ համախմբում էին 90 հազար մարդուց ոչ ավելի: Ներկայումս նրանք գործում են մայրցամաքի բոլոր երկրներում և իրենց շարքերում ունեն մոտ 400 հազար մարդ: Կոմունիստները մայրցամաքի շատ երկրներն ընդգրկած հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական ազատագրական պայքարի կազմակերպիչն են: Նրանք լուրջ հաջողությունների են հասել միասնական ազգային ճակատների կազմակերպման համար անհրաժեշտ նախադրյալների ստեղծման գործում: Այս առումով հատկապես ուշագրավ են Արգենտինայի, Բրազիլիայի, Վենեսուելայի, Կոլումբիայի կոմկուսները, որոնք վերջին ժամանակներս զգալիորեն ուժեղացրել են իրենց դիրքերը հասարակական-քաղաքական կյանքում:

Դասակարգային պայքարի ղեկավարումը մեծ և բարդ արվեստ է, իսկ մեր

ժամանակներում, հավանաբար, այն ավելի բարդ է, քան երբևէ: Բազմազան են պայմանները, որոնցում պայքարում են եղբայրական կուսակցությունները: Վերջին տարիների հեղափոխական շարժման փորձը վերստին հաստատեց, որ հաջողության են հասնում այն կուսակցությունները, որոնք առաջնորդվում են ստրատեգիայի և տակտիկայի փորձված և պրակտիկայում ստուգված լենինյան սկզբունքներով, հաշվի են առնում ռեալ իրադրությունը: Կյանքը սովորեցնում է, որ մարքս-լենինյան գծից ինչպես դեպի «աջ», այնպես էլ դեպի «ձախ» կատարվող շեղումները հատկապես վտանգավոր են դառնում, երբ դրանք զուգակցվում են նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի և հեգեմոնիզմի դրսևորումներով: ՍՄԿԿ-ն հանդես է գալիս ընդդեմ կոմունիստական շարժման մեջ հեգեմոնիզմի ամեն տեսակ արտահայտության և հանուն բոլոր կուսակցությունների միջև իսկապես ինտերնացիոնալիստական իրավահավասար հարաբերությունների:

Կուսակցության XXVII համագումարը առաջնակարգ ուշադրություն դարձրեց համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման միասնության և համախմբվածության հարցերին: ՍՄԿԿ-ն մեծ նշանակություն է տալիս եղբայրական կուսակցությունների հետ երկկողմանի և բազմակողմանի կապերի ու կոնտակտների զարգացմանը: Միայն վերջին տարվա ընթացքում ՍՄԿԿ ներկայացուցիչները հանդիպումներ ու զրույցներ են ունեցել եղբայրական 80 կուսակցությունների 360 պատվիրակությունների հետ: ՍՄԿԿ-ն կապ է պահպանում նաև այն կուսակցությունների հետ, որոնց ղեկավարության գրաված դիրքերը տարբերվում են կոմունիստական շարժման ընդհանուր գլխավոր գծից՝ նպատակ հետապնդելով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա հասնել այդ կուսակցությունների հետ հարաբերությունների նորմալացման:

Մի շարք երկրներում կոմունիստական կուսակցությունները դեռևս մասսայական չեն: Սակայն նույնիսկ այդտեղ նրանց ազդեցությունը շատ հարցերում նշանակալի է. Մեծ Բրիտանիայի, Բելգիայի, Դանիայի և մյուս երկրների կոմունիստները ամրապնդում են իրենց կապերը մասսաների հետ, հանդես գալիս որպես աշխատավորության շահերի ամենահետևողական պաշտպաններ, գտնում դասակարգային պայքարի նոր ուղիներ և ձևեր, որի գլխավոր պայմանը գործողությունների միասնությունն է:

Հասարակության կյանքում բանվոր դասակարգի դերի աճի կարևորագույն ցուցանիշը գործադուլային շարժման ուժեղացումն է, որը Վ. Ի. Լենինը կապիտալիստական հարստահարման դեմ «կռվի դպրոց է» անվանել: Եթե միջպատերազմյան շրջանում՝ 1919—1939 թթ. զարգացած կապիտալիստական երկրներում, ըստ Աշխատանքի միջազգային կազմակերպության տվյալների, տեղի է ունեցել 165 հազար գործադուլ, որոնցում մասնակցել են 74 մլն գործադուլավորներ, ապա 1966—1985 թվականներին գործադուլների թիվը հասել է ավելի քան 270 հազարի, իսկ գործադուլավորների թիվն անցել է 250 միլիոնից: Ետպատերազմյան շրջանում գործադուլավորների միջին տարեկան թիվն աճել է 3,5 անգամ: Ինչպես վկայում են վերջին ժամանակի իրադարձությունները, զարգացած կապիտալիզմի երկրներում ավելի ու ավելի են սրվում դասակարգային մարտերը:

ՍՄԿԿ XXVII համագումարը նշեց, որ կոմունիստական շարժման բազմազանությունը տարանջատվածության հոմանիշ չէ, ճիշտ այնպես, ինչպես միասնությունը ընդհանուր ոչինչ չունի միակերպության, հիերարխիայի հետ, մի կուսակցության գործերին մյուս կուսակցության միջամտության հետ, ճշմարտության մենաշնորհ ունենալու որևէ կուսակցության ձգտման հետ:

Միջազգային կոմունիստական և բանվորական շարժումը ուժեղ է մարքսիզմ-լենինիզմի անհաղթ ուսմունքի հիման վրա նոր իրողություններին համարձակ, ստեղծագործական մոտեցմամբ, խաղաղության և սոցիալիզմի համար պայքարում բոլոր եղբայրական կուսակցությունների իրավահավասար համագործակցությամբ: Այս նպատակներն են հենց այն գլխավորը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարի բանաձևում, որը միավորում է տարբեր երկրների կոմունիստներին: Մեր լենինյան կուսակցությունը այսուհետ ևս ջանքեր չի խնայի և ըստ ամենայնի կաջակցի կոմունիստական և բանվորական կուսակցությունների եղբայրական համերաշխության և սերտ համագործակցության ամրապնդման համար:

---



# ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՄԵՆԵՋՄԵՆՏԸ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու**

ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆԻ ԱԿՏԻՎԱՑՈՒՄԸ ՍՄԿԿ-ի ծրագրային խնդիրներից է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կարևորագույն պայմաններից մեկը: Սովետական հասարակությունը աշխատավոր մարդկանց հասարակություն է, և առանց նրանց շահագրգիռ, ակտիվ մասնակցության հնարավոր չէ ապահովել սոցիալական ու տնտեսական պլանների կատարումը, ՍՍՀՄ կոմունիստական հեռանկարի իրականացումը:

Մարդկային գործոնին հարաճուն ուշադրություն է դարձնում նաև բուրժուական հասարակագիտական միտքը: Բուրժուական գաղափարախոսների, հատկապես մենեջմենտի տեսաբանների կողմից հրապարակվող բազմաթիվ հետազոտություններ նվիրված են ժամանակակից արտադրության սոցիալական պրոբլեմներին՝ աշխատանքային մոտիվացիային, աշխատանքից բավարարվածությանն ու անբավարարվածությանը, նյութական և բարոյական խրախուսմանը, միջանձնային փոխհարաբերություններին, ստրեսին և այլն: Բազմաթիվ ֆիրմաներ սկսել են կիրառել մի շարք միջոցառումներ «մարդկային ռեսուրսների», «աշխատանքի հարստացման», «արտադրական դեմոկրատիայի» և նման այլ ծրագրերի շրջանակներում:

Մարդկային գործոնի շուրջ բուրժուական տեսական մտքի և գործնական փորձի քննադատական վերլուծությունը կարևոր է հետևյալ նկատառումներով: Նախ, մարքսիստական և բուրժուական գաղափարախոսությունների պայքարը ներկայումս զգալիորեն տեղաշարժվում է դեպի բուն սոցիալական պրոբլեմները: Իսկ դրանց շարքում թերևս հենց մարդու աշխատանքային գործունեության պրոբլեմներն են, որ վերածվել են գաղափարախոսական պայքարի առավել թեժ ասպարեզի:

Կապիտալիզմի ջատագովները, փորձելով հիմնավորել այդ հասարակարգի կենսունակությունն ու հեռանկարայնությունը, ապացուցել կապիտալի և աշխատանքի շահերի ընդհանրությունը, կապիտալիստական ձեռնարկություններում իբր բովանդակալից, իմաստալից, մարդուն արժանվայել աշխատանքի ապահովման հնարավորությունը, ճգնում են վիճարկել մարքսիստական դրույթները: Ուստի մարքսիստ-լենինականների կարևորագույն խնդիրներից մեկն է բացահայտել ժամանակակից բուրժուական սոցիոլոգների և մենեջմենտի տեսաբանների դասակարգային, կուսակցական դիրքորոշումը, վերհանել նրանց դատողություններում առկա ջատագովական հնարքները, ցույց տալ դրանց գիտական սնանկությունն ու ամլությունը:

Երկրորդ, նշված բնագավառը մեզ հիմք է տալիս ուսումնասիրելու ամբողջ կապիտալիստական հասարակարգի էվոլյուցիայի օրինաչափությունները, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առավել խոր արմատները, ինչպես նաև կապիտալիստական հասարակության կառավարող շրջանների կողմից գործադրվող հարմար-

վողական ճիգերը: Երրորդ, վերջին տարիներին բուրժուական սոցիոլոգիան և մենեջմենտը պատկառազդու փորձնական նյութ են կուտակել մարդու աշխատանքային վարքի կառավարման ասպարեզում, և այդ նյութի քննադատական վերլուծությունը մարքսիստական սոցիոլոգիայի կողմից հնարավորություն է ընձեռում առանձնացնելու դրական փորձը, որը կարող է պիտանի լինել սոցիալիստական աշխատանքի կազմակերպման, սոցիալիստական աշխատավորական կոլեկտիվների կառավարման գործում: Չորրորդ, բուրժուական տեսությունների և մենեջմենտի պրակտիկայի մարքսիստական վերլուծությունը հիմք է տալիս բացահայտելու մարդկային գործոնի դերի բարձրացման հետ կապված մի շարք ընդհանուր օրինաչափություններ, որոնք, իրենց հերթին, հնարավորություն են ստեղծում համեմատել մարդու աշխատանքային կյանքի կազմակերպման կապիտալիստական և սոցիալիստական ձևերը, ուրեմն և՝ ցայտունորեն պարզաբանել սոցիալիստական հասարակության նվաճումներն ու առավելությունները: Ընդսմին, այդ համեմատությունը, իմացական նշանակությունից զատ, ունի նաև հսկայական պրոպագանդիստական նշանակություն, կարող է ի սպաս դրվել մատաղ սերնդի գաղափարաքաղաքական, բարոյական, աշխատանքային դաստիարակությանը:

Մարդկային գործոնի նկատմամբ բուրժուական սոցիոլոգների, տնտեսագետների, մենեջերների, ձեռնարկատերերի հետաքրքրության աճը մեծապես հետևանք է «ավտոմատացման դարաշրջանի» հետ կապված պատրանքների փլուզման: 70-ական թվականների սկզբից աստիճանաբար հասկանալի դարձավ այն ճշմարտությունը, որ կիբեռնետիկական տեխնիկան, արտադրական պրոցեսների ավտոմատացումը, ռոբոտատեխնիկայի ներդրումը ոչ միայն ինքնին անբավարար են աշխատանքի ասպարեզի սոցիալական պրոբլեմների լուծման համար, այլ է՛լ ավելի են խորացնում դրանք, ծնում նորերը: Իսկ այդ պատրանքները ժամանակին շատ լայն տարածում էին ստացել և իսկապես գրավիչ էին: Բավական է հիշատակել 1964 թ. ԱՄՆ-ում հրատարակված «Եռակի հեղափոխություն» փաստաթուղթը, որի հեղինակները՝ սոցիոլոգները, արհմիութենական գործիչները, գործարար մարդիկ, պնդում էին, թե կիբեռնետիկական հեղափոխությունը հիասքանչ հեռանկարներ է բացում մարդկության առջև, թե գիտության ու տեխնիկայի շնորհիվ իսպառ կվերանան գործազրկությունն ու չքավորությունը, մարդկային բոլոր տառապանքները, յուրաքանչյուրը կստանա երաշխավորված, ստեղծագործական աշխատանք և այլն:

70-ական թվականների սկզբից գրականության մեջ շեշտերը փոխվում են, աստիճանաբար գիտակցվում է տեխնոկրատիզմի ապակողմնորոշող ազդեցությունը աշխատանքի ասպարեզի սոցիալական պրոբլեմների հստակ ըմբռնման մեջ: Ցայտուն է արտահայտված այս տրամադրությունը ամերիկյան սոցիոլոգներ Ս. Լևիթանի և Ու. Ջոնսթոնի **Աշխատանքը, ավա՜ղ, մնում է** պերճախոս վերնագրով մենագրությունում: «Ավտոմատացումը,— շեշտում են նրանք,— մոտ ապագայում չի ազատագրի բոլոր արտադրական բանվորներին իրենց աշխատանքից, ոչ էլ կդարձնի այդ աշխատանքն ավելի բեղմնավոր, բացառությամբ, թերևս, այն բանի, որ շնորհիվ ավելի բարձր արտադրողականության ապահովման՝ կմեծանա աշխատավարձը: Արտադրության ոլորտում, անկախ այն բանից, որ աշխատանքի շատ տեսակներ կդառնան սպիտակ-օձիքավորների աշխատանք, կհագեցվեն կոնդիցիոներներով, կլինեն լավ լուսավորված պայմաններում, միևնույն է, կմնան որպես քիչ իմաստալից, անձին չնչին բավարարվածություն պատճառող, զարգացման աննշան հնարավորություններ ընձեռող աշխատանք» (S. A. Levitan, W. B. Johnston, Work is here to stay, alas. Salt Lake City, 1973, p. 107): Այս նույն հեղինակները նկատում են նաև նման վիճակի սոցիալական գլխավոր պատճառներից մեկը, թեպետև, բուրժուական մտածողի բնազդով, իսկույն ևեթ հեռանում են դրա հետագա քննարկումից. «Շահավետության վաղեմի կանոնները խոշոր արդյունաբերության շրջանակներում անխուսափելիորեն ծնելու են միապաղաղ, պարզունակ և տաղտկալի աշխատանքի բազում տեսակներ. թեպետև դրանք ֆիզիկական քիչ ջանքեր են պահանջելու, լինելու են ավելի մաքուր և բնութագրվելու են ոչ այնքան խստապահանջ վերահսկողությամբ, սակայն արտադրական աշխատանքի այդ տեսակները հազվադեպ կլինեն ավելի ստեղծագործական և բովանդակալից, քան այն աշխատանքները, որոնց դրանք կփոխարինեն» (Նույն տեղը, էջ 102):



Ինչև, փաստն այն է, որ, տարիներ շարունակ ստորադասելով մարդկային գործոնը արտադրության առարկայական, տեխնիկական գործոններին, այսօր բուրժուական մենեջմենտը տառացիորեն կառչել է «մարդկային ռեսուրսներից», փորձելով դրանք վերածել կապիտալիստական հասարակության կայունացման հարատև մի աղբյուրի: Դասդասելով հասարակական զարգացման զանազան գործոնները ըստ կարևորության, բուրժուական շատ հեղինակներ առաջին տեղն անվերապահորեն հատկացնում են տվյալ երկրի բնակչության աշխատելու, աշխատանքը կազմակերպելու ունակությանը: «Համայն աշխարհում,— նկատում են ամերիկաճապոնական համեմատական սոցիոլոգիական հետազոտության հեղինակներ Շ.-Ի. Տակեձավան և Ա. Ուայթհիլը,— ներկայումս հետաքրքրության մի նոր ալիք և անհետաձգելիության մի խորացող զգացում կան՝ կապված մարդկային ռեսուրսների կառավարման պրոբլեմների ասպարեզում նորանոր մոտեցումների մշակման հետ: Անկախ այն բանից, թե ինչպիսին է կոնկրետ սոցիալական, քաղաքական և տնտեսական միջավայրը, մարդկային ռեսուրսների արդյունավետ օգտագործման անհրաժեշտությունը դարձել է հարաճուն առաջնահերթ մի խնդիր թե՛ կազմակերպությունների և թե պետությունների ղեկավարների համար» (Sh.-I. Takezava, A. M. Whitehill, Work Ways: Japan and America. Tokyo, 1981, p. 3):

Եվ պետք է ասել, որ մենեջմենտի ճարտարությունը, մարդկային գործոնի ասպարեզում նրանից ակնկալվող նորմածությունները 70-ական թվականների վերջից և 80-ական թվականների սկզբից լավատեսության մի նոր ալիք են առաջացրել սոցիոլոգների, մենեջերների, քաղաքական գործիչների, գործարար մարդկանց շրջանում: Ներկայիս լավատեսական տրամադրությունները նման չեն, իհարկե, 60-ական թվականների տեխնոկրատական լավատեսությանը, տեխնիցիստական պատրանքներին, տեխնոկրատական ծրագրերին: Ընդհակառակը, ժամանակակից լավատեսությունը որոշակիորեն հավակնում է լինել հակատեխնոկրատական, քննադատվում են մարդու աշխատանքային վարքի կազմակերպման և կառավարման զուտ ինժեներական մեթոդները, շեշտադրվում է սոցիոլոգիայի և սոցիալական հոգեբանության կարևորությունն այս բնագավառում:

Առհասարակ, մարդկային գործոնի շուրջ դատողություններին առավելապես բնորոշ են հակաէկոնոմիզմը և հակատեխնոկրատիզմը: Սուր կերպով քննադատվում է «տնտեսական մարդու» հայեցակետը՝ որպես մարդու աշխատանքային վարքի մոտիվացիայի պարզունակ բացատրություն: Անողոք քննադատվում են թեյլորիզմի սկզբունքները և, ամենից առաջ, աշխատանքային ցանկացած գործողության կատարման «միակ լավագույն եղանակի» մասին հիմնադրույթը: Սրանց հակադրվում են «աշխատանքն ինքնին» հայեցակետը (ըստ որի մարդու աշխատանքային վարքի կարգավորման առավել հզոր միջոց է բուն իսկ աշխատանքը), աշխատողի նկատմամբ «վստահության սկզբունքը», «աշխատանքի հարստացման», «արտադրական դեմոկրատիայի» ծրագրերը և այլ միջոցառումներ:

Պետք է ասել, որ հակատեխնոկրատիզմի դիրքերից հանդես եկող հեղինակները ակամայից մատնանշում են մարդկային գործոնի նկատմամբ մենեջմենտի կողմից դրսևորվող հետաքրքրության բուն պատճառը: Այսպես, անգլիացի սոցիալական հոգեբաններ Ց. Մարշալը և Ք. Կուպերը աշխատանքային ստրեսին նվիրված հոդվածների ժողովածուի իրենց առաջաբանում շեշտում են, որ այդ գրքի նպատակն է «օժանդակել այն չափանիշների վերագնահատմանը, որոնցով կազմակերպությունները գնահատում են իրենք իրենց: Կազմակերպության գործունեության մեխանիստիկական ցուցանիշների մեծագույն մասը, որպես չհամապատասխանող, ներկայումս մերժվում է: Մենք այստեղ կավելացնեինք այն փաստի խորացող գիտակցումը, որ աշխատող անձնակազմի նկատմամբ մարդկային հոգատարություն ցույց տալն ամենևին էլ սոսկ «լավություն անել» չէ, այլ զգալի տնտեսական օգուտ է բերում և այնպիսի չափերով, որ մենք հազվադեպ ենք ստանում շնորհիվ արդյունավետության, շահավետության և ակտիվության բարելավման» («Coping with Stress at Work. Case Studies from Industry». Ed. by J. Marshall, C. Cooper. Aldershot, 1981, p. XY):

Հակատեխնոկրատական շարժման ներկայացուցիչները մեղադրում են տեխնոկրատներին, թեյլորականներին և նոր թեյլորականներին հատկապես «դոգմատիզ-

մի» մեջ, ի նկատի ունենալով հենց աշխատանքային իրադրության առարկայական, տեխնիկական, տեխնոլոգիական գործոնների դերի գերագնահատումը մարդկային գործոնի դերի համեմատ: Այսպիսով, մարդկային գործոնի շեշտադրումը միանգամայն հստակ է, թեպետև լուրջ փորձ չի արվում պարզելու տեխնոկրատական «դոգմատիզմի» սոցիալական հիմքերը, տեխնիցիզմի որոշակի կապը կապիտալիստական ձեռնարկության իրողության, բուրժուական արտադրահարաբերությունների էության հետ: Մինչդեռ, տեխնոկրատիզմը լիովին համապատասխան է կենդանի աշխատանքի նկատմամբ կապիտալի գերիշխանությանը: Ընդսմին, բանն էլ հենց այն է, որ տեխնոկրատիզմը, որպես աշխարհայացքային դիրքորոշում, ազդում է սոցիալական իրականության վրա, սրում է կապիտալի և աշխատանքի հակամարտությունը: Ահա թե ինչու մենեջմենտի առավել հեռատես տեսաբանները պայքարում են տեխնոկրատիզմի այսօրինակ դրսևորումների դեմ:

Այնուամենայնիվ, ընդհանրացնելով և ամփոփելով մարդկային գործոնի ակտիվացման ասպարեզում իրականացվող միջոցառումները, բուրժուական սոցիոլոգները և մենեջմենտի տեսաբանները, որպես կանոն, դատողություններ են անում կապիտալիստական հասարակարգի հումանիզմի մասին, «աշխատանքային բարոյականության» արժեքներին նվիրվածության մասին և այլն: Արդ, որքանո՞վ են հումանիստական «աշխատանքի հումանիզացման» ծրագրերը, այլ կերպ ասած, «աշխատանքի ընդլայնման», «աշխատանքի հարստացման», «ինքնակառավարվող խմբերի», «համատեղ պլանավորման» և այլ միջոցառումները որքանո՞վ են պայմանավորված հատկապես մարդու մասին հոգատարությամբ:

Այս հարցի պատասխանը մենք կարող ենք կորզել անգամ այն բուրժուական հեղինակներից, ովքեր առանց ավելորդ պաճուճանքի, առանց դեմագոգիկ շղարշի կամ ուտոպիական եզրակացությունների, ուղղակի նշում են «աշխատանքի հումանիզացման» տեխնոլոգիական պայմանավորվածությունը, դրա տեխնոլոգիական անհրաժեշտությունը: Նրանք հստակորեն նկատում են, որ տեխնիկաարտադրական պրոբլեմները, օրավուր աճող ծախքերը, կապված աշխատանքի ծայրահեղ բաժանման հետ, կառավարման ավտորիտար մեթոդների հարուցած սոցիալ-հոգեբանական պրոբլեմները, աշխատողների դժգոհությունը աշխատանքային վատ պայմաններից և այլն թելադրում են «աշխատանքի հումանիզացում»: Մարդկային գործոնի նկատմամբ նման մոտեցումը առավել հստակորեն ձևակերպված է անգլիացի սոցիոլոգ և տնտեսագետ Ս. Հիլի մոտ: «Հումանիզացման ծրագրերը,— նշում է նա,— առաջադրվեցին հաղթահարելու նպատակով այն երկու պրոբլեմները, որոնք ուղեկցում էին գիտական մենեջմենտի կոպիտ կիրառությանը: Դրանք էին, նախ, այն եղանակը, որով աշխատանքի ծայրահեղ մասնատումը երբեմն հանգեցնում էր տեխնիկական անարդյունավետության և ավելի շատ մեծացնում ծախքերը, քան նպաստում աշխատանքի կազմակերպման ավելի արդյունավետ և ավելի էժան մեթոդների զարգացմանը, երկրորդ, այն եղանակը, որի դեպքում աշխատողների դիմադրությունը աշխատանքի մասնատմանը և մենեջմենտի կողմից իրագործվող խիստ վերահսկողությունը իջեցնում էին գիտական մենեջմենտի սկզբունքների գործնական արդյունավետությունը» (S. Hill, Competition and Control at Work: The New Industrial Sociology. London, 1981, p.p. 45—46):

Աշխատանքի հումանիզացումը, այսպիսով, այն կոսմետիկական միջոցներից է, որոնք կոչված են շտկելու «գիտական» մենեջմենտի «կոպիտ» կիրառության հետևանքները: Ս. Հիլը, ինչպես տեսնում ենք, շեշտում է ամենից առաջ աշխատանքի կազմակերպման տեխնիկատնտեսական արդյունավետությունը և ոչ մի պատրանք չունի, կապված «աշխատանքի հումանիզացման» ծրագրերի բուն հումանիստական՝ մարդկային անհատի զարգացումն ապահովող նշանակության հետ: Աշխատանքի ծայրահեղ մասնատումը, տրոհված, բովանդակազուրկ աշխատանքը մերժելի են, համաձայն հեղինակի և այս կերպ դատող մի շարք այլ սոցիոլոգների, ոչ թե մարդկային զարգացման, այլ դրա տեխնիկական, տնտեսական անարդյունավետության հետևանքով:

Այս տեխնոկրատական աշխարհայացքը լիովին հարազատ է բուրժուական մտածելակերպին, արտադրության միջոցների տիրոջ հոգեբանությանը, կապիտալիստական ձեռնարկության իրողությանը: Այն, ինչ «աշխատանքի հումանիզացման» ծրագրերում հռչակվում է սրանից ավելի կա՛մ վերացական հումանիզմի դիրքերից ար-



վող հարցադրում է՝ սկզբունքորեն անիրագործելի կապիտալիստական ձեռնարկության պայմաններում, կա՛մ գիտակցական դեմագոգիա՝ ուղղված կապիտալի դեմ իրական պայքարից, կապիտալի լծից աշխատանքի հեղափոխական ազատագրման իրական ուղուց աշխատավորներին շեղելուն:

Անդրադառնալով այս բնագավառում սկանդինավյան ֆիրմաների փորձին, որը լայնորեն ռեկլամվում է բուրժուական մենեջմենտում, Հիլը ուղղակի հայտարարում է. «Շվեդիայում 60-ական թվականների վերջին աշխատանքի հումանիզացման նկատմամբ հետաքրքրության իսկական ազդակը բխում էր մենեջմենտի՝ արտադրողականությունը բարձրացնելու և աբսենտեիզմը նվազեցնելու ցանկությունից, բացառելով մենեջմենտի արտոնությունների նկատմամբ որևէ ոտնձգություն, մանավանդ արհմիությունների կողմից» (Նույն տեղը, էջ 144):

Այսպիսով, «հումանիզացնել» աշխատանքը նշանակում է, համաձայն այս պրոբլեմի բուրժուական թերատ ըմբռնման, ավելի մարդկային, ավելի բովանդակալից դարձնել աշխատանքը, աշխատանքի սուբյեկտից ակնկալել ավելի պատասխանատու վարք, ավելի մեծ նվիրվածություն ֆիրմային, ավելի շատ եռանդ և այլն, սակայն մեկ հիմնական պայմանով՝ պահպանվում են մենեջերների, ուրեմն և ձեռնարկատերերի բացառիկ, անձեռնմխելի իրավունքները, կապիտալի իշխանությունը աշխատանքի վրա: Հետևաբար, պահպանվում են և ուրիշի աշխատանքի շահագործումը, կապիտալիստական ձեռնարկության մյուս բոլոր բնութագծերը, միայն թե ոչ այդքան «կոպիտ», այլ ավելի մեղմացված, ավելի «մարդկային»:

Եթե անդրադառնանք ժամանակակից բուրժուական մենեջմենտի կոնկրետ քայլերին, ապա արժե առանձնացնել ամերիկյան «Իթոն» ընկերության ձեռնարկություններում վերջին տարիներին իրագործվող «աշխատանքի հումանիզացման» ծրագիրը, մասնավորապես, աշխատողների նկատմամբ «վստահության սկզբունքի» կիրառության փորձը: Ինչպես 20-ական թվականներին հռչակավոր «Հոտորնյան գիտափորձը», որից ծնունդ առավ «մարդկային հարաբերությունների» տեսությունը, այնպես էլ «Իթոնի» գիտափորձը հետևանք էր թեյլորյան սկզբունքների անզորության գիտակցման: Հենց այդ հանգամանքն է շեշտում ամերիկյան սոցիոլոգ Դ. Սքոբելը՝ մեկնաբանելով իթոնյան գիտափորձը իր **Ստեղծագործական աշխատանքային կյանք** մենագրության մեջ: Գիտափորձի հիմնական հիպոթեզն այն էր, որ կազմակերպության նպատակներին աշխատողների աջակցումը էապես կապված է աշխատանքի ասպարեզում ներգրավման և ինքնազարգացման նրանց հնարավորությունների հետ: Առհասարակ, այս հանգամանքը, այսինքն՝ աշխատանքային և արտադրական պրոբլեմների անհատական, անձնային կողմին հատկացվող մեծ ուշադրությունը, իթոնյան գիտափորձի կարևորագույն առանձնահատկությունն է: «Իթոնի» ձեռնարկություններում ամենից առաջ փոփոխվեց աշխատողների վարքի հսկման համակարգը: Վերացվեց ժամանակային քարտերով վերահսկումը, քանի որ մարդու աշխատանքային վարքը ժամացույցով վերահսկելը, ինչպես դիպուկ նկատում է Սքոբելը,— «խստություն է առանց արժանապատվության», նման մանրախույզ ռեգլամենտավորումն ընդհանուր ոչինչ չունի աշխատողների նկատմամբ «վստահության սկզբունքի» հետ: Աշխատողներին թույլ տրվեց աշխատանքի ներկայանալ և աշխատանքն ավարտել ըստ սեփական հայեցողության: Թույլատրվեց նաև ինքնուրույն ընտրել իրենց հանգստյան օրերը, այսինքն՝ ոչ թե պարտադիր կերպով շաբաթ և կիրակի, այլ ցանկացած օր: Բացի այդ «Իթոնը» սկսեց տրամադրել աշխատողներին երեք վճարովի օր՝ հարազատի մահվան դեպքում: Վերացվեցին մեքենան կանգնեցնելու, թատրոնի և սպորտային միջոցառումների անվճար տոմսերի, ֆիրմային պատկանող տրանսպորտից օգտվելու և այլ արտոնությունները, որ ունեին կազմակերպությունում բարձր դիրք գրավող պաշտոնատար անձինք: Հատուկ ուշադրություն սկսեց հատկացվել մարդկանց մոտ ընդհանուր շահերի մասին հոգացողության խթանմանը, համայնքի զգացողության ձևավորմանը, յուրաքանչյուր աշխատողի ակտիվության դրսևորմանը: Այս տեսանկյունից վերանայվեցին նաև մենեջերների ընտրության, նրանց պատրաստման և վերապատրաստման հարցերը:

Այս բոլոր նորամուծությունների, աշխատողների նկատմամբ ֆիրմայի կողմից լիակատար վստահության ցուցադրման տարբեր եղանակների, նրանց ինքնուրույնություն և պատասխանատվություն տրամադրելու զանազան եղանակների հիմնական նպատակը միանգամայն բացորոշ է՝ աշխատողների անձնական շահագրգռվա-

ծության և աշխատանքային եռանդի խթանումը: Այդ նպատակին են ուղղված անցամ արտաքուստ մանրուք թվացող միջոցառումները, ասենք, հենց նույն հանգստյան օրերը սեփական ցանկությամբ ընտրելու իրավունքի տրամադրումը. սրանք կարծես չնչին բաներ են, սակայն, ինչպես պատկերավոր նկատում է.Դ. Սքոբելը, երբ գումարվում են այսպիսի բազում լիլիպուտներ, ապա հնարավոր է դառնում շրջափակել անվստահության Գուլիվերին:

Իսկ ի՞նչ հիմք կա այս ամենը համարել «աշխատանքի հումանիզացում», ի՞նչ տեղ են գրավում իսկապես մարդասիրական ձգտումները «Իթոնի» գիտափորձում և այդ տեսակի այլ փորձերում: Իհարկե, դժվար չէ հասկանալ, որ «վստահության սկզբունքը» չի կարող ավելի արդյունավետ չլինել, քան թեյլորյան կոպիտ ու անպաճույճ սկզբունքները: Իր նկատմամբ վստահություն զգացող անձնավորության աշխատանքային վարքը չի կարող չտարբերվել ակնհայտորեն անվստահություն զգացողի վարքից: Հենց սա է շեշտում Դ. Սքոբելը իր մեկնաբանություններում. «Իրականում ոմանք ամենևին էլ չէին ցանկանում մասնակցել վճիռներ ընդունելու պրոցեսներին, սակայն դրանցում մասնակցելու բուն հնարավորությունն ընդունակ էր փոխելու աշխատանքային կյանքի նկատմամբ նրանց դիրքորոշումը» (նույն տեղը, էջ 124): Ինչպես տեսնում ենք, ժամանակակից մենեջմենտը այդ հանգամանքը լիովին ըմբռնել է և փորձում է այն գործնականորեն կիրառել: Պատահական չէ, որ «վստահության սկզբունքի» սերմանմանը, վստահության «տեխնոլոգիային», դիմացինին վստահություն ցույց տալու և նրա վստահությունը ձեռք բերելու ունակությունների զարգացմանն այդքան մեծ տեղ է հատկացվում մենեջերների ուսուցման հարցերին նվիրված գրքերում:

Իր նկատմամբ ակնհայտ վստահություն զգալը ոչ միայն բարերար է ազդում աշխատողի հոգեկան վիճակի վրա, դրականորեն է տրամադրում դեպի իր աշխատանքային միջավայրը, առհասարակ կարող է հիմք դառնալ աշխատանքի մարդկային իմաստի բարձր գնահատականի համար, այլև վերածվում է նրա վարքի կարգավորման հզոր միջոցի, քանի որ շատ դյուրին ու պակաս ջանքեր պահանջող է աշխատողի ինքնակառավարմանը, ինքնավերահսկմանը, ինքնակարգապահությանը հասնելը, քան արտաքին կառավարումը: Հենց այդ նպատակն էր փաստորեն հետապնդում «Իթոնը»: Պերճախոս է, որ երբ վերացվեց ժամանակային վերահսկումը և արվեցին վստահության քաղաքականության ոգով մի շարք այլ քայլեր, ապա, ինչպես վկայում է Դ. Սքոբելը, մի պրոբլեմ էր հաճախ առաջանում, կապված այն բանի հետ, որ բազմաթիվ մարդիկ էին իրենց նախաձեռնությամբ միաժամանակ վաղ գալիս աշխատանքի և հեռանում ուշ առանց այդ մասին տեղեկացնելու:

Նման երևույթը (եթե անգամ այն լոկ հեղինակի հորինվածքն է) հոգեբանորեն միանգամայն համոզիչ է, թեպետև, պարզ է, որ երկար չի կարող տևել: Բանն այն է, որ գիտակից բանվորները հեշտությամբ գլխի են ընկնում, թե վերջին հաշվով ո՞ւմ է ավելի ձեռնտու նման վստահությունը: Իսկապես, հիշեցնենք այնպիսի մի «մանրուք», ինչպիսին սեփական հայեցողությամբ ազատ օրերն ընտրելու իրավունքն է: Նման պրակտիկան ներկայումս լայնորեն տարածված է շատ կապիտալիստական ֆիրմաներում և, ի դեպ, հաճախ ռեկլամվում է որպես աշխատանքի հումանիզացման միջոցառում: Սակայն կապիտալիստական ձեռնարկության շրջանակներում դա ո՛չ «վստահության սկզբունքի» դրսևորում է, ո՛չ էլ աշխատանքի հումանիզացում: Բացատրությունն ավելի քան պարզ է, թեպետև այդ մասին չեն գրում Սքոբելը և մյուս մեկնաբանները: Հետազոտությունները ցույց են տալիս, որ մարդիկ հանգստյան օրվա նախորդ և հաջորդ օրերին պակաս արդյունավետ են աշխատում, ուստի և կապիտալիստական ֆիրմաները, «վստահելով» աշխատողներին ազատորեն ընտրելու իրենց հանգստյան օրերը (այլ ոչ թե պարտադրելով «ճկուն գրաֆիկը»), դրանով իսկ զգալիորեն բարելավում են ձեռնարկության ռիթմիկ և արդյունավետ աշխատանքը: Այլ կերպ ասած, «աշխատանքի հումանիզացման» հիմքում ընկած են կապիտալիստական շահույթի ապահովման նկատառումները, այլ ոչ ինքնին ձեռնարկատերերի կամ մենեջերների մարդասիրական մղումները:

Նույնը վերաբերում է և այն դրդապատճառներին, որոնք ստիպում են շատ ձեռնարկությունների հրաժարվել կոնվեյերային աշխատանքից: Այս ասպարեզում պիոներ դարձավ շվեդական «Վոլվո» ավտոմոբիլաշինական ֆիրման: 1974 թվականից ֆիրմայի ձեռնարկություններում փորձեր են արվում կոնվեյերային աշխատանքը



հարստացնելու, բանվորի աշխատանքի ասպարեզն ընդլայնելու նպատակով: «Վոլվոն» առաջին անգամ ավտոմոբիլաշինության մեջ հրաժարվեց կոնվեյերից, որը, ինչպես հայտնի է, Հ. Ֆորդի գյուտն էր, ժամանակին տեխնիկական մեծ առաջընթացի հիմքը, էժանագին «ֆորդերի» արտադրության գաղտնիքը: Սակայն «Վոլվոյի» ադմինիստրացիան առաջիններից մեկը հասկացավ, որ ժամանակակից բանվորին դժվար է ոգևորել մասնատված աշխատանքով, միապաղաղ, միատեսակ գործողությունների կատարմամբ: Ուստի և փոխվեց բուն կոնվեյերային աշխատանքի կառուցվածքը. կոնվեյերը մնում է, սակայն բանվորը ոչ թե իր տեղում է կանգնում, այլ շարժվում է մեքենայի հետ, կատարելով մի շարք հաջորդական գործողություններ: «Վոլվոն» կիրառեց տարբեր եղանակներ, հատկապես արդյունավետ էր փոքրիկ բրիգադով ամբողջ մեքենան հավաքելու ձևը: Փորձեր արվեցին անգամ «մեկ մարդ՝ մեկ մեքենա» սկզբունքով: Դրանց շնորհիվ աշխատանքը որոշ չափով, իհարկե, դարձավ ավելի բովանդակալից, ստեղծագործական, ինքնուրույն, բացի այդ ընդլայնվեց միջանձնային հաղորդակցումը, այսինքն՝ աշխատանքը «հումանիզացվեց»: Այնուամենայնիվ, նման ձեռնարկումներն ամենից առաջ նպատակ են հետապնդում առավելապես ապահովելու տնտեսական շահութաբերությունը, այլ ոչ թե աշխատողների մարդավայել, արժանապատիվ աշխատանքի, ինքնուրույնության, պատասխանատու աշխատանքի հնարավորությունները:

Միայն վերացական հումանիզմի դիրքերից է հնարավոր կոնվեյերային աշխատանքի նկատմամբ ձեռնարկատերերի և մենեջմենտի վերաբերմունքի փոփոխության մեջ տեսնել մարդասիրական մղումներ: Օրինակ, կանադացի հայտնի հոգեբան Հ. Սելյեն իր **Ստրես առանց դիստրես** գրքում հենց այդպես էլ մեկնաբանում է, թե գիտակցումն այն փաստի, որ կոնվեյերով աշխատելու միօրինակությունն ու ձանձրալիությունը պատճառ են դառնում մարդկանց օտարացման, ստիպում է ձեռնարկատերերին փոխելու մասսայական արտադրության այդ ձևը: Այստեղ, ամեն ինչից բացի, հումանիստ գիտնականն իր սեփական մոտիվացիան է վերագրում կապիտալիստներին:

Պետք է նկատել, որ, առհասարակ, հեշտ չէ մարդկային գործոնի ասպարեզում իրականացվող միջոցառումների արտաքին պաճուճանքը զանազանել դրանց բուն էությունից: Այսպես, ներկայումս շատ ֆիրմաներ կիրառում են կանանց աշխատանքի այնպիսի ձև, ինչպիսին ոչ լրիվ աշխատանքային օրն է: Սա ներկայացվում է որպես հոգատարություն կանանց նկատմամբ, նրանց ընտանեկան ծանրաբեռնվածությունը հաշվի առնող մի քայլ և այլն: Կին աշխատողներից շատերի համար նման աշխատանքը, ինչ խոսք, հարմար է: Սակայն տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է այն, թե մյուս կողմում, ձեռնարկության ադմինիստրացիայի կողմում որևէ մարդասիրական մղում կա՞ արդյոք: Սրա պատասխանն այն է, որ այդ ոչ լրիվ աշխատանքային օրը կամ այսպես կոչված «աշխատատեղի կիսումը» ֆիրմային տնտեսապես է խիստ ձեռնտու, քանի որ նման կազմակերպումը թույլ է տալիս ավելի ինտենսիվացնելու աշխատանքը՝ առանց դրա դիմաց լրացուցիչ կոպեկ անգամ վճարելու: Բանն այն է, որ լրիվ աշխատանքային օրվա դեպքում, ինչպես ցույց են տալիս հետազոտությունները, օրվա վերջին աշխատանքի արտադրողականությունը 10—15 տոկոսով իջնում է: Չմոռանանք նաև, որ կանանց աշխատանքն առհասարակ ձեռնտու է կապիտալիստական ֆիրմաներին. տղամարդկանց համեմատ աշխատավարձի ասպարեզում առկա խտրականությունների շնորհիվ ամերիկյան մոնոպոլիաները տարեկան ստանում են 63 մլրդ դոլարի շահույթ, անգլիական մոնոպոլիաները՝ 1,2 մլրդ ֆունտ ստերլինգի, արևմտագերմանականները՝ 10 մլրդ մարկի (տե՛ս «Мировая экономика и международные отношения», 1985, № 10, с. 153):

Մարդկային գործոնը բազմաթիվ անլուծելի պրոբլեմներ է առաջադրել բուրժուական մտածողներին: Եվ քանի որ նրանք որպես կանոն շրջանցում են ռեալ սոցիալական պրոբլեմները, մարդկային աշխատանքի շահագործման փաստը, ապա պատահական չէ այն հանգամանքը, որ բուրժուական սոցիոլոգների, հոգեբանների, մենեջմենտի տեսաբանների շրջանում ներկայումս չափից դուրս շեշտվում է աշխա-

տողի ինքնաներշնչանքի, անձնական ջանքերի դերը: «Գործադրեք մարդկային հարաբերությունները ըմբռնելու ձեր ունակությունը հօգուտ ձեր կոլեգաների հետ փոխհարաբերությունների բարելավման և հօգուտ ձեր աշխատանքի այն տարրերը փոփոխելու, որոնք դուք ի վիճակի եք փոխելու աշխատանքն ավելի բովանդակալից դարձնելու նպատակով... Գոյություն չունի կատարյալ աշխատանք, ոչ էլ՝ կատարյալ սարդիկ, սակայն աշխատանքի նկատմամբ ձեր դիրքորոշումը այն վճռական գործոնն է, որով դուք կարող եք դարձնել ձեր աշխատանքն ավելի գրավիչ ու ցանկալի» (A. Ellenson, Human Relations. N. Y., 1982, p.p. 199, 200): Այս տեսակի հորդորներով է փորձում ներազդել մարդկային գործոնի վրա, հումանիզացնել աշխատանքը ամերիկյան հայտնի հոգեբան Էն Էլենսոնը: Ու թեպետև անձի սեփական ակտիվությունը, նրա կենսադիրքորոշումը, իր կատարած աշխատանքի և աշխատանքային փոխհարաբերությունների իմաստավորումն իսկապես կարևոր նշանակություն ունեն, սակայն մարդկային գործոնի ակտիվացման պրոբլեմը էապես սոցիալական պրոբլեմ է, այն չի կարելի նվազեցնել մինչև անձի հոգեկան վիճակը կամ վարվելակերպի մակարդակը:

Մարդկային գործոնի շուրջ բուրժուական հեղինակների դատողություններր առավել խոցելի տեղն այն փաստի անտեսումն է, որ մարդկային գործոնի նկատմամբ կապիտալիստական ձեռնարկությունների դրսևորած հետաքրքրությունը լոկ արտաքուստ է: Սոցիալիստական հասարակության հաջողությունները, կապիտալիստական երկրների աշխատավորության պայքարը, գիտատեխնիկական հեղափոխության պահանջները պարտադրում են բուրժուական մենեջմենտին զբաղվելու մարդկային գործոնով: Կապիտալիստական ձեռնարկության շրջանակներում, սակայն, մարդկային աշխատանքը եղել ու մնում է որպես լոկ միջոց կապիտալիստական շահույթի ապահովման համար:

Դրա հետ մեկտեղ, չի կարելի անտեսել այն հանգամանքը, որ մարդկային գործոնի ասպարեզում ժամանակակից բուրժուական մենեջմենտի քայլերը որոշակի ճկունություն են հաղորդում կապիտալիստական շահագործմանը, նպաստում կապիտալիստական հասարակարգի խուսանավման ճիգերին: Առանց այդ հանգամանքի լստ արժանվույն հաշվի առնելու մենք կարող ենք կրկնել կապիտալիզմի ինքնափլուզման մասին սխալը, ինչի դեմ ամենայն հստակությամբ հանդես եկավ ՍՄԿԿ XXVII համագումարը: Կապիտալիստական հասարակարգը թեպետև զուրկ է պատմական հեռանկարից, սակայն ունի գոյատևման, կայունացման որոշակի ռեզերվներ, որոնցից մեկն էլ հենց մարդկային գործոնի ասպարեզն է: Ուստի և այստեղ կատարվող կոնկրետ քայլերը, դրանց հիման վրա զարգացվող տեսությունները պետք է գտնվեն մարքսիստական քննադատական վերլուծության կենտրոնում:

---



# ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ՝ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ հոգևոր կերպարի ձևավորման գործում զգալի դեր են խաղում գրականությունն ու արվեստը, որոնք բազմակողմանիորեն ներգործում են մարդու վրա՝ նպաստելով նրա գաղափարական, բարոյական ու գեղագիտական դաստիարակությանը: Դաստիարակության տարբեր կողմերը փոխկապված են և արվեստում հանդես են գալիս անխզելի միասնությամբ: Հենց սրանում է մարդու հոգևոր կյանքի վրա գրականության և արվեստի խոր ներգործության պատճառը: Սովետական արվեստը կոչված է ակտիվորեն մասնակցելու հոգևոր կյանքի բնագավառում ՍՄԿԿ ծրագրային խնդիրների լուծմանը, այն է՝ սովետական մարդկանց գիտակցության մեջ սոցիալիստական գաղափարախոսության հետագա ամրապնդմանը, սոցիալիզմի բարոյական սկզբունքների լիակատար հաստատմանը, բնակչության լայն մասսաներին գիտության նվաճումներին, կուլտուրայի արժեքներին հաղորդակից դարձնելը, բազմակողմանիորեն զարգացած անհատի ձևավորումը:

Այսպիսի լայնամասշտաբ հարցադրումը պահանջում է ակտիվ և նպատակասլաց աշխատանք, որում առանձնահատուկ դեր ունեն երաժշտական կուլտուրայի գործիչները:

Երաժշտական արվեստի կարևորագույն առանձնահատկությունը նրա չափազանց լայն տարածվածությունն է: Երաժշտությունը հնչում է համերգային դահլիճներում, զբոսայգիներում, սպորտային մրցումներում, այն թատերական ներկայացումների և կինոնկարների կարևոր տարր է, ռադիոյի, հեռուստատեսության, մագնիտոֆոնների ու ձայնասկավառակների միջոցով հասնում է մարդկանց: Ի վերջո, շատ տներում կան երաժշտական գործիքներ, որոնցով երաժշտասերները վերարտադրում են սիրված մեղեդիները: Ամեն օր ժամանակակից մարդը կամա թե ակամա լսում է բազմազան երաժշտություն:

Երաժշտության մյուս էական առանձնահատկությունը նրա ուղղակի հուզական ազդեցությունն է: Այն, անկասկած, ունակ է արտահայտելու բավականաչափ բարդ գաղափարներ, որոնց ըմբռնումը տեղի է ունենում ամենից առաջ հուզական ուղիով: Իմացության մեջ հույզերի դերին անդրադարձել է Վ. Ի. Լենինը, նշելով, որ առանց դրանց «չկա և չի կարող լինել ճշմարտության մարդկային **որոնում»** (**ԵԼԺ**, հ. 25, էջ 136): Դա առավել ևս ճիշտ է գեղարվեստական իմացության նկատմամբ և, մասնավորապես, երաժշտական ստեղծագործության ընկալման նկատմամբ: Երաժշտության ընկալման գործողության մեջ սերտորեն միահյուսված են իմացությունն ու ապրումը: Միայն դրանց փոխազդեցության դեպքում է երաժշտությունն ունակ ձևավորել մարդու համոզմունքները, դաստիարակել, վեհացնել նրան:

Սակայն երաժշտական ստեղծագործությունն ընկալելու համար անհրաժեշտ է, որ ունկնդիրը նրա լեզվին փոքր-ինչ ծանոթ լինի: Մարդը կարող է բավականություն ստանալ միայն այն երաժշտությունից, որի արտահայտչամիջոցները գոնե ինչ-որ չափով իրեն ծանոթ են: Օրինակ, հաճախ կարելի է հանդիպել XVIII—XIX դարերի արևմտաեվրոպական դասական երաժշտության ավանդույթներով դաստիարակված երաժշտասերների, որոնց համար ժամանակակից երաժշտության նմուշները կարող են թվալ սոսկ ձայների հոսք: Հետևաբար, նրանց գործ-

նականորեն հասկանալի չեն դարի երաժշտության մեջ պարունակվող փիլիսոփի հարստությունները: Նման դեպքերում ելքը մեկն է. ամենատարբեր ոճերի, դարաշրջանների, ժանրերի երաժշտության համառ ու նպատակասլաց պրոպագանդում, մարդու հոգևոր աշխարհը հարըստացնող, պայքարում և աշխատանքում նրան սատարող երաժշտության պրոպագանդում:

Երաժշտական արվեստի սոցիալական արժեքավորությունը ամենից առաջ որոշվում է հետևյալ երկու գործոններով՝ երաժշտության տարածվածությամբ և նրա ազդեցության անմիջականությամբ: Ուստի արդի պայմաններում առանձնահատուկ կարևորություն են ստանում երկու փոխկապակցված հարցեր. **ինչպիսի** երաժշտություն է մեզ շրջապատում, և **ինչպես** ենք մենք նրան վերաբերվում: Երաժշտության պրոպագանդման նպատակն է՝ դաստիարակել երաժշտական ճաշակ, մարդկանց հաղորդակից դարձնել իսկական արվեստին:

Վ. Ի. Լենինի խոսքերով, արվեստը «պետք է հասկանալի լինի մասսաներին և սիրվի նրանց կողմից: Նա պետք է միավորի այդ մասսաների զգացմունքները, մտքերն ու կամքը, բարձրացնի նրանց: Նա նրանց մեջ պետք է արթնացնի արվեստագետներ և զարգացնի նրանց» (**Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին**, հ. 2, Հայպետհրատ, Երևան, 1958, էջ 565): Լենինյան այս խոսքերը միանգամայն կիրառելի են երաժշտության նկատմամբ: Հայտնի է, որ երաժշտությունը և մասնավորապես մասսայական երգը, միավորել է մարդկանց, նրանց պայքարի հանել: Երաժշտությունը մարդու մեջ առաջացնում է համամասնակցության զգացում տեղի ունեցող իրադարձությունների նկատմամբ, դրանց տալիս է մեծ կարևորություն, հանդիսավորություն: Բավական է հիշել թեկուզ «Մարսելյոզը»՝ ֆեոդալական բռնակալության դեմ ֆրանսիական ժողովրդին պայքարի ոգեշնչող երգը: Մեր օրերում ևս երաժշտությունը համանման ազդեցություն ունի: Օրինակ, երբ արտասահմանում առաջադեմ երիտասարդության մասսայական միտինգներում հնչում են չիլիացի հայրենասերների երգերը, ապա յուրաքանչյուր ներկա գտնըվող իրեն զգում է միևնույն հույզերով ու խոհերով միավորված բազմահազարանոց երգչախմբի մասնակից: Դրանում է մասսայական երգի՝ մի ժանրի ձգողական ուժը, որ մեր երկրում ստացել է ամենալայն տարածում և կարևոր դեր է խաղում հասարակության կյանքում:

Մասսայական երգում արվեստագետի վերաբերմունքը շրջապատող աշխարհի նկատմամբ արտահայտված է առավելագույն հստակությամբ: Սակայն ցանկացած երաժշտական ժանրի ստեղծագործություն որոշակի աշխարհայացք է կրում, քանի որ երաժշտությունը գործում և զարգանում է հասարակական կյանքի հետ սերտ կապի մեջ: Բացի այդ, յուրաքանչյուր երաժշտական ստեղծագործություն իր մեջ բովանդակում է գաղափարական-իմաստային լիցք. կոմպոզիտորն իր առջև միշտ որոշակի նպատակ է դնում և ստեղծագործությունը հասցեագրում որոշակի ունկնդրի: Այս հարցի վերաբերյալ սովետական արվեստագետների դիրքորոշումը հիանալի կերպով է արտահայտելականավոր կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը. «Ժողովրդին հարկավոր, պայքարում նրան օգնող, նրան նորանոր սխրանքների ոգեկոչող, միլիոնների մտքեր ու զգացմունքներ դաստիարակող գեղարվեստական արժեքներ ստեղծել— չկա և չի կարող լինել առավել գեղեցիկ նպատակ արվեստագետի համար» (А. Хачатурян. Во имя счастья человечества.— «Советская музыка», 1956, № 4, с. 5):

Հայտնի է, որ այսպիսի դիրքորոշումը բուրժուական հետադեմ գեղագետների և արվեստագետների հարձակումներին է ենթարկվում: Արևմուտքում տիրում է երկու միտում. առաջինի նպատակն է երաժշտությունը մեկուսացնել կյանքից, այն ներկայացնել մարդկանց հուզող իրական, կենսական պրոբլեմներից հեռու կանգնած երևույթ, երկրորդը ձգտում է երաժշտությունը վերածել կյանքի ընկալման սրությունը բթացնող յուրատեսակ թմրադեղի:

Բուրժուական մշակույթի մյուս բևեռում գտնվում է այսպես կոչված «մասսայական» երաժշտական արվեստը: Հագեցված լինելով անխորհուրդ զվարճության հատկանիշներով և չհավակնելով թարմության ու յուրօրինակության շունչ հաղորդել, այն նախատեսված է միջին քաղքենու համար, նրա մեջ էժանագին ճաշակ սերմանելու համար: «Մասսայական» արվեստը հյուսվարարվում է գիտատեխնիկական առաջադիմության ծնունդ, որը, իբր, ներհատուկ է յուրաքանչյուր «ինդուստրիալ հասարակության»: Սակայն



ակնհայտ է, որ տեխնիկական միջոցները, ազդելով արվեստի ստեղծագործության կատարման, վերարտադրման և տարածման վրա, չեն կարող ու չպետք է որոշեն նրա բովանդակությունը:

«Մասսայական» և «նրբաճաշակ» արվեստներն իրենց տարբերությամբ հանդերձ ունեն մեկ ընդհանուր հատկանիշ. նրանք զուրկ են գաղափարական բովանդակությունից, աշխարհայացքային դիրքորոշումից: Սակայն արվեստի այդպիսի բովանդակությունը բնավ չի նշանակում, որ այն չունի սոցիալական նշանակություն: Ընդհակառակը, այդ արվեստն ունի միանգամայն որոշակի (այսինքն բուրժուական) գաղափարական կողմնորոշում: «Անկուսակցականությունը բուրժուական հասարակության մեջ,— գրել է Վ. Ի. Լենինը,— լոկ կուշտերի կուսակցությանը, իշխողների կուսակցությանը, շահագործողների կուսակցությանը պատկանելու կեղծավոր, քողարկված պասսիվ արտահայտություն է» (**ԵԼԺ**, հ. 12, էջ 165): Բուրժուական տեսաբանը արվեստի ստեղծագործությանը մոտենում է «անկուսակցականության», «օբյեկտիվիզմի» դիրքերից: Բայց երաժշտության «զուտ գեղագիտական» արժանիքների այդպիսի «օբյեկտիվ» վերլուծությունը տառապում է ակնհայտ սահմանափակվածությամբ, քանի որ ցանկացած ստեղծագործության մեջ այս կամ այն ձևով արտահայտված է նրա ստեղծողի աշխարհայացքային և բարոյական դիրքորոշումը: Կարճ ասած, երաժշտությունը միշտ ինչ-որ բանի ծառայում է, ինչ-որ բանի կոչում: Եթե դրան ավելացնենք, որ այն ունակ է խորապես, ուժգնորեն ներգործելու մարդու վրա, ապա պարզ կդառնա, թե ինչու երաժշտության պրոպագանդման հարցերն ունեն կարևոր սոցիալական իմաստ:

Դասական և ժամանակակից լուրջ երաժշտությունն ի վիճակի է արտահայտելու բարդ, վեհ հույզեր: Մեր երկրում ստեղծված են բոլոր հնարավորությունները, որպեսզի այդպիսի երաժշտությունը մատչելի լինի յուրաքանչյուր սովետական մարդու: Ներկայումս մեզ մոտ միլիոնավոր մարդիկ հաղորդակցվում են դասական երաժշտության լավագույն ստեղծագործություններին: Ընդ որում շատերը գերադասում են այդպիսի երաժշտությունը լսել տնային պայմաններում նվագարկիչների օգնությամբ, քան հաճախել համերգային դահլիճ կամ օպերային թատրոն: Երաժշտությունն այդպես ունկնդրելու առավելություններից է այն պարագան, որ նման եղանակը հնարավորություն է ընձեռում ծանոթանալու աշխարհում կատարողական արվեստի լավագույն նմուշներին, համեմատելու զանազան մեկնությունները և այլն: Եվ, այդուհանդերձ, նըվագարկիչն ու մագնիտոֆոնը չեն կարող փոխարինել երաժշտության կենդանի ընկալմանը:

Համերգային դահլիճում երաժշտությանը համատեղ հաղորդակցվելը զգալիորեն ուժեղացնում է նրա հուզական ազդեցությունը: Դա օգնում է ոչ միայն ավելի լավ հասկանալու ստեղծագործության բովանդակությունը, այլև դաստիարակում է ըզգացմունքների կուլտուրա: Մյուս ունկնդիրների հետ միասին ընկալելով երաժշտությունը, մենք այն լսում ենք ոչ միայն մեր, այլև «օտար ականջով», որը ստիպում է մեզ ավելի շատ կենտրոնանալ, խորանալ ստեղծագործության մեջ, մեզ դարձնում է ավելի մարդամոտ, հաղորդասեր: Հանրահայտ է, որ դաստիարակության յուրաքանչյուր ձևի հիմքում ընկած է մարդկանց միջև շփումը: Երաժշտությանը համատեղ շփվելու պրոցեսում ունկնդիրների միջև ծագում է հուզական կապ: Ընդհանրապես, կարելի է ասել, որ մեկ համերգի ունկնդիրները ինչ-որ իմաստով համախոհներ են, նրանց միջև նկատվում է հետաքրքրությունների ու հայացքների որոշակի ընդհանրություն: Համերգը մարդկանց հուզական մերձեցման հնարավորություններից է: Երաժշտության դաստիարակչական և ճանաչողական ֆունկցիաները բոլորից լավ զուգակցվում են հենց համերգային դահլիճում, հատկապես այն դեպքերում, երբ հնչում է դասական երաժշտություն:

Մարդկանց համերգային դահլիճներ ներգրավելու ուղիներից մեկը դասական խաղացանկը ընդլայնելն է: Գոյություն ունի այսպես կոչված «հանրամատչելի» դասական երաժշտություն, այդ թվում նաև հայկական երաժշտության մեջ: Դրանք այն հայտնի, հանրաճանաչ ստեղծագործություններն են, որ պարբերաբար հընչում են համերգներում, ռադիոյով ու հեռուստատեսությամբ: Մեկ ստեղծագործության կրկնումը սովորաբար մյուսների հազվադեպ կատարման հետևանք է: Օրինակ, դաշնամուրի համար Կոմիտասի գրած Յոթ պարերը կատարվում են անհամեմատ շատ, քան «Մշո Շորոր» պարը,

թեպետ վերջինս ոչ պակաս գեղարվեստական արժեք է ներկայացնում: Նույնը կարելի է ասել արևմտաեվրոպական, ռուսական, սովետական երաժշտության շատ ստեղծագործությունների մասին, որոնք այս կամ այն հանգամանքների պատճառով հնչում են բավականին սակավադեպ: Այդ ստեղծագործությունների կատարումը կարող է նկատելիորեն ընդլայնել ունկնդիրների մտահորիզոնը:

Անշուշտ, ավելի դյուրին է հայտնի, «ապրոբացված» ստեղծագործությունը կատարման պատրաստելը, քան նվազ ծանոթ երկի վրա աշխատելը: Նմանապես ժամանակակից հեղինակների երաժշտության կատարումը կապված է մեծ ռիսկի հետ, քան անցյալի մեծ կոմպոզիտորների ստեղծագործությունների կատարումը: Բայց ակնհայտ է՝ հասարակայնությանը ծանոթացնելով նոր, վերջերս գրված երաժշտությանը, որը տակավին ձայնագրված չէ, կատարողը ստանում է լրացուցիչ առավելություններ տեխնիկայի հանդեպ, ունկնդրի հետ հաստատում ավելի անմիջական, սերտ կապ:

Համերգի կազմակերպման մեջ մտնում են ոչ միայն լավ կատարումը, այլև նրա վերաբերյալ ժամանակին ու սպառիչ ծանուցումը, հետաքրքիր ներածական խոսքը, մասսայական ինֆորմացիայի միջոցների բանիմաց արձագանքը: Վառ արտահայտիչ ներածական խոսքը համերգին տալիս է համակողմանիություն, ճանաչողականություն, կարելի է ասել, համահումանիտար ուղղվածություն: Ժամանակին այս ժանրի մեծ վարպետ էր սովետական հիանալի երաժշտագետ Ի. Սոլլերտինսկին: Այժմ այդ ավանդույթները շարունակում է ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, դիրիժոր Գ. Ռոժդեստվենսկին: Կատարվող ստեղծագործությունների մասին նրա բացատրությունները միշտ կոնկրետ են, գրավիչ և կազմում են երաժշտական երեկոյի օրգանական մասը: Մեծ հաջողությամբ, օրինակ, անցավ այդպիսի երեկոներից մեկը Մոսկվայի կոնսերվատորիայի մեծ դահլիճում, ուր կատարվեց սովետահայ կոմպոզիտոր Ա. Տերտերյանի Հինգերորդ սիմֆոնիան:

Ստեղծագործության վերաբերյալ հետաքրքիր, ճշմարիտ խոսքը, անտարակույս, լուրջ երաժշտության պրոպագանդման կարևոր մասն է: Հետևաբար, նրա հետագա դեմոկրատացման խնդիրը կանգնած է, մասնավորապես, նրանց առջև, ովքեր խոսում և գրում են երաժշտության մասին: Մեր երաժշտագիտությունը հայկական երաժշտության տեսական ու պատմական շատ պրոբլեմների գիտական մշակման ասպարեզում հասել է շոշափելի հաջողությունների: Սակայն գաղտնիք չէ, որ երաժշտագետներն ու երաժշտական քննադատները պետք է գրեն ոչ միայն իրենց գործընկեր-երաժիշտների համար, այլև երաժշտասերների լայն շրջանի համար: Ընդ որում երաժշտական հրապարակախոսությունը պետք է զերծ լինի պրիմիտիվիզմից և գռեհկացումից: Սովետական մարդկանց հումանիտար կրթվածության ընդհանուր մակարդակը բավականաչափ բարձր է, և այս հանգամանքն անհրաժեշտ է հաշվի առնել: «Հանրամատչելի գրողը,— նշել է Վ. Ի. Լենինը,— չի ենթադրում չմտածող կամ մտածել չկարողացող ընթերցող, ընդհակառակն, չզարգացած ընթերցողի մեջ նա գլխով աշխատելու լուրջ մտադրություն է ենթադրում և օգնում է նրան կատարելու այդ լուրջ ու դժվարին աշխատանքը...» (ԵԼԺ, հ. 5, էջ 450):

Ցավոք, հայ երաժշտագիտության մեջ երբեմն կարելի է նկատել այդպիսի երևույթ. հեղինակը կամ գտնվում է զուտ երաժշտագիտական վերլուծության երկնային հեռաստաններում, կամ էլ զբաղվում է կոմպոզիտորի կյանքի և գործունեության հանրահայտ փաստերի վերապատմությամբ: Գրել այնպիսի գիրք կամ հոդված, որը հետաքրքիր կլիներ կարդալ և՛ երաժշտին, և՛ բանասերին, և՛ ինժեներին, և՛ բանվորին՝ ահա դժվարագույն, բայց միաժամանակ դրվատանքի արժանի խնդիր:

Հատկապես կարևոր նշանակություն ունի ժամանակակից երաժշտության ստեղծագործությունների քննադատական գնահատականը: Վերջին ժամանակներս հանրապետության պարբերական մամուլում հազվադեպ կարելի է հանդիպել այնպիսի հրապարակումների, որոնցում խոսվի նոր երաժշտական ստեղծագործության կամ կատարման թույլ կողմերի ու թերությունների մասին: Շատ հաճախ այդ հոդվածները կրում են գովասանական, հաճոյախոսական բնույթ: Նման երևույթների մասին ամենայն անկեղծությամբ ասվեց ՍՄԿԿ XXVII համագումարում: Գեղարվեստական քննադատության նկատմամբ կուսակցության պահանջները ձևակերպված են համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ. «Ժամանակն է, որ գրական-գեղարվեստական քննադատությունը իրենից թոթափի առողջ բարոյականությունը ներսից քայքայող բարեհոգությունն ու աստիճանահարգությունը՝ հիշելով, որ քննադատությունը հասարակական գործ է և ոչ թե հեղինակային ինքնասիրությունների ու ամբիցիաների ոլորտ»:

Ժամանակակից երաժշտության միտումների օբյեկտիվ, խոր վերլուծությունը, ինչպես նաև դասական ստեղծագործությունների վերաբերյալ բովանդակալից պատմությունը անպայման կնպաստի հասարակական կյանքում լուրջ երաժշտության դերի բարձրացմանը: Իսկ դա էլ, իր հերթին, նրա վրա կբևեռի մեր հասարակայնության ավելի լայն խավերի ուշադրությունը:

Հարկ չկա ապացուցել, որ լուրջ երաժըշտությամբ բավականություն ստանալու ունակ մարդն անարգել մխրճվում է վիթխարի հոգևոր հարստությունների գանձարանը, ապրում ավելի հետաքրքիր, ավելի վառ կյանքով:

Անգնահատելի դաստիարակչական նշանակություն ունի նաև ժողովրդական երաժշտության պրոպագանդումը: Հայ ժողովուրդը ստեղծել է երաժշտական գլուխգործոցներ, որոնցում մեծ համոզչությամբ մարմնավորված են նրա մտքերն ու ակընկալությունները, կյանքի տարբեր կողմերը: Այս իմաստով դասական են Կոմիտասի գրի առած ժողովրդական երգերը, որոնց մեջ մաքրությունն ու վեհությունը զուգակցվում են ձևի կատարելության հետ: Սակայն երբեմն մեզանում ժողովրդական են համարվում այն մեղեդիները, որոնք շատ հեռու են ժողովրդից և աչքի չեն ընկնում առանձնահատուկ գեղարվեստական արժանիքներով: Երբեմն այդպիսի քաղցր-մեղցր «արևելյան» ոճով են կատարվում հայտնի ժողովրդական և էստրադային երգերը, որն էլ նվազեցնում է դրանց գեղարվեստական արժեքը: Անշուշտ, նման երաժշտության տարածումը սոցիալական պրոբլեմ է, և սոսկ պրոպագանդման օգնությամբ չի լուծվի: Սակայն միանգամայն հնարավոր է օգնել ունկնդրին, որպեսզի նա իսկական արվեստը տարբերի նմանակած արվեստից, ժողովրդականը՝ կեղծ ժողովրդականից:

Խոսելով դասական և ժողովրդական երաժշտության դաստիարակչական դերի մասին, մենք բնավ չենք նսեմացնում էստրադային, թեթև երաժշտության նշանակությունը: Վերջին հաշվով դրանք ևս արտահայտում են մարդու վերաբերմունքը շրջակա աշխարհի նկատմամբ: Էստրադային երգն իր մեջ կարող է կրել հայրենասիրական, քաղաքացիական բովանդակություն: Այս ժանրով ստեղծագործող կոմպոզիտորները չեն կարող չարձագանքել մեր երկրում և ամբողջ աշխարհում տեղի ունեցող կարևոր իրադարձություններին: Օրինակ, անցյալ տարի, երբ նշվում էր մեծ Հաղթանակի 40-ամյակը, Հայրենական պատերազմում սովետական ժողովրդի սխրանքի, հանուն խաղաղության պայքարի թեման սովետական կոմպոզիտորների ստեղծագործության մեջ գրավեց կենտրոնական տեղ: Այդ թեմայով մի շարք հաջող ստեղծագործություններ ստեղծեցին նաև հայ կոմպոզիտորները:

Երաժշտությունը նրբորեն զգացող մարդու համար տվյալ ստեղծագործության ժանրը որոշիչ դեր չի խաղում: Ընկալման ժամանակ նա չի հետևում երաժշտության լուրջ և թեթևի բավականին պայմանական բաժանմանը: Այդպիսի ունկնդրի համար կարևոր է լոկ այն փաստը, թե որքան խոր գաղափար է պարունակում ստեղծագործությունը և որքան համոզիչ է այդ գաղափարի գեղարվեստական մարմնավորումը: Նմանապես՝ մեծ, իսկական կոմպոզիտորին միշտ խորթ են ինչպես պճնամոլությունը, այնպես էլ ներողամտությունը ցածր գեղարվեստական ճաշակների նկատմամբ: Համոզիչ օրինակը Դ. Շոստակովիչի ստեղծագործությունն է, որն անփոփոխ մնաց և՛ մասսայական երգում, և՛ կինոերաժշտությունում, և՛ բարդ սիմֆոնիկ կոնցեպցիաներում: Աշխարհայացքի նման աներերության շնորհիվ՝ կոմպոզիտորի բոլոր ժանրերի ստեղծագործությունները վայելում են ժողովրդի անհուն սերը:

Սովետական ապրելակերպին խորթ է ճգնավորությունը. մարդու ազատ ժամանակը պետք է օգտագործվի նաև զվարճությունների համար, որոնց անհրաժեշտ բաղադրամասն է նաև երաժշտությունը: Երիտասարդության շրջանում երաժշտությամբ զբաղվելու մեծ ճանաչում գտած ձև է վոկալ-գործիքային անսամբլը: Հաշված է, որ 70-ական թվականների կեսերին մեր երկրում կար մոտ 160 հազար նման անսամբլ: Ինչու է այդ ժանրը երիտասարդությանը գրավում. այս հարցին կարող են պատասխանել միայն հատուկ

հետաքրքրությունները: Այստեղ սոսկ նշենք՝ վոկալ-գործիքային անսամբլներում ընդգրկված երիտասարդները միշտ չէ, որ ունեն պատշաճ մակարդակի երաժշտական գիտելիքներ ու հմտություններ: Բացի այդ, երբեմն անփորձ կատարողները ջանում են պատճենել հայտնի երգիչների ու անսամբլների յուրաձևությունը կամ երգում են օտար լեզվով երգեր, որոնց բովանդակությունն իրենց հայտնի չէ: Կարծում ենք այս բոլոր հարցերում ինքնագործ անսամբլներին կարող են օգնել պրոֆեսիոնալ երաժիշտները: Վոկալ-գործիքային անսամբլները հաստատուն կերպով մտել են մեր կենցաղի մեջ և կարող են դառնալ լավ, իսկական երաժշտության պրոպագանդման միջոց:

Երիտասարդության ազատ ժամանակի անցկացման մյուս շատ տարածված ձևը դիսկոտեկան է: Այստեղ ձեռք է բերվել ազատ, «տնային» իրադրության և «համերգային» տոնականության ու աշխուժության՝ մեր օրերի համար լավագույն զուգակցում: Նման երիտասարդական երեկոների ծրագրերի մեջ մտցվում են և ժամանակակից երիտասարդության պրոբլեմների քննարկում, և բողոքի երգի շարժման մասին զրույց, և ծանոթություն սովետական ու արտասահմանյան կոմպոզիտորների հետ: Ընդ որում դիսկոտեկաների մասնակիցները պասիվ ունկնդիրներ չեն, նրանք իրենք են պատմում, առաջարկում, վիճաբանում: Դիսկոտեկաներում պարից բացի ցուցադրում են լուսապատկերներ, կինոկադրեր և այլն: Այս ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարվում Երևանի երիտասարդության պալատում:

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հիմնականում դիսկոտեկա են այցելում դեռահասներ և 15—25 տարեկան երիտասարդներ: Հենց այս շրջանում են ձևավորվում մարդու համոզմունքները, գեղագիտական ճաշակները: Որոշ դիսկոտեկաների թերությունը նրանց միապաղաղությունն է. 2—3 ժամվա ընթացքում միատեսակ երաժշտություն ու պարեր: Ընդ որում վոկալ-գործիքային անսամբլների հնչումը երբեմն գերազանցում է լսողական ընկալման սահմանը (հինգ մետր տարածության վրա արձանագրվում է 110—130 դեցիբել), որը վնասակար է առողջությանը: Փորձը ցույց է տալիս, որ երիտասարդական երեկոները հետաքրքիր են անցնում և միաժամանակ ճանաչողական ու դաստիարակչական ֆունկցիաներ են կատարում այն դեպքերում, երբ դիսկոտեկաների կազմակերպիչները նախապատրաստական մեծ աշխատանք են ծավալում:

Բայց ամեն ինչ միայն կազմակերպիչներից չի կախված: Դիսկոտեկաների աշխատանքը բովանդակալից դարձնելու համար պետք է ունենալ համապատասխան տեխնիկա: Դա վերաբերում է ոչ միայն դիսկոտեկաներին, այլև երաժշտական երեկոների մյուս ձևերին: Արդի պայմաններում տեխնիկայի առկայությունը մարդկանց մեջ արվեստի նկատմամբ հետաքրքրություն առաջացնելու պարտադիր պայման է: Եթե համերգները, հանդիպումները, երաժշտական երեկոները կազմակերպվեն խելամտորեն, եթե կուլտուրայի հիմնարկները ապահովվեն բովանդակալից հանգստի համար անհրաժեշտ բոլոր պայմաններով, ապա ակումբները, մշակույթի տները, համերգային դահլիճները դատարկ չեն լինի:

Երաժշտական դաստիարակության հիմքերը դրվում են մանկական տարիներին: Այս իմաստով մեծ և արգասավոր աշխատանք է կատարում մանկական գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնը, որտեղ գտել են երեխաներին երաժշտությանը հաղորդակից դարձնելու հետաքրքիր ձևեր:

Երաժշտության պրոպագանդման առավել գործուն միջոցներից է հեռուստատեսությունը: Մեր հեռուստատեսության երաժշտական հաղորդումների որակը վերջին ժամանակներս զգալիորեն բարելավվել է: Հետաքրքրությամբ են դիտվում «Համաշխարհային երաժշտության դասականներ», «Դպրոցականի ֆիլհարմոնիա» ցիկլերի հաղորդումները, ամենայն հավանության է արժանի «Հանդիպումներ Հայաստանի կոմպոզիտորների միությունում» ցիկլի վերսկսելը: Սակայն կուզենայինք ուշադրություն հրավիրել հետևյալ պարագայի վրա: Քանակական առումով ժողովրդական լուրջ և թեթև երաժշտությունը հեռուստաէկրանում զբաղեցնում է մոտավորապես հավասար ժամանակ: Բայց, ըստ էության, գերապատվությունն այդուհանդերձ տրվում է թեթև երաժշտությանը: Էստրադային զվարճալի հաղորդումներին տրվում է առանձնահատուկ շուք, այն դեպքում, երբ դասական երաժշտությանը նվիրված հաղորդումները ձևավորվում են նկատելիորեն ավելի համեստ: Այս իմաստով հատկանշական է հեռուստադիտողների շրջանում միանգամայն արժանիորեն ճանաչում գտած «Երաժըշտական փոստարկղ» հաղորդումը: Նրանում դասական և ժողովրդական երաժըշտության համարները ընկալվում են որպես հաղորդման հիմնական մասի «նախերգանք», ապա հնչում է սովետական ու արտասահմանյան էստրադան:

Դասական երաժշտությանը նվիրված հաղորդումներում միշտ չեն բարձր մակարդակի վրա գտնվում մեկնաբանող տեքստերը: Սովորաբար դրանցում երկը դիտարկվում է միայն որպես երաժշտության և տվյալ կոմպոզիտորի ստեղծագործության պատմական զարգացման շղթայի օղակ: Նման ասպեկտը հազիվ թե կարողանա ոչ պրոֆեսիոնալի մեջ հետաքրքրություն առաջացնել: Առավել հետաքրքրական է ստեղծագործությունը ներկայացնել որպես մարդու գործունեության արդյունք՝ իր զգացմունքներով, տրամադրություններով, խանդավառությամբ, շրջակա աշխարհի հանդեպ իր վերաբերմունքով: Հեռուստատեսության համար հույժ կարևոր թեմա է արվեստի մյուս բնագավառների հետ երաժշտության կապը: Հետաքրքիր կարող է լինել հայկական երաժշտության վերաբերյալ զրույցը՝ կապված Հ. Թումանյանի, Վ. Տերյանի, Ա. Իսահակյանի կամ էլ Մ. Սարյանի, Վ. Սուրենյանցի, Հ. Այվազովսկու ստեղծագործության հետ: Արվեստի այս տեսակների հետ երաժշտության կապը թույլ է տալիս ավելի խորը, ավելի արտահայտչորեն երևան հանել նրա սեփական արտահայտման հնարավորությունները, նրա լեզվի առանձնահատկությունները:

Երաժշտական արվեստի պրոպագանդումը մեծ ու բարդ խնդիր է: Նրա լուծմանը մասնակցում են և՛ մասսայական ինֆորմացիայի միջոցները, և՛ ձեռնարկությունները, և՛ համերգային կազմակերպությունները, և՛ ուսումնական հաստատությունները: Նրանք բոլորն էլ պետք է նպաստեն այն բանին, որպեսզի լիովին օգտագործվեն կուլտուրայի նվաճումներին հաղորդակցվելու սովետական մարդկանց լայն հնարավորությունները: Կուսակցությունը հենց սրան է նպատակաուղղում կուլտուրայի, արվեստի բոլոր աշխատողների ուժերը, և, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, «իր **կուլտուրական քաղաքականության** գլխավոր խնդիրը տեսնում է նրանում, որ ամենալայն ասպարեզ բացի մարդկանց ընդունակությունների դրսևորման համար, նրանց կյանքը դարձնի հոգեպես հարուստ, բազմազան: Արմատական փոփոխությունների ձգտելով նաև այս բնագավառում, կարևոր է կուլտուր-դաստիարակչական աշխատանքը այնպես կառուցել, որ դա առավել լրիվ բավարարի մարդկանց հոգևոր պահանջմունքները, ընդառաջ գնա նրանց հետաքրքրություններին» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** Երևան, «Հայաստան» հրատ., 1986, էջ 126):

Սովետական երաժշտական մշակույթի գործիչները մեծ ոգևորվածությամբ աշխատում են կենսագործել այդ խնդիրները:

**Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**

# ԽԵԼԱՄԻՏ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ՁԵՌՆԱՐԿ

Է. Ս. Գաբրիելյանի «Լինել թե չլինել» խորագիրը կրող ինքնատիպ գիրքը լայն արձագանք է գտել ընթերցողների շրջանում, դարձել քննարկումների, շահախնդիր ասուլիսների առարկա: Գաղտնիքը նրանում է, որ հեղինակը մտերմիկ զրույց է վարում ընթերցողների հետ, նրանց ընտիպում խորհրդածել կենսաթրթիռ շատ կարևոր խնդիրների շուրջ, որոնց լուծումը առողջ ապրելակերպի ու կենցաղավարության երաշխիք է, բանականության ու գեղագիտական կուլտուրայի մարմնացում: Պրոֆեսոր Գաբրիելյանը ընթերցողի հետ վիճելով, զգուշորեն դիպչելով նրա արժանապատվությանն ու ինքնասիրությանը, ներքաշում է իմաստասիրության ու ինքնաճանաչման ոլորտը՝ ներգործելով հեռակա ունկնդրի հոգեկան ու հուզական աշխարհի վրա:

Հեղինակին հաջողվել է դեղատոմսային դրույթները և բժշկագիտության կանոնագրքի անառարկելի նորմերը այնպես մատուցել իր հավանական հիվանդին կամ պարզապես այցելուին, որ այստեղ ամփոփված գիտական ու էթիկական խորհրդածությունները նրանց վրա խոր հետք են թողնում: Այս առնչությամբ նկատենք, որ համընդհանուր գրագիտության պայմաններում մեզանում տակավին զգալի տոկոս են կազմում նրանք, ովքեր չգիտեն սեփական անձը գիտելիքների բազում չափանիշներով՝ ընդ որում բժշկագիտական ու հոգեբանական հայեցակետով:

Այդ է պատճառը, որ հեղինակը հուշում է ընթերցողներին թափանցելու սեփական անձի ներաշխարհը, գիտակցաբար ղեկավարվել խելամիտ կյանքի կազմակերպման սկզբունքներով:

Այսօր, երբ կուսակցությունը անզիջում պայքար է ծավալել հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ՝ հանուն հասարակության ու մարդու առողջության և վճռաբար մերժում է վնասակար սովորույթները, ավելի ու ավելի է կարևորվում այս ուշագրավ գրքի երևան գալը:

Մի պահ թվում է, թե գիրքը նվիրված է ծխելու, հարբեցողության և առողջությանը վնասակար այլ կարգի արատների քննադատությանը, սակայն դա միայն առաջին հայացքից: Իրականում ի մի են բերված հարուստ տեղեկություններ մարդու հասարակական ու անձնական կեցության մասին, ցույց են տրված անձի կատարելությանը ձգտելու ուղիներն ու եղանակները: Մասնավորապես մարդու հոգեբանական վերլուծությունը հանգեցնում է այն եզրակացության, որ առողջության պահպանման և անաղարտ բարոյական վարքագծի տիրապետման միակ պայմանը ամփոփված է հենց իր իսկ անձի մեջ, նրա ցանկությունից ու կամքից են կախված վնասակար սովորույթների ու պահանջմունքների հաղթահարումը, սեփական ես-ը հաղթելու կարողությունը: Իրոք, բժիշկը գործ ունի ոչ թե հիվանդության, այլ նրա կրողի՝ մարդու հետ, որի մոտ այն յուրովի է դրսևորվում: Այստեղ վիճակագրությունը կարող է արժե ծառայություն կատարել, եթե նրանում անտեսվում են կոնկրետ հիվանդի անհատականությունը, նրա խառնվածքի դիմորոշ գծերը: Մարդ-անհատի ողջ բարդությունը կայանում է նրանում, որ լինելով հասարակական հարաբերությունների միագումար, նա այդ սոցիալական թելերը յուրովի է իր մեջ շաղախում՝ ձեռք բերելով ինքնատիպ երանգ ու ընկալում: Չէ որ քաղաքականությունը տալիս է պահանջվող արդյունքներ, եթե այն ճշտորեն հաշվի է առնում դասակարգերի, սոցիալական խմբերի, անհատի շահերը: Հասարակությունը կոնկրետ մարդիկ են, որոնք ունեն կոնկրետ շահեր, իրենց ուրախություններն ու ապրումները, կյանքի, նրա իսկական և կարծեցյալ արժեքների մասին իրենց պատկերացումները:

Առողջության պրոբլեմը հարկ է դիտել



լայն սոցիալական դիրքերից: Դիպուկ է ասված, որ առողջությունը դեղատնից չես գնի: Գլխավորը մարդու ապրելակերպն է, մասնավորապես այն, թե նա որքանով է խելամտորեն և արդյունավետ օգտագործում իր ազատ ժամանակը: Դրա համար հնարավորություններ կան, բայց խիստ կաղում է գործի կազմակերպական կողմը: Շատ բան կախված է հասարակական նախաձեռնությունից, բնակչության ինքնագործունեությունից, բայց քաղաքներում ու գյուղերում, աշխատավորական կոլեկտիվներում հաճախ սպասում են ցուցումների և ապավինում վերևի օգնությանը:

Համագումարյան այս խորհրդածությունների մեջբերման պատճառը գրախոսվող գիրքն է, նրանում արծարծված հարցերի տարողունակությունը, սոցիալական պրոբլեմատիկան:

Մեր խոսքն անավարտ կմնա, եթե չդիմենք բուն շարադրանքին, քննարկվող հարցերի տրամաբանական կապին, հեղինակի գրելաոճին:

Այստեղ ճշմարիտ է ասված, որ վնասակար գործոնների ազդեցության հետևանքով առաջացած խրոնիկական հիվանդությունները ամիսներով, իսկ հաճախ նաև տարիներով մարդուն դարձնում են բժշկի մշտական այցելուն, կտրում ակտիվ կյանքից, հասցնում հաշմանդամության դուռը: Պետք է ձգտել նրան հատկացված ապրելու ժամանակահատվածը հնարավորին չափ զերծ պահել առողջության վրա վնասակար գործոնների ազդեցությունից: Չի կարելի չհամաձայնել այս դիտողության հետ, որ հոգեկան ոլորտի հիգիենան մեր ժամանակների կարևորագույն պրոբլեմն է, գռեհիկ վերաբերմունքը կարող է բացասական հետք թողնել մարդու հոգեկանի վրա: Կոպիտ խոսքը, անարդար մեղադրանքը հաճախ առաջացնում են այնպիսի հիվանդություններ, ինչպիսիք են միգրենը, ստամոքսի խոցը, հիպերտոնիկ հիվանդությունը, անգամ հոգեկան խանգարումները:

Այսօր, երբ կենսական հարց է դարձել կառավարման սկզբունքների յուրացումը, խիստ տեղին է հնչում գրքում արված եզրակացություններից մեկը: Տրամաբանության ուժի, ինտելեկտի, մարդկայնության, իր ենթակայի վրա ներազդելու ունակության բացակայությունն էլ հենց ծնում է վարչարարություն: Հավանաբար մեծամտությունը նույնպես պաշտպանողական ռեակցիա է: Եթե մարդը դատարկ է և կանգնած է իրեն ոչ համապատասխան աստիճանի վրա, ապա նրան մնում է մեկ ելք՝ այդ դատարկությունը լցնել մեծամտությամբ:

Անկասկած, ասված է գրքում, որ անձի առողջական վիճակը մեծապես կախված է մարդկային փոխհարաբերություններից, և հիվանդությունների առաջացման արմատները թաղված են հենց այդ հարաբերությունների մեջ: Ահա ինչու այսօր բազմաթիվ հիվանդությունների դեմ պայքարի բանալին գտնվում է հենց իր՝ մարդու ձեռքին, որն իր վարքագծով ի վիճակի է կարգավորելու սեփական առողջությունը, խույս տալ մի ամբողջ շարք հիվանդություններից: Նախանձը, բարոյական տեսակետից, մարդկային վատթարագույն արատներից է, իսկ բժշկական առումով՝ ամենաախտանգավոր բացասական ստրեսը: Այն որդի նման մշտապես կրծում է մարդու հոգին՝ ժամանակ առ ժամանակ փոթորկելով և տակնուվրա անելով նրա ներաշխարհը: Իզուր չէ ասված. «Եթե չես ուզում տառապել, մի՛ նախանձիր»: Հոգեկան թույների շարքին են դասվում նաև զրպարտությունը, վիրավորանքը, անհարգալից վերաբերմունքը, չարախոսությունը, նույնիսկ շողոքորթությունը: Շողոքորթը իր ստորաքարշությամբ բթացնում է մարդկանց ինքնաքննադատության զգացումը սեփական անձի նկատմամբ: Շողոքորթությունը խիստ թունավոր հոգեկան թմրադեղ է և իր վըտանգավորությամբ մի քանի անգամ գերազանցում է նիկոտինին: Լավ է ասել Լեսինգը՝ «Թույնը, որ չի ազդում անմիջապես, դրանով նվազ թունավոր չի դառնում»:

Ալկոհոլի մեծագույն չարիքն այն է, որ նա խեղաթյուրում է անհատի էությունը, նրան ենթարկում դեգրադացիայի: Ալկոհոլը մղում է մարդուն դեպի այն բնազդներն ու հակումները, որոնք ձևավորվում են առավել ստորակարգ նյարդային կառուցվածքների գործունեության հետևանքով, քան ուղեղի կեղևն է: Ահա ինչու հարբած վիճակը հաճախ զուգակցվում է ագրեսիվությամբ, ինքնավերահսկման խախտումով, հանցագործությամբ և այլն:

Այսօր մարդկային օրգանիզմը փաստորեն պոկվել է բնական զարգացման շղթայից և ընկել բոլորովին նոր իրադրության մեջ, որտեղ գերիշխողը մտավոր և հոգեկան գերլարվածությունն է և մկանային համակարգի ակտիվության դրա-

մատիկ անկումը: Այս առնչությամբ հեղինակը նկատում է. գրագետ և կիրթ քաղաքացի դառնալը խիստ անհրաժեշտ է, բայց չպետք է մոռանալ, որ աճող սերունդը պետք է լինի առողջ: Դրա լավագույն նախապայմանը մանկական տարիներից սկսած ֆիզիկական ակտիվության բարձրացումն է, ըստ որում ոչ թե ժամանակ առ ժամանակ, այլ՝ մշտապես: Հիրավի, ֆիզիկական ակտիվության բարձրացումը կենսական անհրաժեշտություն է:

Եվս մի ուսանելի խորհուրդ: Մարդկությունը ստեղծել է բազմազան բնույթի խաղեր, որոնք զբաղեցնում են մարդուն, որոշակի հաճույք պատճառում նրան: Այն բացասական հույզերի հակոտնյան է, և մարդ պետք է լայնորեն օգտվի հաճույք պատճառող խաղերից:

Առօրյա կյանքում հաճախ ենք մոռանում, որ բոլոր պարագաներում պետք է սովորել կառավարել մեր հույզերը: Լարված իրավիճակը լիցքաթափելու նպատակով ճապոնացիները իրենց համար սահմանել են «ոսկե օրենքներ».

1. ժպտալ, եթե որևէ մեկը զայրանում է ձեզ վրա.

2. ժպտալ և խոնարհվել և խոնարհվելու ժամանակ շնչել ու արտաշնչել.

3. վիրավորողին պատասխանել. «Ես չեմ հասկանում ձեր խոսքերի իմաստը» և, իրոք, «չհասկանալ» դրանք:

Ներքին մենախոսությունը, խոսակցությունը «ինքդ քեզ հետ» անձի հոգևոր խառնվածքի կարևոր հատկանիշներից են: Ահա այստեղ է, որ պետք է ինքնաներշնչման ուժով հասնել այն բանին, որ չկա ռեալ սպառնալիք կամ տագնապահույզ վիճակ, դրանք չընդունվեն որպես այդպիսին: Իրոք, երևույթները պետք է ավելի հանգիստ ընկալել և ամեն ինչից պրոբլեմներ չստեղծել ինչպես քո, այնպես էլ շրջապատիդ համար: Այնուհետև գրքում ասվում է, որ ինքնաներշնչման ուժով իշխել սեփական զգացմունքներին, կանխել հոգեկան ոլորտի ալեկոծումները, մարդկային փոխհարաբերությունների բարդ իրադրություններում կարողանալ խուսանավել տագնապի, վախի, թախծի, մոլուցքի, ատելության, նախանձի և բացասական այլ հույզերի խութերից, նշանակում է հասնել ոչ միայն բնավորության և վարքագծի կատարելության, այլև բազմաթիվ հիվանդությունների կանխման:

Վերջին տասնամյակում մեծ ուշադրություն է դարձվում ինքնաներշնչման մեթոդին, որը բժշկության մեջ ստացել է «աուտոտրենինգ» անվանումը: Այս մեթոդը հնարավորություն է տալիս թուլացնել հոգեկան լարվածությունը, մարել բացասական հույզերի անցանկալի հետևանքները, նպաստել դրական հույզերի, լիարժեք հանգստի զգացողության առաջացմանը, կարգավորել քնի խանգարումները, հասնել վախի, տագնապի զգացման վերացմանը, բնավորության որոշ գծերի՝ համարձակության, հավասարակշռվածության կոփմանը, բարդ իրադրություններում ավելի կշռադատված որոշումներ ընդունելու կարողության հղկմանը և այլն:

Գրքի եզրափակիչ էջերում բժշկի առաքելության դիպուկ բնութագրումներ կան: Բժշկի ամբողջ կյանքը մահվան և արյան կածան է: Անքուն գիշերներ և պրկված նյարդեր, գիշերային տագնապալից հեռախոսային զանգեր: Մարդու կյանքի առաջին ճիչը բժիշկն է լսում, և նա է լսում նաև վերջին հոգոցը: Բժշկի կերպարը ամբողջացնող տողերը սոսկ ամենահումանիստական մասնագիտությունը հավուր պատշաճի ներկայացնելու միտում չեն հետապնդում: Այն պարզապես վկայում է, որ բոլոր պարագաներում բժիշկը մարդու բարեկամն է, հավատարիմ խորհրդատուն:

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

*Հանձնված է շարվածքի՝ 8.08.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 8.09.86 թ.: ՎՖ 10784: Ֆորմատ՝ $70 \times 108^1/_{16}$: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 17732: Պատվեր՝ 1584:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*